ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՜Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

1

ՀՈՒՆՎԱՐ

ԵՐԵՎԱՆ • 1971

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները կմնան անհետևանք։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։



ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ— Դեպի նորանոր բարձունքներ . . . . . . . . 3

ՀՈԴՎԱԾՆԵՐ

Վ. Ը. ՄԱՐԳԱՐՅԱՆ— Սոցիոլոգիայի դերի լենինյան բնութագիրը . . 9

Ը. Դ. ՍԱՐԳՍՅԱՆ— Մատերիայի անսպառելիության լենինյան գաղափարը և արդի ֆիզիկան . . . . . . . . . . 18

Մ. Ա. ՄՈՒՐԱԴՅԱՆ— Գյուղացիության բոլշևիկյան կողմնորոշման պատմական ակտը . . . . . . . . . . 28

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Բ. Ա. ԳՅՈՋԱԼՅԱՆ— Գործնական որոնումներ . . . . . . . 33

Հ. Ս. ՄԻՍԱԿՅԱՆ— Մասսաների համար . . . . . . . 40

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Վ. Տ. ՂԱԼՈՒՄՅԱՆ— Ֆինանսները և տնտեսական ռեֆորմը . . . . 45

Ը. Խ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Գնման գների կատարելագործման մասին . . 51

Հ. Ե. ՄԿՐՏՉՅԱՆ— Աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի տեմպերի հարաբերակցությունը . . . . . 55

ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԿՈՄԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

ՍԱՆՁՈ ՆՈՍԱԿԱ— Ինչն ապահովեց Ճապոնիայի կոմկուսակցության առաջընթացը . . . . . . . . . . . 61

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԿՈՒՍՈՒՍՈՒՑՄԱՆ ՑԱՆՑԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

Վ. ՇԱՊԿՈ— ՍՄԿԿ կոմունիստական հասարակարգի կառուցման ղեկավար ուժ . . . . . . . . . . . 75

ՆՈՐ ՔԱՂԱՔՆԵՐ

Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Ծաղկող քաղաք . . . . . . . 85

ԷՋԵՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԱՆՑՅԱԼԻՑ

ԵՐ. Մ. ԽԱԼԵՅԱՆ— Մեր մարտական «Ջոն»-ը . . . . . . 93

Ի. Ս. ՏՈՆԵՐՅԱՆ— Սթափեցնող մարտակոչեր . . . . . . 96

ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Հ. Ն. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Հասարակական առաջընթացի գործոնն Անդրկովկասում 98

ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՐԵՆ

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ— Ուսումն անվերջ է . . . . . . . . 102

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

Ս. Կ. ՊԱՊՅԱՆ— Աշխարհն անցած տարում . . . . . . . 107

# *Содержание*


**Передовая** — К новым высотам . . . . . . . . . 3

**Статьи**

**Э. С. Маргарян** — Ленинская характеристика роли социологии . 9

**С. Д. Саргсян** — Ленинское понятие неисчерпаемости материи и современная физика . . . . . . . . . 18

**М. А. Мурадян** — Исторический акт большевистской ориентации крестьянства . . . . . . . . . 28

**Партийная жизнь**

**Б. А. Гезалян** — Деловые поиски . . . . . . . . . 33

**Г. С. Мисакян** — Для масс . . . . . . . . . 40

**Вопросы экономики**

**Л. Т. Галумян** — Финансы и экономическая реформа . . . 45

**С. Х. Арутюнян** — О совершенствовании закупочных цен . . 51

**Г. Е. Мкртчян** — Соотношение производительности труда и роста темпов средней зарплаты . . . . . . 55

**В братских компартиях**

**Сандзо Носака** — Что обеспечило продвижение вперед компартии Японии . . . . . . . . . 61

**В помощь пропагандистам и слушателям сети партучебы**

**В. Шапко** — КПСС—руководящая сила строительства коммунистического общества . . . . . . . . 75

**Новые города**

**В. А. Геворкян** — Цветущий город . . . . . . . . 85

**Страницы из революционного прошлого**

**Е. М. Халеян** — Наш боевой «ЧОН» . . . . . . . 93

**Е. С. Тонерян** — Взбудораживающие призывы . . . . . 96

**Читатели о книгах**

**А. Н. Карапетян** — Фактор общественного прогресса в Закавказье . . . . . . . . . . 98

**Вместо обзора печати**

**Эмма Сароян** — Учеба бесконечна . . . . . . . . 102

**Международная жизнь**

**С. К. Папян** — Мир в прошлом году . . . . . . . 107





# ԴԵՊԻ ՆՈՐԱՆՈՐ ԲԱՐՁՈՒՆՔՆԵՐ

Հաջողությամբ կատարվեց ութերորդ հնգամյա պլանը, սովետական երկիրը թևակոխեց իր կարգացման նոր փուլը՝ ավելի առնականացած ու իր հզոր թևերը գալիքին պարզած:

Մեր կուսակցությունն ու ժողովուրդը լավ աշխատեցին անցած հնգամյակում, որը հագեցված էր քաղաքական կարևորագույն իրադարձություններով: Իրականացնելով ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվները և կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումները, սովետական ժողովուրդն աչքի ընկնող հաջողությունների հասավ կոմունիստական շինարարության բոլոր մարզերում, մեր երկրի հասարակական և միջազգային քաղաքական կյանքում:

Հնգամյակի արդյունքները, իրավի, հիանալի են, հոյակապ: Դա սովետական բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության ու մտավորականության խոշոր հաղթանակն է, նրանց անձնուրաց աշխատանքի արգասիքը, կոմունիստական կուսակցության և նրա լենինյան Կենտկոմի իմաստուն քաղաքականության, կուսակցության կազմակերպական, քաղաքական-գաղափարական բեղմնավոր գործունեության արդյունքը:

Անցած տարիներին երկրում կենսագործվեցին տնտեսական, կուլտուրական և սոցիալական խոր վերափոխումներ, մեծացավ Սովետական Միության տնտեսական ու պաշտպանական հզորությունը: Հնգամյակում մեր լայնարձակ հայրենիքը նման էր մի յուրօրինակ վիթխարի կառույցի: Ծնունդ առան նոր քաղաքներ ու բանվորական ավաններ, կառուցվեցին հսկայավոր գործարաններ, էլեկտրակայաններ ու ջրանցքներ, բնակելի տներ ու դպրոցներ, անցկացվեցին երկաթուղիներ ու գազամուղներ, ստեղծվեցին դոմնային և մարտենյան վառարաններ: Հատկապես շատ բան արվեց երկրի տնտեսական այնպիսի շրջանների յուրացման ու զարգացման գործում, ինչպիսիք են Հեռավոր Արևելքն ու Սիբիրը:

Ավելի շենացան ու բարետես դարձան մեր քաղաքներն ու գյուղերը, ավելի հարստացավ մեր մարդկանց նյութական ու հոգևոր կյանքը: Շատ բան արվեց սովետական հասարակության սոցիալ-քաղաքական խոշորագույն պրոբլեմների լուծման ասպարեզում, ավելի ամրապնդվեցին բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը, սովետական բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամության կապերը:

Անցած ժամանակաշրջանը միջազգային կոմունիստական շարժման միասնության ու ամրապնդման համար ակտիվ պայքարի տարիներ էին: Ավելի հզորացավ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, մեծացավ նրա ազդեցությունը համաշխարհային զարգացման ողջ ընթացքի վրա: Տնտեսական ու պաշտպանական հզորության շնորհիվ խիստ բարձրացավ ՍՍՀՄ միջազգային հեղինակությունը՝ որպես խաղաղության ու ժողովուրդների անվտանգության, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի պատվարի:

Ոգեշունչ աշխատանքով, ստեղծարար մեծագործություններով լի էր 1970 թվականը, հնգամյակի եզրափակիչ տարին: Դա երկու հնգամյակների սահմանագծում մի բարձունք էր, որտեղից ավելի տեսանելի դարձան և՛, անցած մեր ուղին և՛ գալիքի պայծառ հորիզոնները:

1970 թվականը լենինյան հոբելյանական տարի էր, որը մեր հայրենիքի տարեգրության մեջ մտավ որպես քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքի բոլոր ոլորտներում ձեռք բերած նոր, խոշոր հաղթանակների տարի: Սովետական բազմազգ ժողովուրդը, աշխարհի առաջադեմ մարդկությունը ջերմագին սիրով ու անսահման երախտագիտությամբ նշեցին Վ. Ի. Լենինի, մեծագույն մտածողի ու հեղափոխականի, Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական պետության հիմնադրի, միջազգային պրոլետարիատի առաջնորդի ծննդյան հարյուրամյակը: Դա մեր ժողովրդի հաշվետվությունն էր Լենինին, նրա պատգամներին մշտապես հավատարիմ մնալու երդումը: Միայն անցած տարում գրեթե կրկնակի անգամ ավելի արդյունաբերական արտադրանք թողարկվեց, քան նախապատերազմյան բոլոր հնգամյակներում. երկիրը պլանից դուրս ստացավ շուրջ հինգ միլիարդ ռուբլու արդյունաբերական արտադրանք: Սովետական Միության հողագործության ողջ պատմության մեջ 1970 թ. աճեցվեց հացահատիկային կուլտուրաների և բամբակի ամենաբարձր բերքը, մթերվեց զգալիորեն ավելի շատ կարտոֆիլ, բանջարեղեն, միրգ, թեյ: Ավելացավ անասնապահական մթերքների արտադրությունը:

Սովետական գիտության ու տեխնիկայի նվաճումների նոր վկայությունը հանդիսացան «Լուսին—16» և «Լուսին—17» տիեզերակայանների հաջող թռիչքները, որոնք առաջին անգամ ավտոմատ կերպով լուսնային բնահող բերեցին Երկիր և հետազոտեցին Լուսնի մակերևույթը Երկրից կառավարվող ավտոմատ լուսնագնացի միջոցով:

Լուրջ տեղաշարժեր կատարվեցին ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, նրա հոգևոր մշակույթի զարգացման ասպարեզում:

Հնգամյակի տարիներին մեր հայրենիքի հզորության հետագա ամրապնդման գործում իրենց արժանի ավանդը ներդրին միութենական բոլոր հանրապետությունները, այդ թվում՝ Սովետական Հայաստանը:

Լենինյան հոբելյանական տարում, ՍՄԿԿ XXIV համագումարի նախաշեմին, հայ ժողովուրդը հանդիսավորությամբ ու խանդավառությամբ նշեց Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակը: Դա մեր ժողովրդի ազգային մեծ տոնն էր, սոցիալիստական վերածննդի կեսդարյա հոբելյանը, որը վերածվեց սովետական ժողովուրդների անխախտ բարեկամության, լենինյան գաղափարներին անսահման նվիրվածության, ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը Հայաստանի աշխատավորների համախմբվածության հոյակապ ցույցի: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Գլխավոր քարտուղար ընկեր



Լ. Ի. Բրեժնևի մասնակցությունը մեծ տարեդիցի հանդիսություններին՝ մի առանձին շուք ու փայլ տվեց համաժողովրդական տոնին:

Անցած կես դարը հայ ժողովրդի հերոսական մաքառումների, սխրալից աշխատանքի տարիներ էին: Սովետական ժողովուրդների համերաշխ ընտանիքում ՍՄԿԿ հավատարիմ ու մարտական ջոկատի՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, մեր հանրապետության աշխատավորներն աննախընթաց նվաճումներով դիմավորեցին իրենց ազգային տոնը:

Հոբելյանական տարեդիցի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը իրենց ողջույնում, ընկեր Բրեժնևը Երևանում կայացած հանդիսավոր նիստում արտասանած իր ճառում դրվատեցին Լենինի կրկնակի շքանշանակիր Սովետական Հայաստանի աշխատավորների ստեղծագործական աշխատանքը: «Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի Գլխավոր քարտուղարը,— բարձր են գնահատում Հայաստանի աշխատավորների անձնվեր աշխատանքն ու մեծ ծառայությունները կոմունիստական շինարարության ասպարեզում»:

Այդ մեծագործությունների համար Սովետական Հայաստանը արժանացավ Հոկտեմբերյան Հեղափոխության շքանշանի: Կառավարական բարձր պարգևը քաղաքական և աշխատանքային խանդավառություն առաջ բերեց հանրապետության աշխատավորների շրջանում, բազմապատկեց նրանց ստեղծարար ջանքերը: Շարունակելով լենինյան աշխատանքային հերթափոխը՝ եռակի շքանշանակիր Սովետական Հայաստանի աշխատավորները հաջողությամբ ավարտեցին ութերորդ հնգամյակը և նրա եզրափակիչ տարին: Արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելացավ մոտ 1,8 անգամ, ընդ որում աճի միջին տարեկան տեմպը կազմեց 12 տոկոս, գյուղատնտեսական համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալը նախորդ հնգամյակում ունեցած միջին տարեկան ծավալի համեմատությամբ ավելացավ մոտ 18 տոկոսով:

Առանձնապես ակնառու են հոբելյանական տարվա արդյունքները: 1970 թ. շարք մտան արդյունաբերական նոր կարողություններ: Գործարկվեցին Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի ցեմենտի արտադրության առաջին հերթը, Գառնի—Երևան նոր ջրատարը, սկսվեց քացախաթթվի արտադրությունը՝ Երևանի Կիրովի անվան քիմիական կոմբինատում, ցիանուրային թթվինը՝ Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատում, ավարտվեց Տաթևի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը: Հաջողությամբ շարունակվում է հանրապետության կարևորագույն կառույցների՝ Արփա-Սևան թունելի, Որոտանի հիդրոտեխնիկական համալիրի, Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի, Ջոդի կոմբինատի շինարարությունը:

Արդյունավետ գործեցին հանրային դաշտերի աշխատավորները: Մեր կոլտնտեսություններն ու սովխոզներն անցյալ տարի աճեցրին առատ բերք, զգալիորեն ավելացավ անասնապահական մթերքների արտադրությունը: Խաղողի, բանջարեղենի, մսի ու կաթի արտադրության և պետական գնումների ծավալը, նախորդ տարիների համեմատությամբ ամենաբարձրն էր:

Զարգացման նոր աստիճանի հասավ հայ ժողովրդի հոգևոր մշակույթը: Միջգերատեսչական պետական փորձարկմանը հաջող քննություն բռնեց մեր գիտնականների, ինժեներների ու բանվորների ստեղծագործ մտքի ու բազկի նոր արգասիքը՝ «Նաիրի—3» էլեկտրոնային հաշվիչ մեքենան:

Աճեցին քաղաքի ու գյուղի աշխատավորների ռեալ եկամուտները և սպառ-

ման հանրային ֆոնդերից բնակչությանը հատկացվող միջոցները,— բարելավվեցին նրանց կոմունալ-կենցաղային պայմանները: Անցյալ տարի շահագործման հանձնվեց մոտ 1,1 միլիոն քառակուսի մետր ընդհանուր բնակելի տարածություն:

Հնգամյա պլանի կատարման համար ծավալված համաժողովրդական պայքարում նոր ուժով դրսևորվեց սովետական հասարակության կյանքում կոմունիստական կուսակցության ղեկավար դերը, որի իմաստուն քաղաքականությունն ապահովեց մեր հայրենիքի անշեղ առաջընթացը:

Ակնհայտ են սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները, սակայն նրա առջև այսօր ծառացած են կոմունիստական շինարարության նոր, առավել մեծ խնդիրներ:

ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետի երկրորդ սեսիան հաստատեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի հավանությանն արժանացած ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971 թվականի պետական պլանը և պետական բյուջեն: Այդ պլանը, որը հանդիսանում է իններորդ հնգամյակի բաղկացուցիչ մասը, արդեն դարձել է կուսակցության ու ժողովրդի գործունեության կոնկրետ ծրագիրը, պայքարի նոր բնագիծը: Նրանում վառ կերպով արտացոլված են մեր ժողովրդի հայրենասիրական խոհերն ու ձգտումները, նրա կենսական շահերը: Ահա թե ինչու սովետական բոլոր մարդիկ խորին գոհունակությամբ և միահամուռ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի և Գերագույն սովետի սեսիայի որոշումները և նոր տարվա հենց առաջին իսկ օրերից ջանքեր են գործադրում դրանք անթերի իրականացնելու համար:

Կուսակցության պլանները ժողովրդի պլաններն են:

1971 թվականի պետական պլանի գլխավոր խնդիրներն են.

— բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը,

— էլ ավելի ամրապնդել գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազան,

— արագացնել գիտա-տեխնիկական առաջընթացը,

— կատարելագործել կառավարումը և դրա հիման վրա ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման ու սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման արագ տեմպերը:

Ըստ պլանի նախատեսվում է ՍՍՀՄ արդյունաբերական արտադրության ծավալը մեծացնել 6,9, գյուղատնտեսական արտադրությանը՝ 5,5 տոկոսով: Երկրի ազգային եկամուտը կաճի 6,1, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները՝ 4,7 տոկոսով:

Գյուղատնտեսության զարգացման հիմքում դրված են կուսակցության Կենտկոմի 1970 թվականի հուլիսյան պլենումի որոշումները: «Հարկավոր է ամրապնդել ձեռք բերածը,— Երևանում կայացած հոբելյանական նիստում ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— հողագործության և անասնապահության վերելքը դարձնել կայուն և հարաճուն»: 1971 թ. ժողովրդա-տնտեսական պլանով նախատեսվում է ավելի մեծացնել կապիտալ ներդրումները գյուղատնտեսության մեջ, նպատակ ունենալով ամրապնդել նրա նյութա-տեխնիկական բազան, ծավալուն աշխատանք կատարել հողագործության մելիորացման ու քիմիացման բնագավառում:

Տնտեսական նոր տարում մեծ չափով ավելանալու են կապիտալ ներդրումները: Դրա հետ մեկտեղ խնդիր է դրված կրճատել անավարտ շինա-



րարությունների ծավալը, արագացնել արտադրական կարողությունների գործարկումը:

Ինչպես անցյալ հնգամյակում, այնպես և առաջիկայում կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը, նրա նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լիակատար բավարարմանը: Հենց այդ նպատակով արագացվելու են թեթև, սննդի, քիմիական արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման տեմպերը, ընթացիկ տարում զգալիորեն կաճեն պետության հատկացումները ժողովրդական կրթության ու առողջապահության, գիտության և կուլտուրայի զարգացման նպատակով, նոր թափ կհաղորդվի բնակարանային շինարարությանը:

1971 թվականին արագ կզարգանա նաև մեր հանրապետության էկոնոմիկան: Համապետական պլանի հիմնական ուղղություններին և առաջադրանքներին համապատասխան Հայկական ՍՍՀ յոթերորդ գումարման Գերագույն սովետի ութերորդ սեսիան հաստատեց հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ տարվա պլանը: Ըստ այդ պլանի ազգային եկամուտը կաճի 7,9 տոկոսով, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները՝ 5,9 տոկոսով: Արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1970 թ. համեմատությամբ, կավելանա 11,1, իսկ գյուղատնտեսական համախառն արտադրանքինը՝ 7,5 տոկոսով: Մեծ ուշադրություն է հատկացվում ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ճյուղերի զարգացմանը:

Այս տարի կգործարկվեն Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի 200 հազար կիլովատ հզորության ագրեգատը, պտված պղնձի արտադրության կարողությունները՝ Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատում, Աբովյանի բիոքիմիական պրեպարատների փորձնական-արդյունաբերական գործարանը, ինչպես և բազմաթիվ արտադրական նոր կարողություններ: Մոտ 66 միլիոն ռուբլի կհատկացվի էլեկտրաէներգետիկայի օբյեկտների կառուցմանը: 1971 թ. կսկսվի երկաթուղու շինարարությունը Իջևան—Հրազդան տեղամասում, շահագործման կհանձնվեն Պուշկինի լեռնանցքի ավտոճանապարհային թունելը, կշարունակվեն Երևան— Սևան մայրուղու, Սևանի լեռնանցքի թունելի կառուցումները և այլն:

Գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազայի ամրապնդմանը հատկացվում են ավելի քան 134 միլիոն ռուբլի պետական կապիտալ ներդրումներ և 32 միլիոն ռուբլի՝ կոլտնտեսությունների միջոցներից:

Ծավալուն աշխատանքներ են ծրագրվել գիտության ու տեխնիկայի, կուլտուրայի ու կրթության, առողջապահության, սպորտի ու ֆիզկուլտուրայի զարգացման, կոմունալ-բնակարանային շինարարության ասպարեզներում: Միայն մեկ տարում կառուցվելու է 1 միլիոն 100 հազ. քմ բնակելի տարածություն:

Հայաստանի աշխատավորները ոգեշնչված մեծ վճռականությամբ ձեռնամուխ են եղել տնտեսական ու կուլտուրական շինարարության նոր ծրագրի կատարմանը: Նրանք ձգտում են աշխատել ավելի լավ, քան երեկ, մեծ նպատակին նվիրաբերել իրենց բոլոր ուժերն ու եռանդը, գիտելիքներն ու փորձը:

«ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն,— ասաց ընկ. Բրեժնևը,— հաստատ վստահություն է հայտնում, որ Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները այսուհետև ևս իրենց ուժերը կնվիրաբերեն կոմունիստական

շինարարության պլանների կենսագործման համար մղվող պայքարին, նոր նվաճումներով կդիմավորեն ՍՄԿԿ XXIV համագումարը»:

Մեր հանրապետության գործարաններում ու կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, գիտահետազոտական և նախագծային հիմնարկություններում նոր ուժով է ծավալվել համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ կուսակցության առաջիկա համագումարը արժանավայել գործերով դիմավորելու, 1971 թվականի ժողովրդատնտեսական պլանը բարձր ցուցանիշներով կատարելու համար:

Մեր կուսակցությունը սովորեցնում է երբեք չհանգստանալ ձեռք բերածով, կենտրոնացնել ուշադրությունը չլուծված հարցերի վրա, մանրակնին ամփոփել կատարված աշխատանքի արդյունքներն ու փորձը, սկզբունքորեն վերլուծել ու բացահայտել թերությունները, միջոցառումներ մշակել դրանց արագ վերացման համար:

Ցավոք, դեռևս ունենք առանձին արդյունաբերական ձեռնարկություններ ու կառույցներ, որոնք չեն կատարում պլանային առաջադրանքները, ձգձգում են շինարարության ավարտման ժամկետները: Անելիքներ շատ կան նաև արտադրանքի որակի բարձրացման, արտադրության մեջ նոր տեխնիկայի արմատավորման, տնտեսական ռեֆորմի կենսագործման ասպարեզում:

Հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ բարձրացնել աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը, քաղաքական ակտիվությունը, նրանց ջանքերն ուղղել եղած թերությունների վերացմանը և տնտեսական նոր տարում հասնել ավելի մեծ արդյունքների: Պետք է ջանալ, որպեսզի ժողովրդական տնտեսության 1971 թվականի պետական պլանը դառնա ամեն մի կոլեկտիվի, յուրաքանչյուր մարդու ստեղծարար աշխատանքի ծրագիրը, պայքարի նշանաբանը: Իսկ դա պահանջում է բարձրացնել կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական, քաղաքական-գաղափարական գործունեության մակարդակը: Անհրաժեշտ է աշխատավորներին լայնորեն պարզաբանել ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի, ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետների սեսիաների որոշումները, ժողովրդական տնտեսության զարգացման անցած հնգամյակի արդյունքները և ընթացիկ տարվա խնդիրները: Պետք է ամեն կերպ խրախուսել արտադրական կոլեկտիվների հայրենանվեր նախաձեռնությունները, որոնք ի պատիվ կուսակցության առաջիկա համագումարի ստանձնել են նոր, սոցիալիստական ավելի բարձր պարտավորություններ:

1971 թվականի մարտի 30-ին կբացվի Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը: Կոմունիստների համաժողովը կամփոփի կատարված աշխատանքի արդյունքները, կորոշի 9-րդ հնգամյակի բնագծերը, մեր երկրի ու նրա էկոնոմիկայի հետագա զարգացման ուղիները:

Լենինյան կուսակցությունը սովետական ժողովրդին ոգեշնչում է նոր մեծագործությունների: Հայաստանի աշխատավորները, սերտորեն համախմբված հարազատ կուսակցության շուրջը, կոմունիզմի հաղթանակի նկատմամբ աներեր հավատով լեցուն, նորանոր բարձունքներ կնվաճեն նոր հասարակության կառուցման հաղթարշավում:



# ՍՈՑԻՈԼՈԳԻԱՅԻ ԴԵՐԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԲՆՈՒԹԱԳԻՐԸ

Է. Ս. ՄԱՐԳԱՐՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

*Վ. Ի. Լենինի՝ որպես տեսաբանի ու քաղաքական գործչի, առավել արժեքավոր հատկությունն իր առջև ծառացած պրոբլեմներին ստեղծագործական մոտեցում ցուցաբերելն էր: Լինելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հավատարիմ հետևորդը, նա ստեղծագործաբար յուրացրեց գաղափարական ուսուցիչների թեորիական ժառանգությունը, ընկալելով վերջինիս ոչ թե տառը, այլ ոգին:*

*Ղեկավարվելով լենինյան անմահ ուսմունքով, անհրաժեշտ է ամենուր ցուցաբերել սթափ գիտականություն, դիալեկտիկական մոտեցում: Դժբախտաբար, մեր գիտական գրականության մեջ Լենինի ժառանգության հանդեպ նման մոտեցումը ոչ միշտ է պահպանվում: Ավելին. երբեմն առանց իմաստավորելու Լենինի այս կամ այն ասույթը, աղավաղում են այն, նրան վերագրում այնպիսի մտքեր, որոնք հեռու են լենինյան լինելուց:*

*Մեր փիլիսոփաների շրջանում տարածված է այն դրույթը, թե իբր օրինաչափական է խոսել ոչ թե «ընդհանրապես հասարակության», այլ հասարակական-տնտեսական ֆորմացիաների իրական գոյության վերաբերյալ: Այսպես, Գ. Վ. Տերյաևը* Հասարակական-տնտեսական ֆորմացիա *իր աշխատության մեջ գրում է. «Ի հակադրություն բուրժուական սոցիոլոգիայի, որը դատում է «ընդհանրապես հասարակության», «ընդհանրապես առաջադիմության» մասին, մարքսիզմի հիմնադիրները, բացահայտելով պատմության մատերիալիստական ըմբռնումը, մշակել են հասարակական-տնտեսական ֆորմացիայի հասկացությունը... «Ընդհանրապես հասարակության» վերաբերյալ աբստրակտ դատողությունների փոխարեն հետազոտվեցին հասարակության կառուցվածքի որոշակի ձևերն իրենց կոնկրետ պատմական իրադրության և զարգացման մեջ»* (Г. В. Теряев. Общественно-экономическая формация. М., 1963, стр. 6—7):

*Պատմական մատերիալիզմի վերաբերյալ սովետական գրականության մեջ այդպիսի կարծիքներ հաճախ կարելի է հանդիպել մենագրություններում, հոդվածներում և նույնիսկ փիլիսոփայական բառարաններում, մանավանդ՝ մանկավարժական պրակտիկայում: Այդ տեսակետը քննադատել են Գ. Ե. Գլե-*

գերմանը, Վ. Պ. Տուգարինովը, Ա. Վ. Դրոզդովը և մի քանի այլ հեղինակներ։ Տուգարինովն այդ կապակցությամբ գրել է. «Մարքսիզմի առանձին դոգմատիկներ, տիրացուաբար մեջբերելով մարքսիզմ-լենինիզմի կլասիկների՝ տեքստից կտրված դրույթները, հաստատում են, թե իբր «չկա ընդհանրապես հասարակություն»։ Սակայն, նրանք չեն հասկանում, որ մարքսիզմի կլասիկների նման բանաձևումները հասարակության վերաբերյալ հիշյալ «համատարած» հասկացության դեմ մղվող պայքարի սուր արտահայտություններն էին և ամենևին չէին նշանակում համապատմական կատեգորիաների ժխտում։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերում վիթխարի տեղ են գրավում հասարակություն հասկացությունը ամբողջությամբ վերցրած և այդ հասկացողության հետ կապված համապատմական կատեգորիաները։ Մարքսիզմը այս հարցին ևս մոտենում է դիալեկտիկորեն, զուգակցելով ընդհանուրն ու առանձնահատուկը, հասարակությունն ընդհանրապես և հասարակական-տնտեսական ֆորմացիաները՝ որպես այդ հասարակության պատմական փուլեր, ամենևին չժխտելով դրանցից մեկը մյուսի հաշվին՝ հօգուտ մետաֆիզիկական դատողության կամ հասարակություն ընդհանրապես, կամ հասարակական-տնտեսական ֆորմացիաներ (В. П. Тугаринов. Соотношение категорий исторического материализма. Л., 1958, стр. 24)։

Չնայած քննադատությանը, ինչպես նաև այն հանգամանքին, որ քննարկվող տեսակետի կողմնակիցներն ի վիճակի չեն քիչ թե շատ համոզիչ փաստարկումներ անելու հօգուտ իրենց և միայն կրկնում են Լենինի՝ կոնտեքստից կտրված խոսքերը, այդ տեսակետը դեռևս շատ լայն տարածում ունի։ Հանդես գալով որպես արմատավորված նախապաշարմունք, որը դարձել է սոցիոլոգիական գիտության հետազոտման ու ստեղծման սկզբունք, վերջինս հնարավորություն է ընձեռում կոնկրետ պատկերացնելու մարքսիստական սոցիալական գիտությանը դոգմատիկ մտածողության հասցրած վիթխարի վնասը։

Սովորաբար այդ տեսակետի կողմնակիցները վկայակոչում են Լենինի ներքոհիշյալ ասույթը. «Ես արդեն նշեցի, որ հին (ոչ Ռուսաստանի համար) տնտեսագետների ու սոցիոլոգների տեսակետից բոլորովին ավելորդ է հասարակական-տնտեսական ֆորմացիայի հասկացողությունը. նրանք խոսում են ընդհանրապես հասարակության մասին, վիճում են սպենսերների հետ այն մասին, թե ի՞նչ է հասարակությունն ընդհանրապես, ո՞րն է ընդհանրապես հասարակության նպատակն ու էությունը և այլն։ Իրենց այդ դատողություններում այդ սուբյեկտիվ սոցիոլոգները հենվում են այնպիսի փաստարկումների վրա, ինչպես, այն, որ հասարակության նպատակը նրա բոլոր անդամների շահերն են, որ այդ պատճառով արդարությունը պահանջում է ինչ-որ կազմակերպություն, որ այդ իդեալական կազմակերպությանը չհամապատասխանող կարգերն աննորմալ են և պետք է վերացվեն։ «Սոցիոլոգիայի էական խնդիրն է,— դատում է պ-րն Միխայլովսկին,— հասարակական այն պայմանների պարզումը, որոնց առկայության դեպքում բավարարվում է մարդկային բնության այս կամ այն պահանջմունքը»։ Դուք տեսնում եք, որ այդ սոցիոլոգին հետաքրքրում է միայն այնպիսի հասարակություն, որը բավարարում է մարդկային բնությանը, և ամենևին ոչ հասարակական ինչ-որ ֆորմացիաներ, որոնք ընդամենը կարող են հիմնված լինել «մարդկային բնությանը» չհամապատասխանող այնպիսի երևույթների վրա, ինչպիսին մեծամասնության ստրկացումն է փոքրամասնության կողմից։ Դուք տեսնում եք նաև, որ այդ սոցիոլոգի տեսակետից խոսք անգամ չի կարող լինել հասարակության զարգացմանը որպես



բնական-պատմական պրոցեսի դիտելու մասին» (Երկեր, հ. 1, էջ 119)։ Մեջ բերելով այս հատվածը, մեր փիլիսոփաներից ոմանք դրանով ցանկանում են հաստատել, թե չի կարելի խոսել «ընդհանրապես հասարակության» մասին, այլ կարելի է խոսել միայն հասարակական-տնտեսական ֆորմացիաների մասին։ Սակայն լենինյան մեջբերումն ուշադրությամբ կարդալու դեպքում դժվար չէ համոզվել, որ այնտեղ ամենևին չի ժխտվում «ընդհանրապես հասարակության» բնութագրումը։ Տվյալ դեպքում նա նախ քննադատում է Միխայլովսկու նման սուբյեկտիվորեն մտածող սոցիոլոգներին, որոնք սոցիոլոգիայի պրոբլեմները գոյության ոլորտից տեղափոխում էին պատշաճի ոլորտը և հրաժարվում մարդկային հասարակության գործունեությունն ու զարգացումը դիտել որպես բնական-պատմական պրոցես։ Իրենց սոցիոլոգիական սխեմաներում նրանք ելնում էին ոչ թե սոցիալ-պատմական իրականության ռեալ փաստերից ու պրոցեսներից, այլ ինչ-որ սուբյեկտիվ, այսինքն՝ որոշակի ճաշակով ծրագրված հասարակական իդեալից, որն իբր համապատասխանում էր ընդհանուր «մարդկային բնության» հիմնական պահանջմունքներին։ Հենց դրա համար Լենինը քննադատում էր նրանց, տվյալ կոնտեքստում օգտագործելով «ընդհանրապես հասարակություն» հասկացությունը։

«Առհասարակ» ժխտել հասարակության ռեալությունը նշանակում է կասկածի տակ առնել մարդու սոցիալական կեցության ռեալությունը, որպես իրականության ինքնուրույն որակապես որոշակի ոլորտ։ «Ընդհանրապես հասարակություն» հասկացության ռեալ բովանդակության ժխտումը տրամաբանորեն հանգեցնում է ուրիշ շատ կատեգորիաների, մասնավորապես հասարական-տնտեսական ֆորմացիայի հասկացության, իրական բովանդակության ժխտմանը։ Եվ իրոք, նույն հաջողությամբ կարելի է ասել, թե ռեալ գոյություն ունի ոչ թե այս կամ այն հասարակական-տնտեսական ֆորմացիան, այլ նրա ավելի կոնկրետ սպեցիֆիկ ինչ-որ մի վիճակ, իսկ այնուհետև, շարունակելով դատողությունների տվյալ տրամաբանությունը, կասկածի տակ առնել նաև տվյալ վիճակը, պատճառաբանելով, թե կարելի է տալ հասարակական զարգացման այս կամ այն փուլի առավել մանրատված բաժանումը։

Հարցն այդպես դնել, նշանակում է ամենևին չհասկանալ ճանաչողական գործունեության բուն էությունը և նրա իրականացման տրամաբանական միջոցները։ Մտավոր վերարտադրվող առարկայի ավել կամ պակաս կոնկրետությունը ոչ մի կերպ չի կարող չափանիշ ծառայել այդ առարկայի ռեալ գոյության և նրա վերաբերյալ մեր իմացության օբյեկտիվության համար արդեն իսկ այն պատճառով, որ միանգամայն հարաբերական է կոնկրետության բուն հասկացությունը։ Մինչդեռ, իրենք էլ չգիտակցելով, հենց այդպիսի չափանիշ են առաջարկում այն փիլիսոփաները, որոնք հաստատում են ոչ թե «ընդհանրապես հասարակության», այլ հասարակական ֆորմացիայի գոյության ռեալությունը։

Այդ փիլիսոփաները հաշվի չեն առնում այն աներկբայելի հանգամանքը, որ մեր իմացությունն այնպիսի աբստրակցիաների սիստեմ է, որոնք տարբեր ֆունկցիաներ են կատարում իմացական գործունեության մեջ և համապատասխանորեն արտահայտում ուսումնասիրվող օբյեկտների ընդհանրացման զանազան տիպերն ու աստիճանները։ Հաշվի առնելով այդ, կարելի է ասել, որ «ընդհանրապես հասարակություն» հասկացությունը իր բովանդակությամբ պակաս ռեալ չէ, քան հասարակական ֆորմացիա հասկացությունը։

Մյուս կողմից, հասարակական ֆորմացիա հասկացությունն իր ներքին

էությամբ նույնպիսի տրամաբանական աբստրակցիա է, ինչպես և «ընդհանրապես հասարակություն» հասկացությունը, և որպես այդպիսին, հանրագումարն է հասարակական զարգացման այս կամ այն փուլի (նախնադարյան-համայնական, կապիտալիստական և այլն) բնորոշող սպեցիֆիկ հատկանիշների ընդհանրացման միասնության։ «Ֆորմացիա» ինչպես և «հասարակություն» հասկացությունը, որն արդյունք է դրանում ենթադրվող իր ժամանակավոր վիճակով և տարածական տեղադրմամբ անմիջականորեն տրված տարբեր պատմական օբյեկտների ընդհանրացման «զուտ» ձևով գոյություն չունի։ Այդ հասկացություններն իրարից տարբերվում են ոչ թե իրենց բովանդակության ռեալությամբ, այլ կիրառման ոլորտով որոշվող իրենց ծավալով։ Նրանք արտահայտում են մարդկանց սոցիալ-պատմական կյանքի ընդհանրացման տարբեր մակարդակներ և արդեն դրանով իսկ տարբեր ֆունկցիաներ են կատարում այդ կյանքի գիտական հետազոտության գործում։

Եթե հասարակական ֆորմացիա հասկացությունը կոչված է արտահայտելու սոցիալական հարաբերությունների ու կուլտուրայի առանձին պատմական տիպերը, ապա «ընդհանրապես հասարակություն» հասկացությունը վերարտադրում է ամբողջությամբ վերցրած մարդու սոցիալական կեցության՝ իրենց բովանդակությամբ առավել բնորոշ հատկանիշները։

Ընդ որում, կարևոր է նկատի ունենալ, որ «ընդհանրապես հասարակություն» հասկացությունը դիտվում է այլ հարաբերակցության մեջ, ճիշտ այնպես, ինչպես հասարակական ֆորմացիա հասկացությունը կառուցվում է արդեն պատմական տիպոլոգիական ձևով, որպես իրական աշխարհի զարգացման որոշակի փուլ, աստիճան, կապերի ու հարաբերությունների՝ այդ փուլի համար բնորոշ սպեցիֆիկ տիպն արտահայտող հասկացություն։

Ոչ մի բան ավելի թյուր ու տիպական չէ, քան այդպիսի քննադատությունը, որի հետևանքով որևէ ռեալ պրոբլեմ նույնացվում է նրա այս կամ այն սխալ մեկնաբանմանը. մի բան, որ այնքան էլ հազվադեպ չի եղել մեր գրականության մեջ։ Տվյալ դեպքում մեզ հետաքրքրող շատ կարևոր պրոբլեմ է հասարակական կյանքի ըստ հնարավորին լայն բնորոշման պրոբլեմը։

Բուրժուական սոցիոլոգների սխալը ոչ թե ընդհանուր բնութագրումներով հասարակության հասկացության բուն կիրառման մեջ է (դա ոչ միայն օրինական է, այլև անհրաժեշտ), այլ հենց այն բանում, որ նրանք հաճախ սահմանափակվելով աբստրակցիայի տվյալ մակարդակով, ի վիճակի չեն լինում հասկանալու սոցիալ-պատմական զարգացման փուլերի վերաբերյալ ուսմունքն արտահայտող հասարակական-տնտեսական ֆորմացիայի կատեգորիայի նշանակությունը։ Իսկ եթե այդ կապակցությամբ փորձենք պարզել նման տեսակետի դիրքը պայմանավորող հիմքերը, ապա կտեսնենք, որ դրանք, առաջին հերթին, թաքնված են բուն մարդկային հասարակության, այսինքն՝ «ընդհանրապես հասարակության» ընդհանուր էության սխալ բնորոշման մեջ։

Այսպես, ուրեմն, մարդկային հասարակության մասին մեր իմացությունը, ինչպես և ամեն մի այլ իմացություն, հետազոտման առարկային մոտենալու ամենատարբեր մակարդակներն արտահայտող աբստրակցիաների սիստեմ է և այդ առարկայի ընդհանրացման տիպերը։ Այդ իմացության համար պարտադիր են առարկայի ինչպես ամենալայն բնութագրումը, այնպես և նրա վերաբերյալ ավելի կոնկրետ դատողությունները, որոնք արտահայտում են նրա մասնավորապես պատմական տարբեր վիճակները և վերափոխությունները։ Ավելին, որպես իմացության ամբողջ սիստեմի կառուցվածքի որոշողներ ու



սահմանողներ հանդես են գալիս այդ սիստեմի հենց այն տարրերը, որոնցում արտահայտված է առարկայի առավել ընդհանուր բնորոշումը։ Ուստի, զարգացման յուրաքանչյուր կոնցեպցիայի մեթոդոլոգիական արգասավորության աստիճանը անմիջականորեն կախված է այն բանից, թե որքան խոր է օբյեկտի. նրա առավել ընդհանուր հատկությունների, նրա ներքին էության ճանաչումը։ Միանգամայն հասկանալի է, որ նախքան առարկայի զարգացման մասին խոսելը, հարկավոր է իմանալ նրա ընդհանուր հատկությունները։ Հասարակական-տնտեսական ֆորմացիաների վերաբերյալ ուսմունքի ուժն ու կենսունակությունը դարձյալ որոշվում են այն բանով, որ նրա հիմնադիրները կարողացել են ճիշտ իմաստավորել հասարակական երևույթների էությունը։

Գիտության ամեն մի բնագավառում հետազոտման առարկայի հիմնական հատկությունների և օրինաչափությունների սահմանման խնդիրը բնականորեն արտահայտում է տեսության կառուցվածքի որոշիչ ու կենտրոնական պրոբլեմը։ Եվ դա զարմանալի չէ, քանի որ գիտությունների զարգացման հաջողությունները անմիջական կախման մեջ են նրանց հետազոտման ոլորտի ընդհանուր տեսական յուրացման աստիճանից։ Սոցիալական տեսությունը այդ տեսակետից բացառություն չէ, և որպես ելակետային ու նրա կառուցվածքը որոշող տարրեր հանդես են գալիս հասկացությունները, որոնք արտահայտում են հասարակական երևույթների ոլորտը, մարդկային կենսագործունեության սիստեմի ընդհանուր սոցիոլոգիական բնութագրումը։ Մեր օրերում, որպես իրականության կազմակերպման սպեցիֆիկ տիպ, մարդկանց հասարակական կյանքը պետք է դառնա նույնպիսի խոր ու բազմակողմանի ուսումնասիրության առարկա, ինչպես և արդի ֆիզիկական ու կենսաբանական գիտությունների օբյեկտները։ Տվյալ սիստեմին բնորոշ հատկությունների և օրինաչափությունների այդպիսի ուսումնասիրությունը միայն թույլ կտա դնելու ամբողջությամբ վերցրած արդի հասարակագիտության տեսական կայուն հիմքերը։

Եթե դիմենք բնական գիտությունների պրակտիկային, ապա կհամոզվենք, որ այդ գիտությունները ուսումնասիրվող իրականության ոլորտներին բացառիկ կարևոր տեղ են հատկացնում։ Կենսաբանները մեծ հետաքրքրություն են ցուցաբերում կյանքի, կենսական պրոցեսների ընդհանուր էությունը սահմանելու պրոբլեմի նկատմամբ։ Մինչդեռ, թվում է, թե այդ խիստ վերացական պրոբլեմը իր արդի դրսևորմամբ չի սահմանափակվում աշխարհի կենսապրոցեսների վերաբերյալ հարցի առաջադրմամբ և պահանջում է սահմանել կյանքի էությունն ընդհանրապես։

Պատահական չէ տվյալ պրոբլեմի նկատմամբ հետաքրքրությունն արդի կենսաբանության մեջ։ Ընդ որում, այդ հետաքրքրությունը ամենևին զուտ մտահայեցողական չէ և, վերջին հաշվով, պայմանավորված է կիրառական բնույթի խնդիրներով։ Բանն այն է, որ այդ գիտությունը մի բարդ սիստեմ է, որի բաղկացուցիչ մասերը օրգանապես և ֆունկցիոնալ կերպով առնչված են միմյանց։ Եվ նրա այս կամ այն մասի մշակվածության բացակայությունն անխուսափելիորեն անդրադառնում է մյուս մասերի վիճակի վրա։ Դա առանձնապես դրսևորվում է այն ժամանակ, երբ խոսքը գիտության իմացության կառուցման ելակետային տարրերի մասին է, քանի որ հենց այդտեղ են հիմնադրվում գիտության հիմնարար հասկացություններն ու սկզբունքները։

Միանգամայն բնական է, որ դա և՛ հասարակագիտությանն է վերաբերում, և՛ կենսաբանությանը։ Մինչդեռ, մեր գրականության մեջ փաստորեն չկան մարդու սոցիալական կյանքի ընդհանուր բնութագրմանը նվիրված աշ-

խատությունները։ Ավելին, որպես կանոն, նույնիսկ պատմական մատերիալիզմի դասընթացներում չկան հատուկ բաժիններ տվյալ պրոբլեմի վերաբերյալ, որոնք կոչված են տալու մարդկային հասարակության բնութագիրը։

Այսպիսով, սովետական սոցիոլոգիական գրականության մեջ ստեղծվել է միանգամայն պարադոքսային մի դրություն։ Այստեղ երկար ժամանակ գրեթե չի մշակվել սոցիալական գիտությունների համար ելակետային պրոբլեմատիկա, որն առաջին անգամ գիտական հողի վրա դրին մարքսիզմի հիմնադիրները և դրանով իսկ ստեղծեցին սոցիոլոգիան գիտելիքից գիտություն դարձնելու համար անհրաժեշտ տեսական բոլոր վճռական հիմունքները։ Դրա շնորհիվ պարզվեց, որ միանգամայն անբավարար մշակված վիճակում են այդ սոցիալական գիտությունների հիմնարար հասկացություններն ու սկզբունքները։ «Հասարակություն», «սոցիալական օրգանիզմ», «սոցիալական սիստեմ», «կուլտուրա», «մարդկային գործունեություն», «սոցիալական հարաբերություններ» և ուրիշ հասկացություններ մենք գործածում ենք խիստ սուբյեկտիվ ու կամայական. դա անհանդուրժելի է, մանավանդ, երբ գործ ունես գիտական հիմնարար, ինչպես նաև հասարակական կյանքի առանձին բնագավառներն արտահայտող հասկացությունների հետ։ Մինչդեռ, թվում էր, եթե ոչ ուրիշ, ապա մեր գրականության մեջ էկոնոմիկային պետք է բացառիկ ուշադրություն նվիրվեր։ Սակայն այդ հարցերը սպասում են իրենց հետազոտողին։

Հասարակական գիտությունների զարգացումը մեր երկրում վերջին 10—15 տարիներին օրակարգի մեջ է դրել մարդկանց սոցիալական կյանքի ոլորտի ընդհանուր բնութագրման պրոբլեմը։ Փիլիսոփաների, սոցիոլոգների, ինչպես նաև գիտության մյուս բնագավառների ներկայացուցիչների շրջանում օրեցօր աճում է հետաքրքրությունը, որպես հետազոտության հատուկ, համեմատաբար ինքնուրույն պրոբլեմ՝ սոցիալական ռեալության էության հարցի վերաբերյալ։ Եվ դա միանգամայն օրինաչափ է։ Այն ծնունդ է առնում սոցիալական գիտությունների բուն իսկ պրակտիկայից, որը հրամայաբար դնում է այդ գիտությունների հիմքում ընկած հիմնարար հասկացությունների ու սկզբունքների մանրազնին մշակման խնդիրները։

Հայտնի է, որ մարդկանց հասարակական կյանքը իրականության կազմակերպման հատուկ տիպ է։ «Կազմակերպում», ինչպես և «սիստեմ», «կառուցվածք», «ֆունկցիա» հասկացությունները արդի գիտական իմացության հիմնարար կատեգորիաներ են։ Մինչև այժմ դրանք, ինչպես և նշված մյուս հասկացությունները, մեր գրականության մեջ քննության էին առնվում առավելապես ընդհանուր կիբեռնետիկական և բնա-գիտական տեսանկյուններից։ Մինչդեռ սոցիալական գիտությունների համար ոչ պակաս նշանակություն ունի «կազմակերպում» հասկացությունը։

Մարդկանց հասարակական կյանքի կազմակերպման պրոբլեմը խիստ բազմակողմանի է և կարող է դիտվել շատ տեսանկյուններից ու աբստրակցիայի տարբեր մակարդակներում։ Սակայն դրանցից ելակետայինը և որոշիչը մարդկանց հասարակական կյանքը՝ որպես պատմականորեն առաջացած հատուկ սիստեմ առանձնացնող ասպեկտն է, որի համար բնորոշ է իր բաղադրիչ տարրերի կարգավորման խիստ սպեցիֆիկ եղանակը։ Մարդկանց հասարակական կյանքի դիտման այդ ասպեկտի ընտրությունը թույլ է տալիս կանխագծելու կարևորագույն ուղղություններից մեկը, որով պետք է ընթանա արդի սոցիոլոգիայի տեսական պրոբլեմների մշակումը։

«Կազմակերպում» հասկացությունը կոչված է արտահայտելու կազմալուծ-



մանը, քաոսին, չկարգավորվածությանը հակադիր երևույթները։ Եթե կազմալուծման աստիճանը արդի գիտության մեջ արտահայտվում է «էնտրոպիա» (մեր արդի աշխարհըմբռնման համար չափազանց կարևոր այդ հասկացության կիրառման հիմնական ոլորտների մասին, տե՛ս П. Шамбадаль, Развитие и приложения понятий энтропий, перевод с французского М., 1967) հասկացությամբ, ապա կազմակերպման աստիճանը կոչված է արտահայտելու «նեհենտրոպիա» (այդ հասկացության արտահայտման համար գործ են ածվում նաև «էկտրոպիա» ու «անտիէնտրոպիա» տերմինները) հասկացությունը։

«Կազմակերպում» հասկացությունը սիստեմների դիտման միանգամայն որոշակի տեսանկյուն է ստեղծում։ Դա այն եղանակի վրա ուշադրությունը կենտրոնացնող տեսանկյուն է, որի շնորհիվ, մի կողմից՝ սիստեմի տարրերը միավորվում և որոշակի կարգավորվածություն են ստանում, մյուս կողմից՝ սիստեմը և արտաքին միջավայրը փոխազդում են միմյանց վրա։ Առանց որևէ չափազանցության կարելի է ասել, որ արդի գիտական մտածողության հատուկ սպեցիֆիկ ոճ ստեղծող կարևորագույն առանձնահատկություններից մեկը իրականության տարբեր սիստեմների, դրանց կարգավորման և միջավայրի հետ փոխազդեցության կազմակերպման եղանակի վրա հետևողականորեն դրված շեշտն է։ Շեշտից առաջացող տեսանկյունը, հնարավորություն տալով ընկալելու սիստեմների կազմակերպման եղանակները, բաց է անում մեզ շրջապատող աշխարհի գաղտնիքների իմացության վիթխարի հեռանկարները։

Իրականության իմացության՝ մշտապես հետազոտողների ուշադրությունը գրավող առավել խոր ու հուզող գաղտնիքներից են, անշուշտ, մի կողմից՝ կենդանի և անկենդան աշխարհի, օրգանական և անօրգանական բնության տարբերության, մյուս կողմից՝ արդեն կենդանի ձևերի սահմաններում՝ մարդկանց սոցիալական կյանքի և վերջինիս զուտ կենսաբանական երևույթների տարբերության պրոբլեմները։ Տվյալ պրոբլեմների լուծման բանալին հենց իրականության նշված սիստեմների կազմակերպման ճանաչման մեջ է։ Գիտական միտքն արդեն վաղուց կարողացել է առանձնացնել և սիստեմավորել կենդանի ու անկենդան բնության սիստեմների տարբերիչ բազմաթիվ հատկանիշները։ Սակայն այն հարցի ճիշտ պատասխանին, թե ո՞րոնք են իրականության որակապես տարբեր ոլորտը՝ կյանքի ծագումը և համապատասխանորեն նրա համար բնորոշ սպեցիֆիկ հատկանիշների մշակումը պայմանավորող հիմնական պատճառներն ու մեխանիզմները, գիտնականները կարողացան մոտենալ վերջին տասնամյակներում միայն, շնորհիվ կենդանի և անկենդան բնության սիստեմներին հատուկ կազմակերպման, սկզբունքորեն իրարից տարբեր երկու եղանակների բացահայտման։ Պարզվել է, որ եթե անօրգանական բնությունը կազմող բաղադրամասերի կապի ու միավորման հիմնական եղանակը էներգիայի հաղորդումն է, տրանսմիսիան, ապա օրգանական բնության սիստեմները կազմող բաղադրամասերի կապն ու կարգավորումը ձեռք են բերվում նախ ինֆորմացիայի հաղորդման միջոցով։ Հենց ինֆորմացիոն սիստեմները, որոնք ունակ են կարգավորված արտացոլելու արտաքին միջավայրի ներգործությունը և այդ հիման վրա ընտրողաբար վերաբերվելու վարքագծի համապատասխան նպատակահարմար տիպերի մշակմանը, հանգեցրեց կյանքի ծագմանը, որը բնորոշվում է իր ընդհանուր նեհենտրոպիականությամբ։

Երկրագնդի վրա կյանքի ծագումը և նրա տևական զարգացումը ելակետային նախադրյալներ են ստեղծել ինֆորմացիոն սիստեմների կազմակերպման այնպիսի հատուկ տիպի մշակման համար, որը որակապես տարբերվում է բնա-

կանորեն ծագած մեզ հայտնի բոլոր կենսական ձևերից։ Դա մարդկային կենսագործունեության համար բնորոշ կազմակերպման տիպն է։ Թեև կազմակերպման այդ տիպը նույնպես հիմնված է հետադարձ կապի սկզբունքով ինֆորմացիայի օգտագործման վրա, այնուամենայնիվ, մարդու սոցիալական և կենսաբանական կյանքի բոլոր ձևերի միջև տարբերությունը նույնքան ապշեցուցիչ է, որքան և օրգանական ու անօրգանական բնության մեջ։ Ինչո՞ւմն է, սակայն, այդ տարբերությունը։

Այստեղ, իհարկե, հնարավոր չէ քիչ թե շատ մանրամասն կանգ առնել այդ խիստ բազմակողմանի պրոբլեմի վրա։ Նշենք միայն, որ մարդկանց հասարակական կյանքում ներկայացված կազմակերպման տիպի նպատակային բնորոշմանը մեզ մոտեցնող ելակետային հասկացությունը «կուլտուրա» հասկացությունն է։ Հենց այդ կատեգորիայի շնորհիվ է, որ հասկանալի են դառնում մարդկային հասարակության մեջ տեղի ունեցող ինֆորմացիոն պրոցեսների առանձնահատկությունները, նրա մեջ թաքնված զարգացման նեհենտրոպիական տենդենցի էությունը և համապատասխանորեն շրջապատին հարմարվելու մարդկանց հատուկ սպեցիֆիկ օրինաչափությունները։

«Կուլտուրա» հասկացությունը կոչված է արտահայտելու մարդկանց հասարակական կյանքը՝ նրանց հատուկ սպեցիֆիկ գործունեության եղանակի տեսանկյունից, լայն առումով, որն իր մեջ ընդգրկում է միջոցների ու մեխանիզմների հատուկ սիստեմ, որի շնորհիվ մարդկային անհատները իրենց կոոպերացված գոյության պրոցեսում լուծում են ծառացող բազմազան պրոբլեմներ։ Այդ միջոցներից ու մեխանիզմներից են աշխատանքի գործիքները, գիտակցությունը (իր անհատական և ոչ-անհատական ձևով), համապատասխանորեն նշանային տարբեր սիստեմները, որոնց շնորհիվ այն իր օբյեկտիվացումն է գտնում բարոյականության, իրավունքի, գաղափարախոսության, գիտության, փիլիսոփայության, կրոնի սիստեմներում, սոցիալական ինստիտուտների լայնածավալ ցանցում, բարքերում, սովորույթներում կայունացած զանազան ունակություններում, բնակարաններում, հագուստի մեջ, տրանսպորտում և այլն։ Մարդկանց հասարակական կյանքի այդ բոլոր, ինչպես նաև բազմաթիվ մյուս տարրերը մշակվել են զանազան այնպիսի պրոբլեմների լուծման համար, որոնց մարդիկ հանդիպում են իրենց կենսագործունեության ընթացքում և որոնք իրենց որոշակի նշանակությունն ունեն։

Դրանք մենք չենք գտնի իրականության կազմակերպման կենսաբանական տիպը ներկայացնող սիստեմներում, որքան էլ բարդ ու զարգացած լինի դրանց բնույթը։ Այս իմաստով կարելի է ասել, որ նշված միջոցներն ու մեխանիզմները, այս կամ այն ձևով լինելով մարդկային ստեղծագործության արգասիք, իրենց ծագմամբ և էությամբ կրում են ոչ կենսաբանական բնույթ, մարդկային ակտիվ ստեղծագործության այդ տարրերն էլ հենց կազմում են կուլտուրայի հատուկ աշխարհը. այդ տարրերի շնորհիվ է իրականացվում մարդկանց գործունեությունը և կազմակերպվում կոլեկտիվ կյանքը։ Այլ խոսքով, կարելի է ասել, որ կուլտուրան մարդկային գոյության սպեցիֆիկ եղանակն է։

Կուլտուրան ընդգրկում է այնպիսի միջոցների հատուկ սիստեմ, որը թույլ է տալիս, մի կողմից՝ որակապես փոփոխելու կենդանիների համար բնորոշ արտաքին միջավայրին անմիջականորեն հարմարվելու կենսաբանական ընդհանուր օրինաչափությունները, մյուս կողմից՝ փոխարինելու բնազդի մեխանիզմին, որպես կենդանաբանականի կազմակերպման ընդհանուր սկզբունք։



Կուլտուրայի աշխարհում մարմնավորված սկզբունքները, որակապես տարբերվելով կազմակերպման կենսաբանական սկզբունքներից, միաժամանակ անհրաժեշտ որոշակի համապատասխանության մեջ են գտնվում նրանց հետ։ Եվ դա միանգամայն հասկանալի է, քանի որ կուլտուրայի ծագման և հետագա գոյության բնական նախադրյալն է կենսաբանական կյանքը։ Կուլտուրայի մեջ մարմնավորված կոլեկտիվ կյանքի կազմակերպման էությունը ծագմամբ ու բնույթով ոչ կենսաբանական այնպիսի միջոցներ ու մեխանիզմներ մշակելու ունակության մեջ է, որոնց շնորհիվ մշտապես վերահսկվում է հասարակությունը կազմող էակների կենսաբանական ընդհանուր էությունը, դրանց վարքագիծը ծրագրվում և ուղղվում է սոցիալական կյանքի պահպանմանն անհրաժեշտ հունով ու ապահովվում նյութերի սպեցիֆիկ փոխանակումը սոցիալական սիստեմի ու բնության միջև՝ նյութա-արտադրական գործունեության միջոցով, որի նպատակն է անհրաժեշտ մթերքներով մարդկանց ապահովելը։

Դրանով իսկ, մարդկային հասարակությունը կազմակերպման տիպի տեսանկյունից դիտելով, կարող է որպես փոխգործողության մեջ գտնվող անհատների սիստեմ առավել լայն բնորոշվել, որի գործունեությունն ու զարգացումը (ի տարբերություն կենդանական խմբակցության) ապահովվում են ոչ կենսաբանորեն մշակված միջոցներով ու մեխանիզմներով, որոնք մարմնավորված են կուլտուրայի խիստ բազմազան ու բազմակողմանի աշխարհում։ Կարծում ենք, որ այդպիսի մոտեցումը թույլ կտա հասարակությունն ընկալելու ոչ թե ուղղակի որպես մարդկանց օրրան՝ Երկրագնդի պայմանների հետ առնչված մարդկային կյանքի անհատական-անկրկնելի հատկանիշներ արտահայտող մի երևույթ, այլև որպես իրենց կոլեկտիվ կյանքը կազմակերպող պոտենցիալ հնարավոր տիեզերական ֆենոմեն։



Երկնային մյուս մարմինների վրա մարդկանց հասարակական կյանքի օբյեկտներին համանման օբյեկտների գոյության հնարավորության առնչությամբ «հասարակություն», «կուլտուրա» հասկացությունների ծավալի պոտենցիալ ընդլայնումը (ինչպես կենսաբաններն ընդլայնում են «կյանք» հասկացությունը) մեթոդոլոգիական տեսակետից խիստ օգտակար է, քանի որ այն, տեսական լայն հեռանկարով դիտելով մարդկային կենսագործունեությունը, թույլ է տալիս ավելի խոր ըմբռնելու նրա ներքին էությունը, նրա մեջ պարունակվող կազմակերպման տիպը։ Իսկ դրա համար մենք բնականորեն ստիպված ենք գործածել «ընդհանրապես հասարակություն», «ընդհանրապես կուլտուրա» հասկացությունները, այսինքն՝ կազմել աբստրակցիաներ, որոնք հանրահայտ որոշ ասույթների մակերեսային մեկնաբանման և աղավաղման հետևանքով մեր գրականության մեջ շատ հաճախ գնահատվել են որպես ոչ գիտական։







# ՄԱՏԵՐԻԱՅԻ ԱՆՍՊԱՌԵԼԻՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԸ ԵՎ ԱՐԴԻ ՖԻԶԻԿԱՆ

Ս. Դ. ՍԱՐԳՍՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

(Բուլղարիա)

Ժամանակակից գիտության կարգացումը պահանջում է գիտական տե-
սությունների կառուցման մեթոդի կատարելագործման տեսական հարցերի
մշակում: Այս պրոցեսում հատուկ տեղ է գրավում գիտության ժամանակակից,
առավել հասուն նվաճումների ուսումնասիրումը, ինչպես նաև մյուս գիտու-
թյունների ընդհանրացման հիման վրա արված՝ հիմնական փիլիսոփայա-
կան, մեթոդոլոգիական սկզբունքների և գաղափարների ուսումնասիրումը:
Վ. Ի. Լենինը ցույց է տվել հասարակական և բնական գիտությունների
նվաճումների հիման վրա գիտության փիլիսոփայական հարցերի առաջադր-
ման և մշակման հիանալի օրինակներ: Նա շեշտել է, որ ժամանակակից գի-
տությունը պահանջում է ո՛չ միայն կատարելագործել ֆորմալ-տրամաբանա-
կան ապարատը, այլև, նախ և առաջ, մշակել ու կատարելագործել գիտության
հասկացությունների ու կատեգորիաների ապարատը, լուծել մեթոդոլոգիական
խնդիրները:
XIX դարի վերջին և XX դարի սկզբին՝ ֆիզիկայի նորագույն նվա-
ճումների տեսական և տրամաբանական վերլուծության ընթացքում, երբ
գրեթե բոլոր գիտնականները կանգնած էին դասական ատոմիզմի դիրքերում,
Վ. Ի. Լենինը հայտնեց էլեկտրոնի անսպառելիության մասին իր միտքը: Դա
այն ժամանակաշրջանն էր, երբ հեղափոխական հայտնագործությունների
հարվածների ներքո փլվում էին գիտության հին հիմքերը և աշխարհի վերա-
բերյալ նրա մեխանիստական գիտական պատկերը, երբ ի հայտ եկավ դասա-
կան ֆիզիկայի որոշ հասկացությունների ու սկզբունքների սահմանափակու-
թյունը, մի պրոցես, որը ճգնաժամի հասցրեց մետաֆիզիկորեն մտածող որոշ
ֆիզիկոսների: Գիտության մեջ Լենինն առաջինը տվեց նորագույն հայտնա-
գործությունների իմացաբանական ճշմարիտ գնահատականը, բացահայտեց
և ապացուցեց գոյություն ունեցող ֆիզիկական տեսությունների սահմանա-
փակությունը, տեսություններ, որոնք չէին կարողանում ընդգրկել և բա-
ցատրել գիտական նոր փաստերը: Այս առթիվ Վ. Ի. Լենինը նշեց, որ մա-
տերիայի և նրա հատկությունների վերաբերյալ գիտելիքները փոփոխվում ու
կարգանում են, դրանց հետ միասին փոխվում ու կարգանում են նաև հաս-
կացությունները: Այս պրոցեսի օբյեկտիվ հիմքն են ինչպես հասարակական
պրակտիկայի փոփոխումն ու կարգացումը, այնպես և մատերիայի անսպառե-
լիությունը: Մատերիայի անսպառելիության մասին լենինյան գաղափարը ժա-



մանակակից գիտության համար հանդիսացավ ղեկավար գաղափար և ունեցավ փայլուն հաստատում:

Դրա հիման վրա Լենինը կանխատեսեց արդի ֆիզիկայի կարգացումը: Նա կանխատեսեց, որ աշխարհի վերաբերյալ մեխանիստական պատկերացումը փոխարինվելու է նորով՝ էլեկտրամագնիսականով, իսկ վերջինս, իր հերթին, տեղը զիջելու է գիտական նոր պատկերացման, որ մեխանիստական օրենքները համընդհանուր չեն, այլ ավելի ընդհանուրների մոդիֆիկացիան են (օրինակ, էլեկտրամագնիսական շարժումը), իսկ նոր ֆիզիկան արտանկարն է վիթխարի չափերի հասնող արագ ռեալ շարժումների (տե՛ս 1, էջ 353): Նա կանխատեսեց, որ ժամանակակից գիտությունն ապագայում ևս ծնելու է «արտասովոր» (1, էջ 375, 348) կարմանալի «տարօրինակ» (1, էջ 348) գաղափարներ և ցույց է տալու դասական գիտության ֆունդամենտալ հասկացությունների սահմանափակությունը ու տեսական ճանաչողության անսպառելիությունը: Այս ամենը նա արտահայտեց հետևյալ նախադասության մեջ՝ «Արդի ֆիզիկան երկունքի մեջ է: Նա ծնում է դիալեկտիկական մատերիալիզմ» (1, էջ 419):

Մատերիայի ըստ խորքի անսպառելիության գաղափարը Լենինը ձևակերպեց հետևյալ կերպ. 1. էլեկտրոնը նույնպես անսպառելի է, ինչպես և ատոմը, բնությունն անվերջ է (1, էջ 349, 375): «...անսպառելի է ոչ միայն անվերջ, այլև «ամենափոքր ատոմը»» (1, էջ 347): «Բնությունն անվերջ է, ինչպես անվերջ է նաև մանրագույն մասնիկը (այդ թվում նաև էլեկտրոնը)» (1, էջ 417): Բացարձակ հատկություններ գոյություն չունեն, չկան անբաժանելի նյութական կապմություններ, արտոնյալ նյութական սիստեմներ: 2. «Դիալեկտիկական մատերիալիզմը պնդում է, որ մոտավոր, հարաբերական բնույթ ունի ամեն մի գիտական դրույթ մատերիայի կապմության ու նրա հատկությունների մասին» (1, էջ 348):

Ժամանակակից ֆիզիկայի կարգացումն ընթանում է Վ. Ի. Լենինի նշած ուղիով:

## 1. ՄԱՏԵՐԻԱՅԻ ԱՆՍՊԱՌԵԼԻՈՒԹՅՈՒՆԸ

Մինչև XIX դարի վերջը ֆիզիկոսները գիտեին միայն նյութը: Ժամանակակից ֆիզիկան հայտնաբերեց դաշտը և հականյութը: XIX դարի վերջին հայտնաբերվեցին Ռենտգենի ճառագայթները (1895 թ.), ռադիոակտիվության երևույթը (1896 թ.), էլեկտրոնը (1897 թ.), ռադիումը (1898 թ.): Այս հայտնագործությունները ֆիզիկայի կարգացման մեջ շրջադարձային փուլեր էին: 1911 թվականին հայտնաբերվեց պրոտոնը, 1932 թվականին՝ նեյտրոնը: Ավելի ուշ հայտնաբերվեցին նեյտրինոն, մյուոնը, պիոնը, կաոնը, լամբդահիպերոնը (կանայան հիպերոններով) և այլն: Այս ամենն հաստատում էր մատերիայի անսպառելիությունն ըստ խորքի: Բայց դա բոլորը չէր: 1932 թվականին հայտնաբերվեց պոզիտրոնը: Վերջինս էլեկտրոնի հակամասնիկն է և հականյութի առաջին ներկայացուցիչը: 1955 թ. հայտնաբերվեց հակապրոտոնը: 1956 թ. հականեյտրոնը, իսկ հետագայում նաև՝ ուրիշ հակամասնիկներ:

Ժամանակակից ֆիզիկան հաստատեց, որ նյութը հիմնականում կապմված է երեք տեսակի մասնիկներից՝ էլեկտրոն, պրոտոն, նեյտրոն: Իսկ հականյութը կապմված է հակամասնիկներից՝ պոզիտրոն, հակապրոտոն, հականեյտրոն: Այսպիսով, բացահայտվում է նյութի և հականյութի որակական տարբերությունը:

Մեր դարի 60-ական թվականներին հայտնաբերվեցին նաև, այսպես կոչված, ռեզոնանսային մասնիկները: Սրանք պիմեզոնների ու K—մեզոնների (միջին մասնիկներ են) և նուկլեոնների ու հիպերոնների (ծանր մասնիկներ) հատուկ վիճակն են: Ռեզոնանսների[1] կյանքի տևողությունը չա-

[1] *Ռեզոնանսները պայմանավորված են ուժեղ փոխազդեցությամբ և համարվում է, որ հանդիսանում են տարրական մասնիկների ու վակուումի առանձնահատուկ միացություններ, որոնք արագորեն քայքայվում են երկու կամ երեք պիմեզոնի, նուկլոնի և պիմեզոնի, հիպերոնի և պիմեզոնի և այլն (23, էջ 197):*

փականց կարճ է՝ մոտավորապես $10^{-22}$—$10^{-23}$ վայրկյան: Առայժմ հաշվվում է, որ կան շուրջ 30 հիմնական մասնիկներ և շուրջ 170 ռեզոնանսներ կամ ընդամենը 200 մասնիկներ: Տարրական մասնիկների հատկություններն ավելի լավ ուսումնասիրելու նպատակով (զանգվածի համեմատությամբ). դրանք բաժանվում են հետևյալ խմբերի. թեթև՝ լեպտոններ (էլեկտրոն, նեյտրինո, որոնք երկու տեսակի են, միոն և դրանց հակամասնիկները), միջին մեզոններ (պի և K—մեզոններ և այլն ու դրանց համամասնիկները):

Մատերիայի երևույթների բազմազանության, մատերիայի կառուցվածքի տարբեր մակարդակի մասին կարելի է դատել նաև ըստ դրանց չափերի, որոնք տատանվում են $10^{-14}$ սմ մինչև $18^{-28}$ սմ: Բայց այս չափերը չեն կարող համարվել բնության նյութական գոյացությունների սկիզբն ու վերջը: Գիտությունն առայժմ հասել է մինչև այս սահմանները, բայց ենթադրում է, որ այս սահմաններից այն կողմն էլ գոյություն ունեն նյութական անհայտ այլ գոյացություններ: Ռադիոաստղագիտական մատչելի միջավայրերի շառավիղը հասնում է շուրջ 10 միլիարդ լույս-տարիների (14, էջ 247):

Վերջին տարիներին հայտնաբերվեցին նյութի նոր վիճակներ: Նախ և առաջ կարելի է նշել պլազմային վիճակը: Պլազման իոնիզացված նյութ է, որն ստացվել է $10^6$ ջերմաստիճանում ըստ Կելվինի. այն բաղկացած է իոններից և էլեկտրոններից: Պլազման $10^7$ ջերմաստիճանում (այսինքն՝ 10 միլիոն ջերմաստիճանում) բաղկացած է լինում «մերկ» միջուկից և ազատ էլեկտրոններից, $10^8$ ջերմաստիճանում սկսվում են միջուկային ռեակցիաները՝ վերափոխումները, $10^9$ K ջերմաստիճանում միջուկները քայքայվում են, իսկ $10^{13}$ K ջերմաստիճանից հետո հնարավոր է, որ վերափոխվեն տարրական մասնիկների (15, էջ 201): Պլազմայի հետ միասին արդի գիտությունը հայտնաբերեց պրոտոն-նեյտրոն-էլեկտրոնային վիճակը, որը կոչվեց նախաստղային, քանի որ դրանից առաջ է գալիս նյութի աստղային վիճակը: Մեծ ճնշման պայմաններում նյութը կարող է դիտվել որպես խոշոր խտությամբ էլեկտրոնային գազ: Խտության ավելացման դեպքում ատոմի միջուկները դառնում են անկայուն (դրանց մեջ գերակշռում են նեյտրոնները) և քայքայվում են: $10^{11}$ գ/սմ$^3$ խտության և $10^{24}$ մթնոլորտ ճնշման պայմաններում նյութը վերածվում է նեյտրոնային ֆիրմի-գազի: Դա այն վիճակն է, որը բաղկացած է նեյտրոններից (որոնք գերակշռում են) և որոշակի քանակությամբ պրոտոններից ու էլեկտրոններից (տե՛ս 15, էջ 202—203): Նյութի աստղային վիճակը բնորոշվում է մեծ խտությամբ, օրինակ $\sim 10^6$ գ/սմ և բարձր ջերմաստիճանով՝ $\sim 10^7$ K:

Մատերիայի հատկությունների անսպառելիությունը բխում է մատերիական օբյեկտների փոխներգործության, շարժման մատերիայի մեջ կառուցվածքային մակարդակների անսպառելիությունից և մատերիական օբյեկտների միջև գոյություն ունեցող փոխադարձ կապից: Փաստերն այդ են հաստատում: Որպես օրինակ վերցնենք էլեկտրոնը: Սկզբում կարծում էին, թե էլեկտրոնը ունի սեփական զանգված և էլեկտրական լիցք: Բայց ավելի ուշ հայտնաբերվեցին նոր հատկություններ՝ նրա երկակի բնույթը. այն ի հայտ է գալիս որպես կորպուսկուլ և ալիք, այսինքն՝ ունի կորպուսկուլյար և ալիքային հատկություններ: Էլեկտրոնն ունի փոխարկվելու հատկություն՝ այն ծնվում, առաջ է գալիս բետա ճառագայթման, մյումեզոնների և պիմեզոնների քայքայման, ռադիոակտիվ գամմա ճառագայթման պրոցեսներում և նմանապես անհետանում է, փոխարկվելու իմաստով: Հարկ է նշել, որ որոշ պրոցեսներում (անիհիլացիա, գամմա ճառագայթում) էլեկտրոնը ծնվում և անհետանում է իր հակամասնիկների՝ պոզիտրոնի հետ միասին: Այս պրոցեսների ընթացքում, բնական է ենթադրել, որ էլեկտրոնի հատկությունները ծագում են, ի հայտ են գալիս ու անհետանում: Դա հաստատում է, որ նրա անսպառելիությունը կառուցվածքային չէ, այն իմաստով, որ սա սուբէլեկտրոններից չի կազմված:

Դարի սկզբին մտցվեց «քվանտ», հասկացությունը լույսի կորպուսկուլյար հատկությունները նշելու համար: Դրանով սկիզբ դրվեց անընդհատության (մատերիական պրոցեսներ՝ առանց տարածության մեջ որոշակի



տեղայնացման) և ընդհատության (մատերիական պրոցեսներ՝ որոշակի տեղայնացումով) վերաբերյալ գոյություն ունեցող դարավոր պատկերացումների դիալեկտիկական սինթեզմանը: Այս պրոցեսը շարունակվեց Լուի դե Բրոյլի աշխատություններով, որը մտցրեց տարրական մասնիկների «ալիքի» պարադոքսալ հասկացությունը (այն ժամանակ տարրական մասնիկներից հայտնի էին միայն էլեկտրոնն ու պրոտոնը): Է. Շրյոդինգերի ու այլոց աշխատությունները հաստատեցին Լուի դե Բրոյլի այս գաղափարը:

Կորպուսկուլային-ալիքային դուալիզմի (երկվության) որակապես նոր տեսակետ տվեց ակադեմիկոս Վ. Ա. Ֆոկը: Նա բացատրեց, որ ալիքային ֆունկցիան արտահայտում է տարրական մասնիկների հավանական վարմունքի պոտենցիալ կարողությունը մակրոսիստեմի հետ փոխներգործության ժամանակ (տե՛ս 25): Ն. Բորը, Վ. Հայզենբերգը, Է. Շրյոդինգերը և ուրիշներ ցույց տվեցին իմպուլս և կոորդինատներ դասական հասկացությունների կիրառման սահմանափակությունը՝ միկրոպրոցեսները նկարագրելու գործում: Նրանք գտան, որ անհրաժեշտ են նոր հասկացություններ՝ այս պրոցեսները նկարագրելու, տվյալ պայմաններում տարրական մասնիկների վարքը սևեռելու համար: Այս օբյեկտիվ պրոցեսների ռեալությունը ցույց տվեց, որ հակասությունների միասնությունը, որը դիալեկտիկայի էությունն է, կարող է բացահայտվել ճանաչման պրոցեսում, որ ընդհատությունն ու անընդհատությունը օբյեկտիվ-ռեալ հակասություն է, որն ի հայտ է գալիս կորպուսկուլյար-ալիքային դուալիզմի միջոցով: Այս դիալեկտիկական հակասությունը պահանջում է միկրոպրոցեսների նկարագրման և բացատրման նոր եղանակ (8, էջ 103—104):

Վերջին երկու տասնամյակներում ապացուցվեց տարրական մասնիկների փոխադարձ փոփոխությունը (տե՛ս 24) և հայտնվեց նրանց բաժանելության գաղափարը (տե՛ս 20, էջ 129—130): Տարրական մասնիկների փոխադարձ փոխարկելիությունը ենթարկվում է պահպանման որոշակի օրենքների (18, էջ 176 և 13, էջ 695): Դա կատարվում է տարրական մասնիկների փոխադարձ փոխարկելիության միջոցով, որի ընթացքում նրանք փոխանակում են դաշտերի քվանտները: Նրանց բացատրման համար մտցվել է վիրտուալային (օբյեկտիվորեն-հնարավոր) մասնիկների հասկացությունը: Այս պրոցեսները հանդիսացան սարգացող ռելյատիվիստական քվանտային տեսության օբյեկտ: Դրանք ցույց տվին, որ քվանտային մեխանիկայի հասկացությունները դարձան անկիրառելի՝ բարձր էներգիաների բնագավառում տարրական մասնիկների վիճակը նկարագրելու համար, ինչպիսին է ալիքային ֆունկցիայի դեպքը: Տարրական մասնիկների անընդհատ փոխադարձ փոխարկելիությունը ցույց տվեց հնարավոր կապերի անսպառելիությունը, հետևապես նաև այդ մասնիկների հատկությունների անսպառելիությունը (տե՛ս 6): Միկրոաշխարհում հայտնաբերվեցին մի շարք անհայտ ու անսովոր հատկություններ: Օրինակ, սպին և իզոտոպային սպին, տարօրինակությունը, զույգությունը, մագնիսական մոմենտը, լեպտոնային և բարիոնային լիցքը և այլն: Առանձին հետաքրքրություն է ներկայացնում սիմետրիայի հատկությունը (տե՛ս 16, նույնը 18, էջ 181—183):

Նեյտրինոյի հետ կապված պրոցեսներն ուսումնասիրելիս պարզվեց, որ աջն ու ձախը ոչ միայն պայմանական ուղղություններ են, այլ կախում ունեն մասնիկի տիպից, այսինքն՝ նեյտրինոն արձակվում է մեկ այլ ուղղությամբ և դեպի մյուսը չի կարող. որովհետև չունի հակադարձելիություն, չունի երկրաչափական սիմետրիա (տե՛ս 23, էջ 199—202): Թույլ փոխներգործություններին մասնակցող տարրական մասնիկների այս յուրօրինակ հատկությունը ցույց է տալիս մատերիայի անսպառ հնարավորությունները՝ ամենաբազմազան հատկություններ դրսևորելու գործում: Քվանտային մեխանիկան հայտնագործեց մեխանիկական շարժման նոր ձևը, փոխազդեցությունների նոր տիպեր և շարժման նոր օրենքներ, որի շնորհիվ հնարավոր եղավ որոշակիորեն գծել մակրո և միկրո-մեխանիկականի սահմանը: Ապացուցվեց, որ տարրական մասնիկները հետագծով չեն շարժվում:

Հետաքրքրական են նաև նյութական կազմությունների խտության մասին տվյալները: Առայժմ այն ճանաչված է $10^{-28}$ գ/սմ$^3$ (դա մետագալակ-

տիկայի խտությունն է), մինչև $10^{14}$ գ/սմ$^3$ (դա միջուկային խտությունն է): Շատ տարբեր է նաև մատերիայի կազմությունների գոյության ժամանակը: Օրինակ, որոշ տարրական մասնիկներ, ինչպիսիք են էլեկտրոնները, պրոտոնները, նեյտրինոները, նաև ֆոտոնները, կայուն են: Սակայն մասնիկների մեծ մասն անկայուն է և գոյություն է ունենում շատ կարճ ժամանակ. շուրջ $10^{-23}$—$10^{-24}$ վայրկյան:

Տարրական մասնիկների հայտնագործումը հերքեց ատոմի ոչ բաղադրելի բնույթի վերաբերյալ դարավոր մոլորությունը և սկիզբ դրեց նրա կառուցվածքի բացատրությանը: Տարրական մասնիկների հայտնագործումից հետո միշտ օրակարգում դրվում էր դրանց կառուցվածքի բացահայտման հարցը: Նորահայտ մասնիկների թվի ավելացումը գնալով ավելի սրությամբ պահանջում էր պատասխանել հետևյալ հարցին՝ տարրական մասնիկներն արդյոք կառուցվածք ունե՞ն: Դրական պատասխանը կարելի է բխեցնել փիլիսոփայական գաղափարներից. ա) աշխարհում բացարձակ, անփոփոխ նյութական օբյեկտներ գոյություն չունեն (21, էջ 23)․ բ) պատճառականության սկզբունքն ունի համընդհանուր բնույթ․ այս դրույթից բխում է, որ չկան և չեն կարող լինել շարժման և պրոցեսների տարածման անսահման արագություններ: Այս բոլոր դրույթներին հաջորդում է անմիջական հետևությունը, որ չեն կարող լինել բացարձակ պարզ, ոչ կառուցվածքային մատերիայի օբյեկտներ կամ կազմություններ: Աշխարհի ներկայիս գիտական պատկերն իր մեջ ներառնում է մատերիայի կազմությունների կառուցվածքայնությունը՝ մատերիայի բոլոր մակարդակներում (տե՛ս 10): Բացի այդ, հիմք կա ընդունելու, որ կառուցվածքների անսահման շարքը պետք է փակվի, այսինքն՝ որ «ամեն բան» բաղկացած է «ինչ-որ բանից», աշխարհում չկա որևէ բացարձակ տարրական բան:

Քանի որ հնարավոր են որակական փոփոխություններ մի կառուցվածքից մյուսը և չկան մատերիայի բացարձակ անփոփոխ կազմություններ, ապա հետևում է, որ կառուցվածքների անսահման շարքի (սկիզբն ու վերջը) միաձուլվում են:

Այսպիսով, մատերիայի անսպառելիությունն ըստ խորքի դրսևորվում է նաև կառուցվածքային մակարդակի անսպառելիության միջոցով: Այսինքն՝ մատերիական բոլոր գոյացումները տարրական մասնիկներից մինչև տիեզերքը, ունեն իրենց կառուցվածքը: Հատկության և կառուցվածքի միջև գոյություն ունեցող կապի հիման վրա գալիս ենք այն եզրակացության, որ մատերիական աշխարհում կա փոխադարձաբար կապակցված կառուցվածքների անսպառ շղթա, որոնք կազմում են մատերիայի իսկապես տարբեր մակարդակներ (տե՛ս 17, էջ 98):

Տարրական մասնիկների աշխարհում հայտնաբերվեցին համապատասխան հատկություններ արտահայտող մի ամբողջ շարք օրենքներ: Օրինակ, լիցքի պահպանման, սպինի, իզոտոպիկ սպինի օրենքները, Ֆերմի-Դիրակի վիճակագրական օրենքը՝ կես ու ամբողջ սպին ունեցող մասնիկների մասին, որն ասում է՝ «ամեն մի անհատական վիճակում կարող է գտնվել միայն մի մասնիկ»: Ամբողջական սպինով մասնիկների մասին կա Բոզե-Էյնշտեյնի օրինաչափությունը՝ «ամեն մի վիճակում կարող են գտնվել ինքնակամորեն շատ մասնիկներ»: Կարևոր են սիմետրիայի, զույգության, լեպտոնների ու բարիոնների պահպանության օրենքները (վերջինը բացատրում է աշխարհի կայունությունը), տարրական մասնիկների փոխադարձ վերափոխման օրենքը: Նյութի և հականյութի վերափոխումը դաշտի և հակառակը, մինչև այժմ ֆիզիկայի հայտնի ամենախոր որակական վերափոխումն է:

Ժամանակակից ֆիզիկան, ի դեմս քվանտային մեխանիկայի, բացահայտեց ո՛չ միայն նոր օրինաչափություններ, այլև նոր հարաբերություններ նրանց միջև: Ինչպես նշում է Վ. Ա. Ֆոկը, դինամիկ օրինաչափությունների հիմքում ընկած են հավանական օրինաչափությունները, որոնք դինամիկականներից ավելի ընդհանուր են (25, էջ 165):

Այսպիսով, արդի ֆիզիկան բացահայտեց անհրաժեշտության և պատահականության հարաբերության նոր կողմը (որը բնութագրում է ֆիզիկայի



իմացաբանական «դասը»): Դիալեկտիկական-մատերիալիստական այն դրույթին, որ պատահականությունը անհրաժեշտության դրսևորման ձևերից է, պետք է ավելացնել, որ որոշ դեպքերում պատահականությունը ընկած է լինում անհրաժեշտության հիմքում: Այս եզրակացությունը բխում է այն դրույթից, որ հավանական օրենքները, որոնք արտահայտում են պատահականություններ գտնվում են դինամիկական օրենքների հիմքում:

## 2. ԳԻՏԱԿԱՆ ԻՄԱՑՈՒԹՅԱՆ ԱՆՍՊԱՌԵԼԻՈՒԹՅՈՒՆԸ

Մատերիայի անսպառելիության լենինյան գաղափարը ժամանակակից գիտական իմացության կարգացման մեջ փայլուն հաստատում է գտնում: Նա կանխատեսեց, որ գիտությունը հեղափոխական հայտնագործությունների միջոցով նոր հորիզոններ է ուրվագծելու հավիտենապես պրպտող գիտական մտքի առջև: Ի տարբերություն մետաֆիզիկ մտածողների, Լենինն առանց տատանվելու հայտարարեց, որ «բնության մեջ բոլոր սահմանները պայմանական են, հարաբերական, շարժուն, արտահայտում են մեր մտքի մերձավորումը մատերիայի իմացությանը» (1, էջ 375) և ապա՝ «բայց բանականությունը նույնպես անվերջորեն ինքնին իրերը» դարձնում է «իրեր մեզ համար»: Ռեալության և ֆիզիկայի օրենքների միջև պայքարը անվերջ է․ ամեն մի օրենքին, որ կձևակերպի ֆիզիկան, ռեալությունը վաղ թե ուշ կհարկադրի կոպիտ հերքումը—հերքումը փաստի միջոցով. բայց ֆիզիկան անդուլ ջերպով կվերահարդարի, կկերպարանափոխի, կբարդացնի հերքված օրենքը» (1, էջ 417): Այսպիսով, Լենինը նշեց գիտական իմացության ու տեսության ո՛չ միայն հարաբերականությունը, այլև դրանց անսպառելիությունը:

Լենինյան այս գաղափարը հաստատում են արդի դարաշրջանի հայտնի շատ գիտնականներ: Այսպես, Ռ. Հոֆշտադտերն ասում է, որ գնալով ավելի ու ավելի հիմնարար մասնիկների որոնումը շարունակվելու է այնքան ժամանակ, քանի դեռ մարդկությունը ծարավի է լույս գիտելիքների: Նույն միտքն է հայտնում նաև ճապոնացի ականավոր ֆիզիկոս Ս. Սակատան (19, էջ 169): Անգլիացի մաթեմատիկոս Մ. Սթոունը, խոսելով ժամանակակից գիտության մասին և ուշադրություն դարձնելով մաթեմատիկական ու ֆիզիկական իմացությանը, ընդգծում է, որ «Եթե նկատի ունենանք մարդու և ամբողջ մարդկության անընդհատ կարգացումը, ապա...բոլորից հավանականն այն է, որ մեզ վիճակված է տարբեր ուղղություններով անսահմանափակորեն շարունակել ուսումնասիրությունները, որոնք երբեք չեն կարող սպառված լինել» 11, էջ 156): Հայտնի ֆիզիկոս Մաքս Բորնը կողմնակից է մատերիայի անսպառելիության մտքին: Նա գրում է․ «Աշխարհն ամբողջությամբ վերցրած ոչ միայն հրեշավոր վիթխարի առարկա է, բայց և հավանաբար, ոչ պարփակված: Նրանում յուրաքանչյուր պահին հնարավորություն կա կատարել նոր հայտնագործություններ, իսկ դա նշանակում է՝ աշխարհը չսպառված օբյեկտ է, և հավանաբար, ընդհանրապես անսպառելի մինչև վերջ. կարճ ասած, աշխարհը, որ մենք գիտենք, երբեք իր մեջ ամեն ինչ չի ներառնում» (9, էջ 190):

Սովետական հայտնի աստղաֆիզիկոս, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը, պաշտպանելով լենինյան գաղափարը, ընդգծում է դրա մեթոդոլոգիական դերը: Առաջնորդվելով այդ գաղափարով, նա քննադատում է տիեզերքի՝ որպես ամբողջություն վերջնական մոդելը կառուցելու հնարավորության միտքը, քանի որ այն կհակասեր աշխարհի որակական անսահման բազմազանությանը (տե՛ս 3, էջ 394):

Գիտական տեսության կամ տվյալ գիտության անսպառելիությունը կարելի է դիտել գոնե երկու տեսանկյունից՝ ա) օբյեկտի և բ) գիտական իմացության սուբյեկտի: Սույն հոդվածի առաջին մասում քննարկեցինք առաջին տեսակետը: Ընդ որում, ֆիզիկայի և աստրոֆիզիկայի կարգացման վերաբերյալ բերված փաստերը ցույց են տալիս նաև մատերիայի անսպառելիությունը տեսական-ճանաչողական տեսակետից: Կամ՝ գիտական իմացության անսպառելիությունը որոշվում է նրա օբյեկտի անսպառելիությամբ: Ընդ որում, նկատի է առնվում, որ ինքը իմացությունը ևս որպես արտացոլում, դառնում է

անսպառ: Ինչպես դեռևս Ֆ. Էնգելսն է ասել, գիտական իմացության սուբյեկտը անսահմանափակ է, անսպառ:

Գիտության կարգացման պատմության մեջ իմացությունը նոր տեսություններով ու գիտելիքներով հագեցնելու պահերին միշտ գտնվել են գիտնականներ, որոնք հակված են եղել ընդունելու գիտական տեսությունների սպառելիության գաղափարը, այն իմաստով, որ ապագայում այլևս անհնար է կառուցել գիտական նոր տեսություններ, քանի որ հազիվ թե գտնվի էլի որևէ բան, որը կարողանա ասել գիտությունը: Առանց անցյալին վերադառնալու, նշենք մի օրինակ:

Պիզա քաղաքում տեղի ունեցած սիմպոզիումի ժամանակ (1964 թ. սեպտեմբեր), Վ. Վայսկոպֆը, Ռ. Ֆեյմանը և ուրիշ գիտնականներ (28, էջ 190—91 և 29, էջ 46) փորձեցին հիմնավորել այն թեզը, որ ֆիզիկայի տեսական իմացությունը պետք է լինի սպառելի և կանխագուշակեցին ֆիզիկայի տրամաբանական ավարտն ապագայում: Նրանք պնդում էին, որ գոյություն ունի մարդու մտավոր կարողությունների մի սահման և կգա պահ, երբ նա անկարող կլինի որոնել իմացության նոր մեթոդներ և հայտնագործել սկզբունքորեն նոր գիտական հասկացություններ ու տեսություններ (տե՛ս 11, էջ 154): Որոշ գիտնականներ գտնում են, որ իր կարգացման որոշ էտապում կոսմոլոգիան (տիեզերաբանությունը) նկարագրելու է աշխարհում գոյություն ունեցող ամեն ինչի ֆիզիկական ասպեկտը (տե՛ս 4, էջ 236): Նույն ոգով են արտահայտվել նաև գիտնականներ՝ Բուշը, Դ. Պրայսը, Օժեն և ուրիշներ (տե՛ս 27, էջ 117):

Ֆիզիկական իմացության սպառելիության մասին թեզը հակասության մեջ է գտնվում մատերիական աշխարհի կառուցվածքային տարբեր մակարդակների որակական բազմազանության սկզբունքի և նրանց գոյության պայմանների հետ: Դա գիտական իմացության մեթոդոլոգիական կարևոր դրույթ է, որը չի կարելի արհամարհել: Դրա համաձայն, մատերիական աշխարհի որակապես որոշակի կառուցվածքային մակարդակների բազմազանության համար պետք է ստեղծվեն տարբեր գիտական տեսություններ: Բայց անմիջապես հարց է առաջանում. «հնարավո՞ր չէ արդյոք ստեղծել միայն մեկ, համընդհանուր ֆիզիկական տեսություն, որն սպառի ֆիզիկական գիտությունը»: Ո՛չ, հնարավոր չէ: Ֆիզիկայի մինչ այժմյան պատմությունը ցույց է տալիս, որ նման տեսություն գոյություն չունի և չի կարող ունենալ: Որ այն չկա, դա պարզ է: Բայց որ նման տեսություն չի կարող գոյություն ունենալ, հարկ է բացատրել: Նման համընդհանուր տեսության առկայության պայմաններում դրա ուսումնասիրման օբյեկտ պետք է հանդիսանան աշխարհի ամենապարզ, բացարձակ տարրական մատերիական տարրերը: Իսկ արդի գիտությունն ապացուցում է, որ նման բացարձակ, ունիվերսալ պարզ մատերիական տարրեր չկան և չեն կարող լինել (տարրականի մասին կարելի է խոսել միայն որոշակի շրջանակներում ու հարաբերություններում, մատերիական աշխարհի միայն տվյալ մակարդակում):

Այստեղ հարկավոր է նկատի ունենալ նաև փիլիսոփայական այն դրույթը, որ ընդհանուր որակական բազմազանությունը բացարձակ է: Բայց ընդհանուրը գոյություն ունի կոնկրետի միջոցով և կոնկրետանալով ռելյատիվանում է, այսինքն՝ դառնում է հարաբերական, կախյալ: Ահա թե ինչու ընդհանուրը բացարձակ ընդհանուր չէ՝ ունիվերսալ ընդհանուրի իմաստով: Իսկ տեսական իմացությունը իմացություն է ընդհանուրի մասին: Հետևապես տեսական իմացությունը բացարձակ անսպառելի է: Ուստի, գիտական ունիվերսալ տեսություն, որն սպառի ֆիզիկական գիտելիքը, չկա և չի կարող լինել: «Տիեզերքի» սպառիչ տեսական մոդել գոյություն չունի:

Յուրաքանչյուր գիտական տեսության ունիվերսալությունը հարաբերական է: Դա երևում է «սև արկղի» մեթոդից, որը ժամանակակից գիտության մեջ լայն կիրառություն է գտնում: Այս մեթոդի համաձայն որակապես տարբեր մատերիական կառուցվածքների համար պետք է ստեղծել գիտական տարբեր տեսություններ: Կամ՝ գալիս ենք այն եզրակացության, որ ունիվերսալ, համընդհանուր տեսություն չի կարող գոյություն ունենալ:



Գիտության պատմությունը վկայում է գիտական իմացության անսպառելիության մասին, որովհետև այն կարգանում է որակապես տարբեր գիտական տեսությունների ստեղծմամբ, որոնք նշում են որակական տարբերությունները երևույթների տարբեր դասերի միջև: Ունիվերսալ եզակի տեսության կառուցման գաղափարը երբեք երկարատև հաջողություն չի ունեցել, թեև այն մոդայիկ է դարձել նոր, ավելի ընդհանուր տեսություններ կառուցելիս: Ֆիզիկայի պատմությունն առայժմ ներկայանում է չորս ավարտուն հիմնարար տեսություններով՝ Նյուտոնի մեխանիկան, ջերմության, էլեկտրադինամիկայի, հարաբերականության մասնակի և քվանտային տեսությունները (տե՛ս 12, էջ 68—78): Որոշ ֆիզիկոսների կարծիքով, այս տեսությունների կողքին հինգերորդ տեղը պետք է հատկացնել հարաբերականության ընդհանուր տեսությանը:

Գիտական իմացության անսպառելիությունը, քննարկվող տեսանկյունից կարելի է բացատրել շարժման ձևերի անսպառելիության միջոցով: Մատերիայի շարժման հիմնական ձևերը մեկ՝ եզակի ձևի հանգեցնելու անկարելիությունը, անհնար է դարձնում մեկ՝ եզակի տեսության գոյությունը: Ճիշտ հակառակը. ենթադրում է գիտական շատ տեսությունների առկայությունը, որոնք պետք է կապակցվեին իրար միջև և անցնեին մեկը մյուսին, այսինքն՝ նրանց միջև լինի հաջորդականություն, իրենց մեջ ունենան ռելյատիվացման հնարավորություն:

Մաթեմատիկայի պատմությունը ցույց է տալիս, որ չկան մաթեմատիկական ունիվերսալ մեթոդներ, որոնք հնարավոր լիներ օգտագործել և որակապես տարբեր կառուցվածքների, և մատերիական աշխարհի տարբեր մակարդակների մաթեմատիկական խնդիրների լուծման համար: Մաթեմատիկական մեթոդների ունիվերսալությունը վերաբերում է միայն երևույթների որոշակի տեսակի: Մատերիական աշխարհի տարբեր մակարդակների համար հարկավոր է նաև համապատասխան մաթեմատիկական ապարատ: Այնպես որ մատերիական կառուցվածքների որակական անսպառելիությունը պահանջում է ստեղծել գիտական տարբեր տեսություններ՝ համապատասխան մաթեմատիկական ապարատի միջոցով: Մաթեմատիկական մեթոդների ոչ ունիվերսալությունը ցույց է տալիս, որ չի կարող գոյություն ունենալ բոլոր տեսակի գիտական խնդիրների լուծման ունիվերսալ մեթոդ: Այստեղից կարելի է եզրակացնել, որ ունիվերսալ տեսություն ունենալ ևս հնարավոր չէ:

Քննարկվող թեզի հետագա վերլուծության ընթացքում ծագում է հետևյալ հարցը. «Արդյոք սպառելի՞ է այն գիտելիքը, որ տվյալ գիտական տեսությունը տալիս է համապատասխան մատերիական բնագավառի մասին. այսինքն, գիտական տեսությունը արդյոք տալի՞ս է վերջնական գիտելիք»: Այս հարցին ևս, որոշ ականավոր ֆիզիկոսների ասույթների հիման վրա (Ա. Էյնշտեյն՝ *Հարաբերականության տեսության մասին*, Ն. Բոր՝ *Քվանտային մեխանիկայի մասին* և այլն) պետք է բացասական պատասխան տանք: Բացի այդ, հարկ է նկատի ունենալ ֆիզիկական տեսությունների օբյեկտը և բովանդակությունը: Ամեն մի ֆիզիկական տեսություն ուսումնասիրում է ֆիզիկական օբյեկտի տվյալ կողմը՝ կոնկրետ-պատմական ճանաչողական և էքսպերիմենտալ միջոցներով: Հենց դրա համար էլ, ֆիզիկական սպառիչ ու վերջնական գիտելիքների սկզբունքային հնարավորությունը (ռեսպեկտիվ տեսություն) իրականացվում է նման գիտելիք ձեռք բերելու անկարելիությամբ (ռեսպեկտիվ տեսություն)՝ ֆիզիկայի կարգացման յուրաքանչյուր փուլում: Ահա թե ինչու տեսական գիտելիքին չպետք է նայել որպես տվյալ մատերիական բնագավառի մի անփոփոխ ու սպառիչ բանի: Նոր տեսություններ ստեղծելու ժամանակ ֆիզիկական տեսության դրույթները վերագնահատվում են: Նոր տեսությունները հնարավորություն են ընձեռում նոր դիրքերից, ավելի լայն հիմքով նայել առկա ֆիզիկական տեսությանը, կոնկրետացնել դրանք, որը տանում է դեպի նրա կատարելագործումը: Դա հատկապես վերաբերում է ֆիզիկական օրենքներին, որոնք ընկած են տեսության հիմքում: «Սակայն չի կարելի մտածել, որ տեսական ֆիզիկայի օրենքների սիստեմը, որն ստացվել է գիտության կարգացման ինչ-որ որոշակի էտապում, բացարձակ ճշգրիտ է, ավարտուն և ենթակա չէ հետագա ընդհանրացման: Այս օրենքները միայն ոչ

լրիվ, մոտավորապես են արտացոլում օբյեկտիվ իրականությունը, և ոչ միայն կարող են, այլև պետք է ենթարկվեն ճշգրտումների ու ընդհանրացման (տե՛ս 4, էջ 251)։ Դա հանգեցնում է տեսության հասկացության ճշգրտման և կատարելագործման, ինչպես նաև հենց իրեն՝ տեսության ճշգրտման ու կատարելագործման։ Այս ամենը խոսում է տեսության ոչ լրիվության մասին։ Եթե վերլուծենք ֆիզիկական տեսությունների կառուցվածքը, ապա կհանգենք նույն եզրակացության։

Եվ, վերջապես. «հնարավո՞ր է արդյոք, որ ֆիզիկական տեսությունների սիստեմը սպառի ֆիզիկական գիտությունը»։ Հնարավոր չէ, որովհետև ֆիզիկական իրականությունը անսպառելի է, որ ֆիզիկական պրոցեսները ծնում են որակապես նոր երևույթներ։

Ընդհանուր եզրակացություն. ֆիզիկական գիտելիքի (և ընդհանրապես գիտականի) սպառելիության թեզն անճշմարտացի է։ Այն հակասում է ինչպես դիալեկտիկական-մատերիալիստական հիմնական սկզբունքներին, այնպես և մինչև այժմ գիտական պրակտիկայի և արդի գիտական իմացության տենդենցներին։ Իր էությամբ այս թեզը մետաֆիզիկական է և, վերջին հաշվով, ագնոստիկական։

Ժամանակակից գիտության կարգացումը գիտական գիտելիքների, գիտական տեսությունների սպառելիության մասին ոչ մի բնագավառում օրինակներ չի տալիս։ Այլ կերպ հնարավոր չէ, որովհետև գիտությունն իր խոր էությամբ դիալեկտիկական է։ Այն ապացուցում է, որ գիտության մեջ անսովոր, կարմանահրաշ գաղափարների երևան գալու մասին Լենինի կանխատեսումները հաստատվում են։

Մատերիայի՝ ըստ խորքի անսպառելիության մասին լենինյան գաղափարը դրսևորվում է նաև արդի աստղագիտության մեջ, որտեղ այժմ տեղի է ունենում վիթխարի հեղափոխություն։ Արդի աստղագիտությունը, ինչպես Լենինն է կանխատեսել, ծնում է անսպասելի, «տարօրինակ», անսովոր պատկերացումներ։ Աստղագիտության մեջ նկատվում է (այսպես կոչված՝ առողջ ողջախոհության տեսակետից) սովորականից դեպի անսովորը, «տարօրինակը», անհնարինը կատարվող անցում (4, էջ 231)։ Այստեղ նկատի է առնվում տիեզերքում որակապես նոր տիպի օբյեկտների՝ գալակտիկայի ակտիվ միջուկների, քվազարների, տիեզերքում ոչ-ստացիոնար օբյեկտների (ոչ-ստացիոնար խմբեր և գալակտիկաների կուտակում), «ռելեկտիվ» ռադիոճառագայթման հայտնագործումը և այլն (4, էջ 231—253)։ Արդի աստղագիտությունը ստեղծել է անսովոր պատկերացում ընդարձակվող տիեզերքի (մասնավորապես մետագալակտիկայի) մասին և այլն, որոնք օբյեկտիվ իրականության համար ավելի ադեկվատ են, քան սովորականները, նախկինները։ Եվ դա աստղագիտության վերջին խոսքը չէ։ Արդեն հայտնի փաստերը թույլ են տալիս ենթադրել, որ արդի աստղագիտության հիմնական խնդիրները կարող են դառնալ հիմնարար և նրանց լուծումը այս կամ այն ձևով կապված է լինելու ժամանակակից ֆիզիկայի մի շարք կարևոր պատկերացումների արմատական վերանայման հետ։ Արդի աստղագիտության «անակնկալները» կարող են աղբյուր հանդիսանալ նոր, ամենախոր գաղափարների և նույնիսկ հեղափոխության աղբյուր՝ ֆիզիկական գիտելիքների ամբողջ սիստեմում» (4, էջ 255)։

Վ. Ի. Լենինի կանխատեսումները հաղթանակում են արդի գիտության մեջ և ցուցադրում մատերիալիստական դիալեկտիկայի մեթոդոլոգիական դերը, ինչպես նաև մատերիայի ըստ խորքի անսպառելիության անանցողիկ ուժը։

### ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


1) Վ. Ի. Լենին, *Երկեր, 4-րդ հրատարակություն, Երևան, հատոր 14։*
2) **Александров А. Д.**, Пространство и время в современной физике в свете философских идей Ленина, кн. «Ленин и современное естествознание», М., 1969.





3) **Амбарцумян В. А.** и др., Метагалактика и Вселенная, кн. «Структура и формы материи», М., 1967.
4) **Амбарцумян В. А.** и др., Диалектика в современной астрономии, кн. «Ленин и современное естествознание», М., 1969.
5) **Барашенков В. С.** и **Блохинцев Д. И.**, Ленинская идея неисчерпаемости материи в современном физике, кн. «Ленин и современное естествознание», М., 1969.
6) **Берестецкий В. Б.**, Динамические свойства элементарных частиц и теория матрицы рассеяния, Успехи физических наук, т. 76, вып. I, 1962.
7) **Блохинцев Д. И.**, Проблема структуры элементарных частиц, кн. «Философские проблемы физики элементарных частиц, М., 1963.
8) **Бор Н.**, Атомная физика и человеческое познание, М., 1961.
9) **Борн М.**, Физика в жизни моего поколения, М., 1963.
10) **Вижье Ж. П.**, К вопросу о теории поведения индивидуальных микрообъектов, ВФ., 1956/6.
11) «Вопросы философии», 1968/12.
12) **Гейзенберг В.**, Физика и философия, М., 1963.
13) **Гелл-Манн М.**, и др. Сильно взаимодействующие частицы, Успехи физических наук, т. 83, вып. 4, 1964.
14) **Зельманов А. Л.**, О бесконечности материального мира, кн. «Диалектика в науках о неживой природе, М., 1964.
15) **Иванов Б. Н.**, Новая физика, М., 1965.
16) **Ландау Л. Д.**, О законах сохранения при слабых взаимодействиях, ЖЭТФ, т. 32, вып. 2, 1957.
16a **Марков М. А.**, «Вопросы философии», 1960/3.
17) **Овчинников Н. Ф.**, Принципы сохранения и проблема структуры, материи, кн. «Философские проблемы физики элементарных частиц», М., 1964.
18) **Омельяновский М. Э.**, Квантовая физика и превращаемость элементарных частиц, кн. «Философские проблемы физики элементарных частиц». М., 1964.
19) **Саката С.**, Некоторые философские вопросы теории элементарных частиц, кн. «Ленин и современное естествознание, М., 1969.
20) **Саката С.**, Новые представления об элементарных частицах ВФ, 1962/6.
21) **Саркисян С.**, Абсолютный характер руху і його методологічне значения, кн. «Філософські проблеми сучасного природознавства, Науковий сборник Київского, університету, 1968/13.
22) **Сачков Ю. В.**, К оценке значения статистических закономерностей в физике элементарных частиц, кн. «Философские проблемы физике элементарных частиц», М., 1964.
23) **Соколов А. А.**, Развитие учения об элементарных частицах как познание все более глубоких объективных закономерностей микромира, кн. «Философские проблемы физики элементарных частиц», М., 1964.
24) **Терлецкий Я. П.**, Взаимопревращаемость элементарных частиц, кн. «Философские вопросы современной физике», М., 1959.
25) **Фок В. А.**, Об интерпретации квантовой механики кн. «Философские вопросы современной физики», М., 1959.
26) **Эшбн У.**, Введение в кибернетику, М., 1959.
27) «Вопросы философии», 1952/5.
28) **Фейман Р.**, Характер физических законов, М., 1968.
29) **Компанеец А. С.**, Может ли окончиться физическая наука, М., 1967.




# ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԿՈՂՄՆՈՐՈՇՄԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԱԿՏԸ

Մ. Ա. ՄՈՒՐԱԴՅԱՆ

*1917 թվականի մայիսի 4—28-ը Պետրոգրադում կայացած գյուղացիների դեպուտատների համառուսաստանյան առաջին համագումարում բոլշևիկյան կուսակցությունը, բանվորա-գյուղացիական դաշինքը ամրապնդելու համար, սուր և համառ պայքար ծավալեց էսեռական կուսակցության դեմ։ Թեև բոլշևիկները համագումարում կազմում էին 2 տոկոսից ոչ ավելի, այնուամենայնիվ, նրանք կարողացան հասնել զգալի հաջողության։ Բոլշևիկյան փոքրաթիվ ֆրակցիան մեծ ակտիվություն ցուցաբերեց, կարողացավ ներգործել շարքային պատգամավորների քաղաքական տրամադրությունների վրա։ Հմտորեն օգտագործելով համագումարի ամբիոնը, բոլշևիկները բացահայտեցին ժամանակավոր կառավարության հակագյուղացիական քաղաքականությունն ու էսեռական կուսակցության ղեկավարների դավաճանական վարքագիծը։ Բոլշևիկյան ֆրակցիային ղեկավարում էր կուսակցության կենտրոնական կոմիտեն, անձամբ Վ. Ի. Լենինը։ Բոլշևիկներին էր հարում «14 անկուսակցականների խումբը», Մ. Վ. Միխայլովի (Ֆրունզեի) գլխավորությամբ։*

*Ինչ նպատակներ էին հետապնդում համագումարը կազմակերպող սոցիալիստ-հեղափոխականները, իրենց մշակած ծրագրերում։ Նրանք նախատեսել էին գյուղացիական համագումարը, գործադիր կոմիտեն դարձնել հեղափոխական դեմոկրատիայի երկրորդ կենտրոն, վիճարկել հեղափոխական շարժման ղեկավարությունը, բանվորների, զինվորների դեպուտատների սովետի գործադիր կոմիտեի հետ։*

*Բուրժուական ժամանակավոր կառավարությունը, իր հերթին, չէր արգելում հրավիրել գյուղացիական համագումար։ Նա հույս ուներ աջակցություն գտնել գյուղացիական կազմակերպություններում, պայքարել հեղափոխական բանվորների, զինվորների և նավաստիների դեմ, գյուղացիական շարժմանը տալ պառլամենտական, խաղաղ բնույթ, այն հեռու պահել հեղափոխությունից։*

*Ուշագրավ են համագումարին հասցեագրած Լենինի և Պլեխանովի նամակները, որոնք արտահայտում էին միանգամայն տարբեր, իրարամերժ քաղաքական տեսակետներ։ Պլեխանովը կոչ էր անում գյուղացիներին ձեռնպահ մնալ կալվածատիրական հողերը բռնագրավելուց, այդ քայլն անվանելով անարխիա, անկարգություն։ Լենինն առաջարկում էր անհապաղ և անհատույց բռնագրավել կալվածատիրական հողերը։ Վերլուծելով ագրարային շարժումը, Պլեխանովը եկավ այն սխալ եզրակացության, թե կալվածատիրական հողերի բռնագրավման գլխավոր պատճառը գյուղացիության տգիտությունն է։ Հանդես գալով ոչ միայն հողի ազգայնացման, այլև հողի սոցիալիզացիայի դեմ, նա համոզում էր գյուղացիներին «արդար» գներով գնել կալվածատերերի հողերը։ Եթե բռնագրավեն կալվածատիրական հողերը,— ասում էր Պլեխանովը,— կալվածատերերը կաղքատանան։ Ուստի, հարկավոր է վեհանձն լինել, մարդկային վերաբերմունք ցուցաբերել կալվածատերերի նկատմամբ (տե՛ս* М. Гайсинский—борьба большевиков за крестьянство в 1917 г., М. 1933, стр. 76)։

*Արմատական տարբերություն կար Լենինի ու Պլեխանովի հայացքներում նաև առաջին համաշխարհային պատերազմը գնահատելու հարցում։ Եթե Պլեխանովը կանգնած էր «Հայրենիքի պաշտպանության» տեսակետին, ապա Լենինն այն որակեց իմպերիալիստական, ցույց տվեց, որ ցարիզմի տապալմամբ այն չի փոխել իր բնույթը։ «Այս պատերազմը զավթողական է։ Այն մղում են բոլոր երկրների կապիտալիստներն իրենց զավթողական նպատակների համար, իրենց շահույթներն ավելացնելու համար։ Աշխատավոր ժողովրդի համար այս պատերազմը ոչ մի դեպքում, բացի կործանումից, վայրենացումից, ուրիշ ոչինչ չի բերում և չի էլ կարող բերել» (Երկեր, հ. 24, էջ 461)։*

*Լենինը քննադատեց համաձայնողականների՝ էսեռների ու մենշևիկների վնասակար քաղաքականությունը, որոնք խոր ու ճակատագրական սխալ են գործել մտնելով ժամանակավոր կառավարության մեջ։ «Այնպիսի մարդիկ, ինչպես Ծերեթելին ու Չեռնովն են, հույս ունեն կապիտալիստներին դրդելու, որպեսզի նրանք ավելի շուտ ու ավելի ազնիվ կերպով վերջացնեն այս զավթողական պատերազմը» (Նույն տեղը. էջ 462)։ Սակայն «...իրականում նրանք կապիտալիստներին օգնում են պատրաստելու ռուս զորքերի հարձակումը Գերմանիայի դեմ, այսինքն՝ ձգձգելու պատերազմը, ավելացնելու ռուս ժողովրդի կողմից պատերազմին տրված չլսված ծանր զոհաբերությունները» (Նույն տեղը)։*

*Կոալիցիոն ժամանակավոր կառավարությունը, արտահայտելով ռուս կապիտալիստների շահերը, կենսագործում էր իմպերիալիստական քաղաքականություն։ Այս նոր կառավարությունը,— գրում էր Լենինը,— չկամեցավ մինչև իսկ հրապարակել այն կողոպտչական գաղտնի պայմանագրերը, որոնք կնքել էր նախկին ցար Նիկոլայ Ռոմանովը Անգլիայի, Ֆրանսիայի և այլ երկրների կապիտալիստների հետ։ Բանվորների ու գյուղացիների արյունը չպետք է թափվի կապիտալիստների այդ կողոպտչական նպատակների համար, ուստի, հարկավոր է շուտ ավարտել այս ոճրագործ պատերազմը։ Դրա համար կա միայն մեկ ճանապարհ «...ամբողջ պետական իշխանության ամբողջությամբ անցնելը բանվորների, զինվորների ու գյուղացիների դեպուտատների սովետների ձեռքը թե՛ Ռուսաստանում և թե մյուս երկրներում։ Միայն այդպիսի սովետներն են, որ իրականում ի վիճակի են խանգարելու կապիտալիստների կողմից ժողովրդին խաբելը, խանգարելու պատերազմի երկարաձգումը, կապիտալիստների կողմից» (Նույն տեղը, էջ 463)։*

*Լենինի բաց նամակը հսկայական տպավորություն թողեց համագումարի, հատկապես, ռազմաճակատից եկած պատգամավորների վրա։ Անգամ էսեռական աղբյուրներն են խոստովանում Լենինի նամակի հաջողության մասին, մինչդեռ Պլեխանովի դիմումը, էսեռ Բիխովսկու վկայությամբ, պատգամավորները ընդունեցին սառն անտարբերությամբ։*

*Գյուղացիների դեպուտատների համառուսաստանյան առաջին համագումարի նախագահ ընտրվեց էսեռական կուսակցության աչքի ընկնող գործիչ Ավքսենտևը։ Համագումարի դերը բարձրացնելու նպատակով, էսեռական կուսակցության պարագլուխները որոշեցին համագումարի աշխատանքներին մասնակից դարձնել եվրոպական սոցիալիստներին։ Հիշատակենք ֆրանսիական մինիստր «սոցիալիստ» Ալբերտ Թոմային և Բելգիայի ներկայացուցիչ, մինիստր «սոցիալիստ» Վանդերվելդեին։*

*Մինիստր «սոցիալիստներ» Ալբերտ Թոման և Վանդերվելդեն կատարելով իրենց երկրների բուրժուազիայի կամքը և առաջադրանքը, ջանում էին համոզել համագումարի պատգամավորներին՝ շարունակելու իմպերիալիստական պատերազմը։ Նրանք աշխատում էին պաշտպանել էսեռական կուսակցության ագրարային քաղաքականությունը։ Ակնհայտ էր, թե գործնականում, որ դասակարգի շահերն էին արտահայտում ու պաշտպանում «սոցիալիստ» կոչված մինիստրները։ Ֆրանսիական «սոցիալիստ» Ալբերտ Թոման, ֆրանսիական գյուղացիության անունից ողջունելով համագումարի մասնակիցներին, նշեց ֆրանսիական մեծ հեղափոխության տարիներին Ֆրանսիայի աշխատավոր գյուղացիության խաղացած խոշոր դերի մասին և վստահություն հայտնեց, որ Ռուսաստանի աշխատավոր գյուղացիությունը նույնպես բարձր կպահի ռուսական հեղափոխության դրոշը։ Ընդ որում նա չմոռացավ նշել, որ անարխիան (կարդա-բոլշևիզմը— Մ. Մ.) միապետության վերականգնման լավագույն երաշխիքն է։ Բուրժուական և մանրբուրժուական գաղափարախոսները ձգնում էին անապացույց հաստատել, որ բոլշևիկյան կուսակցության պահանջները կարող են երկիրը հասցնել լիակատար կործանման։*

*«Հերոսական» Բելգիայի ներկայացուցիչը, ինչպես ներկայացնում է Վանդերվելդեին համագումարի նախագահը, զարգացնելով պատերազմը շարունակելու տեսակետը, իր ճառն ավարտում է հետևյալ բառերով. «Մեծ Ռուսաստան, օգնության հասիր փոքրիկ Բելգիային» (տե՛ս* М. Гайсинский. Борьба большевиков за крестьянство в 1917 г. М., 1933, стр. 52—53)։

*Համագումարը քննարկեց Ռուսաստանի աշխատավորությանը հուզող՝ ընթացիկ մոմենտի, ժամանակավոր կառավարության, պատերազմի, ագրարային և այլ հարցեր։*

*Կոալիցիոն կառավարության հարցը քննարկելիս ի հայտ եկավ շարքային պատգամավորների քաղաքական հայացքների լիակատար սնանկությունը։ Օգտվելով այդ առիթից, էսեռական կուսակցության առաջնորդները կարողացան նրանց վզին փաթաթել այնպիսի բա-*

1917 թվականի ապրիլյան կոնֆերանսի որոշումները։

Լենինի ելույթը և առաջարկած ագրարային բանաձևի նախագիծը մեծ տպավորություն գործեց համագումարի մասնակիցների վրա։ Բոլշևիկ Կուշկինը պատմում էր, որ Լենինի ելույթը պատգամավորները լսեցին մեծ ուշադրությամբ։ Երբ նա ավարտեց իր ելույթը, դահլիճում լսվեցին բուռն ու երկարատև ծափահարություններ։ Համագումարի պատգամավորները՝ գյուղացիները և զինվորները նշում էին, որ իրենք գոհ են մնացել Լենինի ելույթից։

Օգտվելով առիթից, որ Լենինը, որպես ոչ պաշտոնական զեկուցող, զրկված էր եզրափակիչ խոսքից, Դիբրևը և էսեռական մյուս ընդդիմախոսները Լենինի նկատմամբ անվստահության մթնոլորտ ստեղծելու նպատակով ուղղակի խեղաթյուրում էին նրա զեկուցման բովանդակությունը։ Ինչ խոսք, միանգամայն հասկանալի էր, որ այդպիսի ատրիբուտներով էսեռական առաջնորդները չէին կարող փոխել պատգամավորների տրամադրությունը։ Այդ է վկայում մայիսի 23-ին, այսինքն՝ Լենինի ելույթի հաջորդ օրը, էսեռական առաջնորդների զեկուցման ժամանակ տեղի ունեցած ուշագրավ միջադեպը։ Այդ օրը պատգամավորները նիստերի դահլիճ էին բերել մի մեծ դրոշ, հետևյալ գրությամբ. «Պահանջում ենք ամբողջ հողը անհապաղ հայտարարել համաժողովրդական սեփականություն»։ Նրանց զեկուցման ժամանակ դրոշը պատգամավորների բուռն ծափահարության տակ անսպասելիորեն երևաց բեմի վրա, զեկուցողի ուղիղ թիկունքում։ Այս ուշագրավ միջադեպը յուրատեսակ մի բողոք էր, էսեռների համաձայնողական զեկուցման դեմ։

Այսպիսի պայմաններում համագումարի նախագահության նախօրոք մշակած բանաձևի համար լուրջ վտանգ ստեղծվեց։ Բոլորին պարզ էր, որ համաձայնողական բանաձևը կտապալվի և խայտառակ վախճան կունենա։ Դրան հակառակ ուժեղանում էր բոլշևիկների հեղինակությունը։ Համագումարի ղեկավարությունը հասկանում էր, որ բոլշևիկյան բանաձևի ընդունումը կնշանակեր համաձայնողական քաղաքականության տապալում, գյուղացիության շրջանում ունեցած ազդեցության կորուստ, կառավարության նոր ճգնաժամ։ Բոլշևիկյան բանաձևի ընդունմամբ կձախողվեր ռազմաճակատում նախապատրաստվող հարձակումը։ Համագումարի էսեռական ղեկավարությունը ստիպված էր վերանայել իր ագրարային բանաձևը և լուրջ զիջումներ կատարել համագումարի պատգամավորներին։

Համագումարում ընդունված ագրարային նոր բանաձևը պահանջում էր համաժողովրդական սեփականություն դարձնել բոլոր պետական, վանքապատկան, եկեղեցապատկան և մասնատիրական հողերը։ Բանաձևում նշվում էր, որ առանց բացառության բոլոր հողերն անցնում են հողային կոմիտեների տնօրինմանը։

Բոլշևիկյան ֆրակցիայի և «14 անկուսակցականների» խմբի անդամները թեև աշխատում էին ծանր պայմաններում, այնուամենայնիվ, կարողացան մասսայականացնել բոլշևիկյան կուսակցության լոզունգները և ագրարային քաղաքականությունը։ Հետևաբար, գյուղացիների դեպուտատների առաջին համառուսաստանյան համագումարը բոլշևիկյան կուսակցության համար ունեցավ խոշոր քաղաքական նշանակություն։ Բոլշևիկյան ֆրակցիան և Լենինը շարքային պատգամավորների ուշադրությունը կենտրոնացնում էին ագրարային հարցի կարևորագույն կողմերի վրա, օգնում նրանց ճիշտ ըմբռնելու Ռուսաստանի մյուս քաղաքական կուսակցությունների ագրարային քաղաքականությունը։ Համագումարում Լենինի առաջադրած ագրարային պահանջներն աշխատավոր գյուղացիությանը համախմբեցին պրոլետարիատի շուրջը և ամրապնդեցին բանվորա-գյուղացիական դաշինքը։

Ճիշտ է, էսեռները համագումարում հաղթեցին, բայց այդ միայն ձևական հաղթանակ էր։ Պատմությունը չարախնդորեն ծաղրեց «հաղթողներին», որովհետև էսեռների նմանօրինակ հաղթանակը պյուռոսյան հաղթանակ էր։ Համագումարից հետո գյուղում դասակարգային պայքարը էլ ավելի սրվեց, գյուղացիական շարժումը դարձավ առավել կազմակերպված ու նպատակասլաց։ Եվ պատահական չէ, որ գյուղացիների դեպուտատների առաջին համառուսաստանյան համագումարից հետո Ռուսաստանի տարբեր նահանգներից ժամանակավոր կառավարության կոմիսարների ուղարկած զեկուցագրերում նշվում են գյուղում սկսված «քաոսի», այսինքն՝ կալվածատիրական հողերի և գույքի բռնագրավումների մասին։ Գյուղացիության պայքարը գլխավորում էին վոլոստային հողային կոմիտեները։

Ավքսենտևյան կենտրոնական գործադիր կոմիտեին շրջանցելով, աշխատավոր գյուղացիները իրականացնում էին բոլշևիկների ծրագրած խնդիրները։ Գյուղացիների դեպուտատների առաջին համառուսաստանյան համագումարից հետո սկիզբ է դրվում գյուղացիության բոլշևիկացման պրոցեսին, որը լրիվին ավարտում է Կոռնիլովի դավադրությունը ջախջախելուց հետո։ Համագումարից մի քանի ամիս անց, չքավոր գյուղացիությունը դաշնակցեց պրոլետարիատի հետ և նրա ղեկավարությամբ Ռուսաստանում հաստատեց առաջին բանվորա-գյուղացիական սոցիալիստական պետությունը։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԳՈՐԾՆԱԿԱՆ ՈՐՈՆՈՒՄՆԵՐ

Բ. Ա. ԳՅՈՋԱԼՅԱՆ

ՀԿԿ Թումանյանի շրջկոմի առաջին քարտուղար

Կուսակցության Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումից հետո տնտեսական ռեֆորմի իրագործումը մեզ համար դարձավ հանապազօրյա խնդիր։ Ջգտում ենք հասնել այն բանին, որ յուրաքանչյուր աշխատող ոչ միայն պատկերացում ունենա պլանավորման և տնտեսական խթանման սկզբունքների մասին, այլև խորապես ըմբռնի ժողովրդական տնտեսության ղեկավարման նոր սիստեմի առավելություններն ու էությունը, սովորի գործել արդյունավետ։ Դրա համար անհրաժեշտ էր տևական մասսայական-դաստիարակչական աշխատանք ծավալել բոլոր կոլեկտիվներում ու արտադրամասերում։

Մեզ համար կարևոր նշանակություն ստացավ կադրերի տնտեսագիտական ուսուցումը։ Դեռևս տնտեսական ռեֆորմի իրականացման առաջին քայլերն անելիս կուսշրջկոմին կից ստեղծեցինք տնտեսագիտական դասընթաց, որում ընդգրկվեցին ձեռնարկությունների, կառույցների և տրանսպորտի ղեկավարներն ու գլխավոր մասնագետները։ Դասախոսություններ կարդալու համար հրավիրվում էին նաև հանրապետության կարող ուժեր։ Պարապմունքների ընթացքը ցույց տվեց, որ մեր կադրերը մեծ հետաքրքրասիրություն են հանդես բերում տնտեսագիտական գիտելիքների նկատմամբ և խորությամբ են յուրացնում դրանք։ Դասախոսությունները զուգակցվում էին շրջանի ձեռնարկությունների առջև դրված՝ տնտեսական ռեֆորմի իրագործման հետ սերտորեն առնչվող կոնկրետ խնդիրներին։

Կադրերի տնտեսագիտական ուսուցման լայն ցանց ստեղծվեց նաև շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում։ Մարդիկ չթուլացող ջանասիրությամբ ուսումնասիրում էին պլանավորման, արտադրության կազմակերպման, նյութական խթանման և մյուս հարցերը, դրանց լուծման ձևերն ու մեթոդները։ Այսպես, պղնձաքիմիական կոմբինատի կուսկոմիտեն կազմակերպեց հասարակական հիմունքներով գործող տնտեսագիտական երկամյա համալսարան և հերթափոխությունների վարպետների միամյա դպրոց։ Դրանցում ընդգրկվեցին ձեռնարկության ինժեներա-տեխնիկական աշխատողները և առաջատար մասնագիտության մարդիկ։

Համալսարանում քննարկվում և ուսումնասիրվում են յուրաքանչյուր արտադրամասի և բաժանմունքի էկոնոմիկայի կոնկրետ հարցերը։ «Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմը և նրա առավելությունները», «Արտադրության ներքին ռեզերվների հայտնաբերումը և օգտագործումը», «Հումքի և նյութերի խնայողաբար օգտագործման ուղիները կոմբինատում» և այլ թեմաների ուսումնասիրման ժամանակ ծավալվեց կարծիքների անկաշկանդ փոխանակություն, մարդիկ հանդես եկան խելացի առաջարկություններով։

Կուսկոմիտեի նախաձեռնությամբ կոմբինատում հրավիրվել են տեխնիկա-տնտեսական կոնֆերանսներ, որոնցում հանգամանորեն ուսումնասիրվել են հիմնական և օժանդակ արտադրամասերի գործողությունը՝ կապված տնտհաշվարկի արմատավորման, խնայողության ռեժիմի կիրառման ու աշխատանքի գիտական կազմակերպման հետ։

Կադրերին տնտեսագիտական գիտելիքներով զինելը դեռ գործի սկիզբն էր։ Անհրաժեշտ էր սովորածը գործադրել կյանքում, բազմակողմանի նախապատրաստությունից հետո ձեռնարկությունները փոխադրել նոր սիստեմով աշխատանքի և ապահովել տնտեսական ռեֆորմի անշեղ կենսագործումը։ Հիմնականում դրա վրա էլ բևեռվեց կուսշրջկոմի և արտադրական ձեռնարկությունների ուշադրությունը։

Ախթալայի հանքերի կոլեկտիվը շրջանում առաջիններից մեկն էր, որ անցավ պլանավորման և տնտեսական խթանման սիստեմին։ Հանքերի կուսկոմիտեն ընդլայնված նիստում քննարկեց այդ հարցը, կշռադատեց հնարավորությունները, մշակեց ռեֆորմն արմատավորելու աստիճանական ծրագիր և ողջ կոլեկտիվին մոբիլիզացրեց այն կենսագործելու համար։

Անցած երկու տարվա գոհացուցիչ արդյունքները վառ վկայությունն են այն բանի, որ նորը, պրոգրեսիվը, հաղթահարելով իր առաջընթացի ճանապարհին ծագած դժվարությունները, կյանքի ուղեգիր է նվաճել։ Աշխատանքի արտադրողականությունը երկու տարում բարձրացել է 28,7 տոկոսով։ Դա լույս նվաճում է, որը ձեռք է բերվել տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, նոր տեխնիկայի ներդրման, աշխատատար պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման շնորհիվ։ Արտադրության ծավալի մեծացմանը զուգընթաց և աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով վերջին տարում 57,6 տոկոսով ավելացավ հանքաքարի արդյունահանումը։

Կուսկոմիտեին խիստ հետաքրքրում էր մեքենաների ու սարքավորումների օգտագործման վիճակը։ Ուսումնասիրելով այդ հարցը՝ կուսկոմիտեն բացահայտեց, որ հանքերի տերիտորիայում կա բավականաչափ թանկարժեք տեխնիկա, որը, սակայն, հարկավոր չէ տնտեսությանը։ Առաքման բաժնի առջև խնդիր դրվեց իրացնել դրանք։ 1968—1969 թթ. երկրի նույնատիպ ձեռնարկություններին ուղարկվեցին 102 հազար ռուբլու արժողությամբ մեքենաներ և սարքավորումներ։

Դա հիմնական արտադրաֆոնդերի ակտիվ մասի արդյունավետ օգտագործման և ֆոնդահատույցի բարձրացման կարևոր միջոցառում էր։ Այդ և ուրիշ միջոցառումների իրագործումը նոր պայմաններում հնարավորություն ընձեռեցին 38 տոկոսով մեծացնել տնտեսական խթանման ֆոնդերը, խոշոր չափերի հասնող մասհանումներ կատարել կոլեկտիվի նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական պահանջմունքների բավարարման, բնակարանային շինարարության, ինչպես նաև արտադրության հետագա զարգացման համար։ 1967 թ. համեմատությամբ անցած տարի այդ մասհանումները համապատասխանաբար աճեցին 75 և 110 տոկոսով։

Հիմնական ֆոնդերի վաճառքից գոյացած զգալի միջոցներ հատկացվում են արտադրության զարգացմանը։ Դա օգնում է գիտա-տեխնիկական առաջադիմության արագացման հետ կապված ծախսերի ֆինանսավորմանն ու արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Առաջներում ձեռնարկությունն այդպիսի հնարավորություններ չուներ, և իրացումից գոյացած միջոցները հիմնականում կենտրոնացված կարգով հատկացվում էին կապիտալ շինարարությանը։ Այժմ հանքերը հնարավորություն ունեն տնօրինել ամորտիզացիոն մասհանումների 59,8, կապիտալ ներդրումների 94 և հիմնական ֆոնդերի լրիվ վերականգնման 40 տոկոսը, դրանք ուղղել արտադրության ընդլայնմանը։ Իսկ մնացած մասը մնում է պետական բանկում և տնօրինվում պետության կողմից։

Ձեռնարկության տնտեսական հաջողությունը շատ բանով կախված է նաև սեփական շրջանառու միջոցները խելացիորեն օգտագործելուց։ Ախթալայի հանքերի կուսկազմակերպության ձեռնարկած միջոցների շնորհիվ 1969 թ. և 1970 թ. առաջին ութ ամիսների ընթացքում զգալի չափով պակասել են ապրանքանյութական արժեքների գերնորմատիվային մնացորդները, իսկ շրջանառու միջոցների շրջապտույտը արագացել է 2,4 օրով։

Հանքերի համար առաջնակարգ նշանակություն ունի հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման բարելավումը։ 1970 թ. առաջին կիսամյակում այն կազմում է 97,1 տոկոս, որը Միության գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների մեջ երկրորդ ցուցանիշն է։

Հաշվի առնելով արտադրության տեխնիկայի, տեխնոլոգիայի բարելավման, աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի կողմից ձեռնարկություններին ներկայացված պահանջները՝ ձգտում ենք մոդերնիզացնել արտադրաֆոնդերը։ Սակայն այս պահանջը դեռևս անբավարար է կատարվում և՛ Ախթալայի հանքերում, և՛ պղնձաքիմիական կոմբինատում։ Շինարարների մեղքով այդ երկու ձեռնարկություններում չեն տեղադրվել մի շարք կարևոր սարքավորումներ։ Այդ պատճառով միայն 1970 թ. առաջին եռամսյակում Ախթալայի հանքերում չեն արմատավորվել 240 հազար ռուբլու հիմնական միջոցներ, որոնց հետևանքով ձեռնարկությունը զրկվել է 10.400 ռուբլու շահույթից։

Անշուշտ, պլանավորման նոր սիստեմը որոշակի դեր է խաղացել հանքերի ֆինանսական վիճակը բարելավելու գործում, ձեռնարկության դիրեկցիային հնարավորություն տվել՝ ինքնուրույն լուծելու պլանավորման և միջոցների ծախսման, խրախուսման ֆոնդերին կատարվող մասհանումների հարցերը։

Յուրացնելով բլանֆիքսի արտադրամասի լրիվ կարողությունը՝ ձեռնարկությունը հնարավորություն կստանա արդեն գալիք հնգամյակում լիովին հրաժարվել պետության կողմից նախատեսվող վնասներից։ Իսկ այդ նշանակում է, որ տնտեսական հաշվարկը կարմատավորվի հանքերի արտադրամասերում և յուրաքանչյուր աշխատանքային տեղամասում։

Տնտեսական նոր պայմաններում արտադրական վերելք է ապրում Թումանյանի հրակայուն նյութերի գործարանը։ Այդ ձեռնարկությունը 1969 թվականին երկրին պլանից դուրս տվեց 596 տոննա հրակայուն աղյուս, 377 տոննա մերտել և նուրբ փոշիներ, իսկ արտադրանքի իրացման պլանը կատարեց 109,6 տոկոսով։ Նկատի ունենալով ձեռնարկությանը տրված ինքնուրույնու-

*թյան մեծացումը՝ կուսկազմակերպությունը, ելնելով թողարկվող արտադրանքի հանդեպ օրավուր աճող պահանջներից, դիրեկցիայի առջև հարց բարձրացրեց գործարանում ստեղծելու առաքման բաժին։ Այդ հարցը լուծվեց դրականորեն և մեծ չափով նպաստեց արտադրանքի իրացման բարելավմանը։*

*Գործարանի կուսկազմակերպությունն ամբողջ կոլեկտիվի և, առանձնապես, կոմունիստների ուշադրությունը բևեռեց չօգտագործված հնարավորությունների գործադրմամբ արտադրանքի ծավալը մեծացնելու և նոր տեսակներ թողարկելու վրա։ Անցած տարի յուրացվեց եռաշերտ հրակայուն ծայրապանակների արտադրությունը, որը լավ ընդունելություն գտավ երկրի մետալուրգների մոտ։ Արտադրանքի նոր տեսակը յուրակերպ պատյան է և այժմ լայնորեն կիրառվում է մետալուրգիական արդյունաբերության մեջ՝ հնոցների ջերմաչափերը պաշտպանելու համար։ Եռաշերտ ծայրապանակների մեծաքանակ պատվեր ստացվեց Մագնիտոգորսկի, Կրիվոյ-Ռոգի, Չերեպովեցի մետալուրգիական գործարաններից։ Այս տարի ստացվել է 70 հազար ծայրապանակի պատվեր, սակայն կարտադրվի 100 հազար հատ։ Արտադրանքի նոր տեսակների արտադրությունը յուրացնելու գործում ակտիվ դեր են խաղում կոմունիստներ Գ. Էվոյանը, Ն. Եղինյանը, Ս. Մայիլյանը և շատ ուրիշներ։*

*Գործարանի ինժեներա-տեխնիկական անձնակազմի որոնումների արդյունքը եղավ նոր տիպի աղյուսի ստացումը, որը պատրաստվում է երկրորդ տեսակի հանքաքարի և բենտոնիտ կոչվող կավի խառնուրդից։ Մաքուր օքսիդների արտադրամասում կառուցվել և շահագործման է հանձնվել կրկնակի հզորությամբ նոր վառարան, շուտով կավարտվի գազիֆիկացումը, որով և բնական գազը կփոխարինի կոքսին։ Միայն դրանից գործարանը տարեկան կտնտեսի 150 հազար ռուբլի։*

*Տնտեսական ռեֆորմի իրագործումը գործարանում նշանավորվեց նրանով, որ ձեռնարկությունը դարձավ շահութաբեր։ 1969 թ. օգուտների պլանը կատարվեց 149 տոկոսով։ Դրանից կատարվող համապատասխան մասհանումների հաշվին կառուցվելու են 140 տեղանոց մանկապարտեզի և 950 աշակերտի համար՝ դպրոցի շենքեր։ Վերջինիս շինարարությունն արդեն սկսված է։*

*Պլանավորման և տնտեսական խթանման սիստեմը նշանակալից հաջողություններ է բերել պղնձաքիմիական կոմբինատի ձուլողներին ու քիմիագործներին։ Նրանք բարձր բնագծեր նվաճեցին պղնձի և պղնձարջասպի արտադրության գործում։*

*Ուսումնասիրելով ձեռնարկության ֆինանսական միջոցների կառուցվածքը՝ կոմբինատի կուսկազմակերպությունն ու դիրեկցիան պարզեցին, որ նոր սիստեմի պայմաններում առաջ են եկել ներքին նոր ռեզերվներ։ Դա արդյունք էր այն բանի, որ արտադրանքի իրացումից ստացվող գումարները՝ շահույթը, ավելի երկար ժամկետով են մնում ձեռնարկության տրամադրության տակ, քան նախկինում։*

*Գաղտնիք չէ, որ պլանավորման նախկին սիստեմի պայմաններում կոմբինատի ղեկավարությունը, ռեզերվներ որոնելու և գերնորմատիվային շրջանառու միջոցները կրճատելու փոխարեն, հաճախ ձգտում էր պետությունից ստանալ որքան կարելի է շատ միջոցներ, որովհետև դրանց կրճատումը ոչնչով չէր խթանվում։ Ներկայումս կոլեկտիվը շահագրգռվածություն է հանդես բերում հիմնական ֆոնդերի ու շրջանառու միջոցների ռացիոնալ օգտագործման ասպարեզում։ Կուսկոմիտեի հանձնարարությամբ կոմբինատի տնտեսագետները լուրջ հաշվարկներ կատարեցին։ Նրանք գտան, որ, եթե ձեռնարկությունում*



*մեծացվի հիմնական արտադրաֆոնդերի ակտիվ մասի՝ սարքավորումների և մեքենաների, հատուցումը մեկ տոկոսի չափով, կարելի կլինի լրացուցիչ ստանալ մի քանի միլիոն ռուբլու արտադրանք։ Մինչդեռ ֆոնդահատույցը կոմբինատում ավելի դանդաղ էր աճում։ Մինչև պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելը կոմբինատի արտադրամասերը և օժանդակ տնտեսությունները նյութերն ստանում և օգտագործում էին առանց հաշվարկի։ Կուսկոմիտեն 1969 թ. մայիսին քննարկեց «Տնտհաշվարկի և խնայողության ռեժիմի կիրառումը կոմբինատում» հարցը և պլանբաժնի ու գլխավոր տնտեսագետի առջև խնդիր դրեց բարձրացնել ինչպես արտադրամասերի, այնպես էլ բաժինների կոմունիստների պատասխանատվությունը խնայողության խստագույն ռեժիմ կիրառելու նկատմամբ։ Շուտով բոլոր տեսակի նյութերը լիմիտավորվեցին և տեխնիկապես հիմնավորված հաշվարկների միջոցով 7—8 տոկոսով կրճատվեց դրանց բացթողումը։*

*Կոմբինատի կուսկոմիտեի հանձնարարությամբ դիրեկցիան անցած տարի ձեռնամուխ եղավ ձեռնարկությունում կուտակված 940 հազար ռուբլու չտեղակայված սարքավորումների մնացուկների կրճատմանը, ավելորդ սարքերի ու մեքենաների իրացմանը։ Այլ կազմակերպությունների վաճառվեցին 142 հազար ռուբլու օգտագործելի սարքավորումներ։ Բացի այդ, հատուկ ուշադրություն է նվիրվում նոր կարողությունների շահագործմանն ու յուրացմանը, որի շնորհիվ լրացուցիչ գործարկվեցին 160 հազար ռուբլու երկար տարիներ չտեղակայված սարքավորումներ։ Մնացած 638 հազար ռուբլու սարքավորումները պետք է տեղակայվեն վերակառուցվող արտադրամասերում։ Նախատեսված է, օրինակ, առաջիկայում պղնձի ռաֆինացման արտադրամասի առաջին և երկրորդ հերթերում տեղակայել 310, ծծմբաթթվի արտադրամասի չորրորդ հերթում՝ 214, վայերբարսային բաժանմունքում՝ 70, ջերմակաթսայատանը՝ 44 հազար ռուբլու սարքավորում։*

*Այդ և կարևոր մի շարք այլ միջոցառումների շնորհիվ աճեցին շահույթները։ 1969 թ. կոմբինատում դրանց ստացման պլանը գերակատարվեց 82 հազար ռուբլով։ Շահույթի աճը հնարավորություն տվեց խոշոր գումարներ հատկացնել խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության և արտադրության զարգացման ֆոնդերին։ 1969 թվականին պլանային (7 միլիոն 250 հազար ռուբլի) և գերպլանային (55 հազար ռուբլի) շահույթներից գոյացած 384 հազար ռուբլու նյութական խրախուսման ֆոնդից 90 հազարը, որպես պարգև-հավելում (13-րդ աշխատավարձ), տնտեսական տարվա արդյունքների համար, ըստ աշխատանքային ստաժի և արտադրական ծառայությունների, մինչև տարիֆային դրույքի 75 տոկոսի չափով, վճարվեց բանվոր-ծառայողներին, մի բան, որ նախկինում երբեք չի եղել։*

*Պլանավորման և տնտեսական խթանման սիստեմի կիրառմամբ գոհացուցիչ արդյունքների են հասել հացի ու գարեջրի գործարանների կոլեկտիվները։ Զգալի չափով ավելացել են նրանց շահույթները։*

*Տնտեսական ռեֆորմի իրականացման ճանապարհին Թումանյանի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները, կուսկազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ, վճռական քայլեր են կատարել։ Դա վկայում է, որ տնտեսական ռեֆորմի արմատավորումը հաջողություն կարող է ունենալ միայն այնտեղ, որտեղ կուսկազմակերպությունն ակտիվորեն մասնակցում է այդ գործին, այն համարում է իր գործունեության անկապտելի մասը։*

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները պարբերաբար անդրադառնում են պլանավորման և տնտեսական խթանման սիստեմի արմատավորման հարցերին, ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի և ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների լույսի տակ, ուղղություն ցույց տալիս ձեռնարկությունների ղեկավարության գործունեությանը։ Այսպես, երբ գարեջրի գործարանն անցավ պլանավորման ու տնտեսական խթանման սիստեմին, կուսշրջկոմի բյուրոյի նիստում լսեցինք ձեռնարկության դիրեկտոր Լ. Գալստյանի հաղորդումը ռեֆորմի իրականացման ընթացքի մասին։ Այնուհետև շրջանային «Լոռի» թերթում հրապարակվեց գարեջրագործների փորձը։ Կուսշրջկոմը խորհուրդ տվեց արդյունաբերական ձեռնարկությունների դիրեկտորներին ու կուսկազմակերպություններին ուսումնասիրել և օգտագործել գարեջրի գործարանի փորձը տնտեսավարման նոր խնդիրները լուծելու գործում։

Վերջերս կուսշրջկոմի բյուրոյի նիստում գործարար խոսակցություն եղավ տնտեսական ռեֆորմի իրականացման վերաբերյալ Ախթալայի հանքերի դիրեկցիայի հաշվետվության շուրջը։ Կատարված դրական աշխատանքի հետ միասին բյուրոն լուրջ թերություններ բացահայտեց ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշումների իրականացման գործում։ Հանքերում լրիվ չափով չէին օգտագործվում արտադրական կարողությունները, ձգձգվում էին բլանֆիքսի արտադրամասի շինարարական-մոնտաժային աշխատանքները։ Չնայած որ տարեցտարի նվազում են պետությունից ստացվող լրավճարային գումարները (1967 թ. 183 հազար, 1969 թ. 133 հազար ռուբլի), այնուամենայնիվ դիրեկցիան, կուսկոմիտեն կտրուկ միջոցներ չեն ձեռնարկել պետությունից ստացվող լրավճարից վերջնականապես հրաժարվելու համար։ Հանքերի տերիտորիայում կուտակվել էին 109 հազար ռուբլու ռեզերվային և արտադրության համար ոչ պիտանի սարքավորումներ, ցածր էր հիմնական միջոցների օգտագործման գործակիցը, ֆոնդահատուցումը և այլն։

Կուսշրջկոմի բյուրոն հանքերի դիրեկցիայի, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1969 թ.) պլենումի կողմից առաջադրված խնդիրներին, հատկապես աշխատանքի գիտական կազմակերպման, արտադրական կարողությունների արդյունավետ և լիարժեք օգտագործման, խնայողության խստագույն ռեժիմի կիրառման, ինչպես նաև հանքափոր բանվորների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու հարցերի վրա։ Միաժամանակ հանձնարարվեց «Ախթալշին» տրեստի ղեկավարներին արագացնել բլանֆիքս արտադրամասի շինարարական-մոնտաժային աշխատանքները։

Հանքերի կուսկազմակերպությունը վճռական միջոցներ ձեռնարկեց կուսշրջկոմի բյուրոյի որոշումը կենսագործելու համար, արագացրեց տնտեսությանը ոչ պիտանի սարքավորումների իրացումը։ Դրանից գոյացած 58.792 ռուբլին հատկացվեց հանքերին անհրաժեշտ մեքենաների ու ագրեգատների ձեռք բերմանը և արտադրության զարգացմանը։ Ամենուրեք՝ հանքահարստացուցիչ ֆաբրիկայում, հանքերում ուժեղացվեց պայքարը նյութերի խնայողության համար։ Ֆլոտատորներն ու հանքափորները պայքար ծավալեցին «Հավասարվել առաջավորներին» նշանաբանով։ Զգալիորեն ավելացավ հանքաքարի հանույթը, բարելավվեցին արտադրության գլխավոր տեսակների քանակական և որակական ցուցանիշները, բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։

ՍՄԿԿ XXIII համագումարը կուսկազմակերպություններից պահանջեց ճշտորեն կիրառել կուսակցության մշակած տնտեսական քաղաքականության



սկզբունքները, ուժեղացնել ձեռնարկության ղեկավարման գործում տնտեսական մեթոդների դերը, արմատապես բարելավել պլանավորումը, ընդլայնել ձեռնարկությունների կոլեկտիվների ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը, բարձրացնել նրանց նյութական շահագրգռվածությունն իրենց գործունեության արդյունքներով։

Այս խնդիրների լուծման տեսանկյունից գնահատելով կուսկազմակերպությունների և ձեռնարկությունների գործունեության արդյունքները և բացահայտելով թերությունները՝ մենք ձգտում ենք հետագայում ևս կատարելագործել արդյունաբերության կուսակցական ղեկավարման ձևերն ու մեթոդները, հասնել այն բանին, որպեսզի սկզբնական կուսկազմակերպությունները մշտապես գտնվեն ստեղծագործական որոնումների մեջ, տնտեսական ռեֆորմի իրականացումը համարեն իրենց ամենօրյա կենսական գործը։

Թումանյանի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները, շինարարական ու տրանսպորտային կազմակերպությունները, իրականացնելով պլանավորման ու տնտեսական խթանման ռեֆորմը, հաջողությամբ եզրափակեցին հնգամյակը, աշխատանքային լավ գործերով են դիմավորում ՍՄԿԿ XXIV և Հայաստանի կոմկուսի XXV համագումարները։ Նախորդ համագումարներից հետո շրջանում գործարկվել է 11 արտադրական օբյեկտ և արտադրամաս կամ արտադրական կարողությունները մեծացել են 2,2 անգամ։ Այժմ մեզ մոտ 9,5 անգամ ավելի հանքաքար է արդյունահանվում, քան 1965 թ.։ Անցած տարի Ալավերդում ծնունդ առավ անջրանցիկ թիկնոցների գործարանը՝ տարեկան 91 միլ. ռուբլու արտադրական կարողությամբ։ Խոշոր նվաճում էր պղնձաձուլական կոմբինատում պղնձի էլեկտրաձուլման և արտացոլիչ նոր, հզոր վառարանների գործարկումը հնգամյակի եզրափակիչ տարում։

Անտարակույս, ՍՄԿԿ և Հայաստանի կոմկուսի առաջիկա համագումարները կմշակեն մեր ժողովրդական տնտեսության հետագա զարգացման և այդ ասպարեզում կուսկազմակերպությունների խնդիրները։ Առաջիկա հնգամյակը նոր առաջընթաց քայլ կլինի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ամրապնդման ճանապարհին։ Այդ գործում արժանի ներդրում կունենան նաև Թումանյանի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները։ Նոր հնգամյակում նրանց արտադրանքի ծավալը կմեծանա ավելի քան 60 տոկոսով, կգործարկվեն նոր ձեռնարկություններ և արտադրական կարողություններ։

Շրջանի կուսկազմակերպությունները կմոբիլիզացնեն աշխատավորների ուժերը՝ կուսակցության առաջադրած նոր խնդիրները պատվով լուծելու, տնտեսական ռեֆորմը հետևողականորեն իրականացնելու համար։ Այդ նպատակն էր հետապնդում նաև կուսշրջկոմի վերջերս տեղի ունեցած պլենումը, որը քննարկեց «ՍՄԿԿ XXIV համագումարի պատվին ծավալած սոցիալիստական մրցության կատարման ընթացքը»։



# ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Հ. Ս. ՄԻՍԱԿՅԱՆ

Աբովյանի շրջանի Ջրվեժի «Արդկապ» գործարանի
կուսբյուրոյի քարտուղար

Քաղաքական-մասսայական աշխատանքը կուսակցությունը դիտում է որ-
պես սովետական մարդկանց դաստիարակության կարևոր միջոց, կոմունիս-
տական շինարարության հետագա հաջողությունների գլխավոր պայմաններից
մեկը։ Անդրադառնալով կուսկազմակերպությունների գործունեության այդ
բնագավառին՝ ՍՄԿԿ XXIII համագումարը նրանցից որոշակիորեն պահանջեց.
«Խոր և մատչելի ձևով պարզաբանել կուսակցության քաղաքականությունը,
չխուսափել սուր պրոբլեմներից, զգայուն լինել ժողովրդական զանգվածների
պահանջների և հոգևոր պահանջմունքների նկատմամբ, հաշվի առնել սովե-
տական մարդկանց աճած կուլտուրական և կրթական մակարդակը։ Քաղաքա-
կան ամբողջ ագիտացիան պետք է կառուցվի այնպես, որ բնակչությանը լայ-
նորեն ու սիստեմատիկ կերպով տեղեկություն տրվի երկրի քաղաքական, տըն-
տեսական, կուլտուրական կյանքի և միջազգային դրության մասին» (ՍՄԿԿ
XXIII համագումարի նյութերը, էջ 315)։

Աբովյանի շրջանի Ջրվեժի կապի սարքավորումների գործարանի սկըզբ-
նական կուսկազմակերպությունն ու նրա բյուրոն քաղաքական-մասսայական
աշխատանքը վերակառուցել են այդ պահանջներին համապատասխան։ Մեր
ագիտատորներն ու քաղինֆորմատորներն աշխատում են անմիջապես մասսա-
ների հետ, այնտեղ, ուր որոշվում է առաջադրված խնդիրների լուծման բախ-
տը։ Բանվորներն ու բանվորուհիները հավատում են իրենց ագիտատոր ընկե-
րոջ խոսքին, ոգևորվում նրանով։ Ահա թե ինչու յուրաքանչյուր կոնկրետ խնդիր
լուծելուց առաջ, կուսկազմակերպությունն ագիտատորների միջոցով կոլեկտի-
վի անդամներին պարզաբանում է դրա լրջությունն ու կարևորությունը, մոբի-
լիզացնում նրանց ուժերն ու նպատակամղում առաջադրանքի կատարմանը։ Այս
դեպքում արդեն ձեռնարկությունը հասնում է ցանկալի արդյունքի։

Կուսկազմակերպությունն ագիտատորներ է հաստատում այնպիսի ընկեր-
ների, որոնք արտադրության մեջ առաջավոր են, հեղինակություն են վայելում
կոլեկտիվում, ունեն քաղաքական ու մասնագիտական անհրաժեշտ պատրաս-
տականություն, գիտակցում են իրենց աշխատանքի կարևորությունը։ Մենք
ագիտացիոն-մասսայական աշխատանքում ներգրավել ենք ինժեներա-տեխ-
նիկական անձնակազմին, արտադրամասերի պետերին, արտադրության առա-



ջավորներին ու նորարարներին, կադրային բանվորներին։ Կուսկազմակերպու-
թյան ագիտ-կոլեկտիվի 25 անդամներն էլ ամենայն բարեխղճությամբ են վե-
րաբերվում իրենց հանձնարարված գործին։ Նրանք բանվոր-բանվորուհիների
համար պարբերաբար զրույցներ են անցկացնում, պարզաբանում կուսակցու-
թյան որոշումները, մեր պետության խաղաղասիրական արտաքին քաղաքա-
կանությունը, նրանց ծանոթացնում աշխարհում տեղի ունեցող ամենաբազմա-
զան իրադարձություններին։ Քաղինֆորմատորներ ու ագիտատորներ Մ. Ա-
ղատյանը, Ռ. Նուբարյանը, Ս. Ադամյանը, Վ. Մարգարյանը, Վ. Բաղդասար-
յանը, Վ. Սերգեյենկոն, Վ. Թարջումանյանը, Մն. Սարգսյանը և շատ ուրիշներ
բանվոր-բանվորուհիների ցանկալի հյուրն են։ Նրանք բարեխիղճ են, զրույց-
ներին ներկայանում են կազմ ու պատրաստ, գոհացնում ունկնդիրներին, բա-
վարարում նրանց հարցասիրությունը։

Կարևորն այն է, որ մեր ագիտատորներն ու քաղինֆորմատորները կոմու-
նիստական կուսակցության քաղաքականությունը և որոշումները պարզաբա-
նում են ո՛չ թե ընդհանրապես, այլ ձեռնարկության, կոլեկտիվի առջև դրված
խնդիրների հետ օրգանապես կապակցված։ Աշխատելով արտադրության վրճ-
ռական տեղամասերում՝ նրանք իրենց խոսքը շաղկապում են ձեռնարկության
առջև ծառացած կոնկրետ խնդիրներին, բերում համոզիչ օրինակներ, թվեր ու
փաստեր։ Այդ ամենի շնորհիվ նրանց խոսքը, ագիտացիան դառնում են ավելի
մարտական, կոնկրետ, ներգործուն ու նպատակային։ Ագիտացիոն զրույցների
ժամանակ բացահայտվում են այն ռեզերվներն ու հնարավորությունները,
որոնք պետք է գործողության մեջ դրվեն, արմատավորվեն արտադրության մեջ։
Պարզաբանվում են նաև այն միջոցներն ու մեթոդները, որոնց կիրառմամբ
հնարավոր է հասնել լավագույն արդյունքի՝ բարձրացնել աշխատանքի ար-
տադրողականությունը և իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։

Տրանսֆորմատորների փաթաթման տեղամասերում առաջավոր փաթա-
թող բանվորուհի է ագիտատոր Նատալյա Գալումյանը։ Նա աշխատում է խղճի
թելադրանքով, լավ օրինակ ծառայում ընկերներին. իր արժանիքների, կոլեկ-
տիվում ունեցած բարձր հեղինակության համար ընտրվել է ՀԿԿ XXV համա-
գումարի պատգամավոր։ Բնավ զարմանալի չէ, որ տեղամասի բանվորները
հավատում են ագիտատորի խոսքին, աշխատանքային խիզախումների լավ
օրինակ տալիս։ Տեղամասի կոլեկտիվն ամեն ամիս կատարում ու գերակատա-
րում է արտադրական պլանները։

Քաղաքական-մասսայական աշխատանքի ուսանելի փորձ ունի գլխավոր
մեխանիկի բաժնի ինժեներ Սերյոժա Ադամյանը։ Նա ագիտացիոն զրույցների
ժամանակ ձեռնարկության ու բաժնի օրվա խնդիրները սերտորեն շաղկապում
է քաղաքական իրադրության հետ։ Նրա առաջարկությունները հաճախ կենսա-
կան նշանակություն են ունենում գործարանի համար, դառնում այս կամ այն
հարցի լուծման բանալի։ Ագիտացիոն զրույցներից մեկի ժամանակ խոսվեց
հաստոցների նորոգման շուրջ։ Պարզվեց, որ նորոգող բանվորների թիվը քիչ
է, որի հետևանքով նորոգումը ձգձգվում է։ Ագիտատոր Ս. Ադամյանը գտավ,
որ այդ գործում պետք է ներգրավել նաև հաստոցն սպասարկող բանվորին,
որն առավել լավ գիտե իր մեքենայի խափանման պատճառը։ Դիրեկցիան
ընդառաջեց, և այդ հարցի լուծումը օգուտ տվեց ձեռնարկությանը։

Գալվանապատման արտադրամասում աշխատում է 46 մարդ, նրանց հետ
կողք-կողքի՝ նաև առաջավոր վարպետ, ագիտատոր Անուշ Հովհաննիսյանը։
Նա անձնական լավ օրինակ է տալիս աշխատանքում ու կենցաղում, մեծ ջան-

քեր գործադրում պլանների կատարումն ապահովելու համար։ Ա. Հովհաննիսյանի ագիտացիոն զրույցներից մեկի ժամանակ խոսվեց այն մասին, որ դետալների բարձր որակի համար հարկավոր է դրանց պարույրակային մասը զերծ պահել գալվանապատումից։ Այդ հարցի շուրջը մտորելուց հետո առաջարկվեց գալվանապատումից առաջ այն ծածկապատել լատեկսով։ Այդպես էլ արվեց։ Դրա կիրառումը մեծ օգուտ բերեց ձեռնարկությանը։

Կարելի է բազմաթիվ այլ օրինակներ ևս բերել ցույց տալու համար, որ տեխնոլոգիական այս կամ այն պրոցեսի կատարելագործման, հումքի և օժանդակ նյութերի խնայողության միտքը ծագել է ագիտացիոն զրույցի ժամանակ։ Այսպես, բարակ երկաթաթիթեղից տրանսֆորմատորների դետալ պատրաստելիս՝ թափոնը բավական բարձր տոկոս էր կազմում։ Երբ մեխանիկական արտադրամասում քաղինֆորմատոր Մն. Սարգսյանը հերթական զրույցն էր անցկացնում, բանվորներն առաջարկեցին այդ թափոնն օգտագործելու նոր եղանակ։ Ձեռնարկությունն արտադրում է նաև փոքր չափի տրանսֆորմատորներ։ Պարզվում է, որ վերջիններիս համար դետալներ կարելի է պատրաստել նաև բացառապես արտադրության թափոններից։ Խելացի միտքը հասավ գործարանի ղեկավարությանը։ Հետո գործի անցան մասնագետները։ Շուտով պատրաստվեց հատուկ դրոշմահատոց, որով սկսեցին փոքր տրանսֆորմատորների համար դետալ կտրել երկաթաթիթեղի թափոններից։ Դրա շնորհիվ կրճատվեցին կորուստները, ավելի խնայողաբար օգտագործվեց հումքի այդ տեսակը։

Զգալի կորուստներ էին առաջանում նաև տրանսֆորմատորների փաթույթների մեկուսացնող թուղթը կտրելիս։ Դետալների ձևափոխման միջոցով փակվեց կորուստների ճանապարհը։ Այժմ մեկուսացնող թուղթը, որը բավական թանկարժեք հումք է, օգտագործվում է առավելագույն խնայողությամբ։

Վերջերս Մն. Սարգսյանի ագիտացիոն զրույցի ժամանակ (խնայողության ռեժիմի շուրջ) բանվորները հանդես եկան բազմաթիվ առաջարկություններով։ Ուշադրության արժանի էր այն առաջարկը, ըստ որի՝ գործարանի հիմնական արտադրամասում, առանց աշխատանքի անվտանգության կանոնների խախտման, կարելի է տեղադրել ևս երկու հաստոց։ Դա կնպաստի արտադրական տարածության ավելի արդյունավետ օգտագործմանը։ Դիրեկցիան լրջորեն կշռադատեց առաջարկությունը և գտավ, որ այն կարելի է ընդունել։ Շուտով հիմնական արտադրամասում հաստոցների թիվը ավելացավ ևս 2-ով։

Ագիտացիոն զրույցների ժամանակ բանվոր-բանվորուհիները նշում են նաև գոյություն ունեցող թերությունները։ Դիրեկցիան հաշվի է առնում դրանք և միջոցներ ձեռնարկում այդպիսիք իսպառ վերացնելու համար։ Եթե նկատի ունենանք, որ ագիտացիոն աշխատանքի գնահատման գլխավոր չափանիշը տնտեսական հաջողություններն են, ապա վստահորեն կարելի է ասել, որ ձեռնարկության ագիտատորները հաջողությամբ են լուծում իրենց առջև դրված խնդիրները։ Ձեռնարկությունն անցած տարվա ապրանքային արտադրանքի և իրացման պլանները կատարեց 103,1 տոկոսով։ Նշանակալից են հաջողություններն աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում։ Կատարվեցին նաև հաջորդ ամիսների առաջադրանքները։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի ծավալման նպատակին է ծառայում գործարանի ռադիոհանգույցը, որը կանոնավոր հաղորդումներ է տալիս ձեռնարկության մարդկանց համար։ Ռադիոհանգույցի աշխատանքը ղեկավարում է ագիտկոլեկտիվի անդամ, գլխավոր մեխանիկի բաժնի ինժեներ Ս. Ա-



ժամյանը։ Վաղօրոք կազմած պլանի համաձայն՝ ռադիոհանգույցով մշտապես հաղորդումներ են տրվում օրվա նորությունների, ձեռնարկության մարդկանց կյանքի ու աշխատանքի առօրյայի, մրցության առաջավորների, ստանձնած պարտավորությունների կատարման արդյունքների մասին։ Հաղորդումներում մեծ տեղ է հատկացվում առաջավոր փորձի պրոպագանդմանը։

Քաղաքական-մասսայական աշխատանքում պատշաճ տեղ է գրավում ցուցադրական ագիտացիան։ Արտադրամասերում, կարմիր անկյուններում փակցված են ճաշակով գրված ու գեղեցիկ ձևավորված մոբիլիզացնող լոզունգներ, պլակատներ, դիագրամներ։ Դրանք բանվորներին հիշեցնում են, թե ինչի համար են պայքարում իրենք, ինչպիսի պարտավորություններ են կյանքի կոչելու հնգամյակի տարիներին։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքում լայնորեն կիրառվում են վավերագրական կինոնկարները։ Ամեն շաբաթ բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների համար ակումբում ցուցադրվում են ամենատարբեր թեմաներով այդպիսի կինոնկարներ։ Դրանց զգալի մասը արտացոլում է արտադրության կուլտուրան բարձրացնելու, որակը բարելավելու, ինքնարժեքն իջեցնելու, հումքն ու օժանդակ նյութերը խնայողաբար օգտագործելու հարցերը։ Վավերագրական կինոնկարները բանվորներին միաժամանակ լայն ինֆորմացիա են տալիս աշխարհում տեղի ունեցող ամենաբազմազան իրադարձությունների մասին։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի հաջողությունը, դրա գաղափարական բարձր մակարդակն ամենից առաջ պայմանավորված են նրանով, թե ինչպես ենք օգնում ագիտատորներին, ընդլայնում նրանց քաղաքական մտահորիզոնը, զինում անհրաժեշտ գիտելիքներով ու բացատրական աշխատանք տանելու հմտությամբ։ Մեր սկզբնական կուսկազմակերպությունը և նրա բյուրոն այդ հարցերը մշտապես պահում են իրենց տեսադաշտում, ամենօրյա օգնություն ցույց տալիս ագիտատորներին ու քաղինֆորմատորներին։

Կուսբյուրոն կարևոր նշանակություն է տալիս ագիտատորների հետ տարվող աշխատանքին, նրանց դաստիարակությանն ու ցույց տրվող օգնությանը։ Ագիտկոլեկտիվը ղեկավարում է քաղաքական աշխատանքի հարուստ փորձ ունեցող կոմունիստ, ինժեներ-կոնստրուկտոր Վ. Մարգարյանը։ Նա պլանավորված կարգով հրավիրում է ագիտկոլեկտիվի նիստ, ագիտատորներին և քաղինֆորմատորներին պարզաբանում նրանց առաջիկա անելիքները։

Արդյունավետ, իրեն արդարացրած մեթոդ է սեմինար-խորհրդակցությունը, որ կուսբյուրոն հրավիրում է ամսական մեկ անգամ։ Այստեղ ագիտատորներն ու քաղինֆորմատորները հրահանգչական զեկուցումներ են լսում։ Նրանց ցուցում է տրվում, թե առաջիկայում ո՞րն է գլխավոր հարցը, ի՞նչ թեմայով է նպատակահարմար անցկացնել ագիտացիոն զրույցները։ Սեմինարներում կարդացվում են նաև ընդհանուր քաղաքական և միջազգային դրության վերաբերյալ դասախոսություններ։

Ագիտատորներին ու քաղինֆորմատորներին լուրջ օգնություն է փորձի փոխանակումը։ Դրա միջոցով ագիտատորները որոշակի պատկերացում են կազմում, թե իր ընկերն ինչպես է կառուցել զրույցը, ինչ ձևով է հնարավոր այս կամ այն փաստը դարձնել հասկանալի և դյուրըմբռնելի։

Կուսկազմակերպության բյուրոն հոգում է, որպեսզի ագիտատորների ու

քաղինֆորմատորների տրամադրության տակ լինեն զրույցի համար անհրաժեշտ նյութեր, տվյալներ, դիագրամներ, ցուցադրական այլ միջոցներ։ Գործարանի տեխնիկական գրադարանում ստեղծվել է հատուկ անկյուն, ուր առանձնացվել են բազմաթիվ բրոշյուրներ, տեղեկատու գրքեր, աղյուսակներ։ Ագիտատորներն ու քաղինֆորմատորներն ուզած ժամանակ օգտվում են դրանցից։ Գրադարանում սահմանված է կոնսուլտանտների հերթապահություն։ Ագիտատորները զանազան հարցերով կարող են դիմել նրանց, ունկնդիրների մոտ գնալուց առաջ ստանալ կոնկրետ պատասխաններ։

Կուսկազմակերպության աշխատանքում նշանակալից տեղ են գրավում քաղաքական ագիտացիայի հետ կապված մասսայական միջոցառումները։ Այդ տեսակետից ուշագրավ էր «Ագիտատորի օրը»։ Վաղ առավոտից բոլոր ագիտատորներն ու քաղինֆորմատորները կազմ ու պատրաստ ներկայացան կուսբյուրո։ Նրանք ուղարկվեցին ձեռնարկության տարբեր տեղամասեր, անցկացրին զրույցներ։ Կուսբյուրոյի անդամները տեղերում ստուգեցին զրույցների ընթացքը։ Օրվա վերջում ամփոփեցինք արդյունքները։ Նշվեցին լավն ու օրինակելին, քննադատվեցին թերությունները։ Աչքի ընկած ագիտատորներն ու քաղինֆորմատորները խրախուսվեցին, ստացան պարգևներ։ Ի դեպ, լավագույն ագիտատորներն ու քաղինֆորմատորները մեզ մոտ միշտ էլ գնահատվում են, խրախուսվում։

Ինչ խոսք, ագիտացիոն-մասսայական աշխատանքում կան նաև թերություններ։ Առանձին ագիտատորների ու քաղինֆորմատորների զրույցները հաճախ կրում են չոր ու ցամաք բնույթ, չեն կապվում կոլեկտիվի առջև դրված խնդիրների հետ, բանվորները միշտ չէ, որ ստանում են իրենց հուզող հարցերի սպառիչ պատասխանը։ Երբեմն ագիտատորներն ու քաղինֆորմատորները նախաձեռնություն հանդես չեն բերում, այլ սպասում են վերևի հրահանգներին։ Այս դեպքում նույնպես զրույցները հաջող և հետաքրքրական չեն անցնում։ Բացի այդ, երբեմն, ընկնելով զրույցների քանակի ետևից, ոմանք աչքաթող են անում դրանց արդյունավետության և ներգործության հանգամանքը։ Այս թերությունների վերացումը և ագիտացիոն-մասսայական աշխատանքը ներգործուն դարձնելը ձեռնարկության կուսկազմակերպության և նրա բյուրոյի առաջնահերթ խնդիրն է։ Այդ խնդրի պատշաճ լուծումը առավել կարևորություն է ստանում այս օրերին, երբ մեր երկրում, ամենուրեք պայքարում են՝ արժանավայել գործերով դիմավորելու ՍՄԿԿ XXIV համագումարը։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՖԻՆԱՆՍՆԵՐԸ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ

Լ. Տ. ՂԱԼՈՒՄՅԱՆ

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումն արմատական միջոցառումներ մշակեց մեր երկրում արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու մասին։ Այդ որոշումների հիման վրա հաջողությամբ իրականացվում է տնտեսական ռեֆորմ։ Այն պահանջում է մեծապես բարձրացնել ֆինանսների և վարկի դերը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր մարզերում։

Տնտեսական ռեֆորմի իրականացման արդի պայմաններում սոցիալիստական ձեռնարկությունների ու տնտեսական կազմակերպությունների ֆինանսների դերի բարձրացումը, ըստ էության, նշանակում է դրամական հարաբերությունների զարգացում ու կատարելագործում։

Ռեֆորմը արմատական փոփոխություն է մտցնում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ֆինանսավորման ու վարկավորման, ինչպես նաև պետական բյուջեի միջոցները սոցիալիստական ընդլայնված վերարտադրությանը հատկացվող կարգի ու պայմանների մեջ։

Սոցիալիստական ձեռնարկությունների ֆինանսական հարաբերությունների կազմակերպման ու կարգավորման գործում կարևոր տեղ է գրավում բանկային վարկը, որի օգնությամբ բավարարվում է դրամի նկատմամբ առաջացած ժամանակավոր պահանջը։ Բացի դրանից, բանկը ռուբլով վերահսկողություն է սահմանում վարկառու կազմակերպությունների ֆինանսատնտեսական գործունեության նկատմամբ։

Ռեֆորմը հանդիսանում է սոցիալիստական արտադրական հարաբերությունների կատարելագործման նոր էտապ, որը ձեռնարկություններին լայն հնարավորություններ է տալիս նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների նպատակասլաց օգտագործման ուղղությամբ։

Տնտեսական ռեֆորմի կիրառման ընթացքում նկատելիորեն ընդլայնվել են ձեռնարկությունների ու տնտեսական կազմակերպությունների կարճատև ու երկարատև վարկավորման շրջանակները, կիրառվում է ֆոնդավճարը, որը գանձվում է հիմնական արտադրաֆոնդերի և նորմավորվող շրջանառու միջոցների տարեկան միջին արժեքից։ Արմատապես փոխվել է շահույթի բաշխման

կարգը. արտադրանքի իրացման նպատակով համախառն արտադրանքի ցուցանիշի փոխարեն, կիրառվում են արտադրանքի իրացման ծավալի և որակի ցուցանիշները։

Այժմ զգալիորեն բարձրացել է սոցիալիստական ձեռնարկությունների տնտեսական դերը, կատարելագործվում են պետության և ձեռնարկությունների միջև իրականացվող տնտեսական ու ֆինանսական փոխհարաբերությունները, արտադրության ու շրջանառության բոլոր պրոցեսներում զուգակցվում են հասարակության անդամների ու ձեռնարկությունների շահերը, բարձրանում է նրանց նյութական շահագրգռվածությունը, որը, վերջին հաշվով, նպաստում է արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Ժողովրդական տնտեսության ֆինանսավորման կարգի փոփոխություններին զուգահեռ, փոխվել է նաև կապիտալ ներդրումների ֆինանսավորման կարգը։ Զգալիորեն սահմանափակվել են ֆինանսավորման նպատակներով պետական բյուջեի միջոցների օգտագործման շրջանակները, ի հաշիվ բանկային վարկի գումարների և օբյեկտների ավելացման։ Հասկանալի է ու տրամաբանական, որ տնտեսական ռեֆորմի շնորհիվ զգալի փոփոխություններ են տեղի ունեցել ձեռնարկությունների ու պետական բյուջեի միջև իրականացվող փոխհարաբերությունների բնագավառում։

Արդի պայմաններում արտադրանքի իրացման ու շահույթի ցուցանիշները դարձել են սոցիալիստական ձեռնարկությունների և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի ֆինանսների կազմակերպման հիմքը։ Եթե մինչև տնտեսական ռեֆորմը ձեռնարկությունը կատարում էր համախառն արտադրանքի թողարկման պլանը և ինքնարժեքի իջեցման առաջադրանքը, ապա նրանց կոլեկտիվի անդամները ստանում էին լրացուցիչ վարձատրություն, որտեղ համարյա անտեսվում էր իրացման հարցը, որը, վերջին հաշվով, արտադրության վերջնական նպատակն է։ Քանի որ այժմ ձեռնարկությունների ֆինանսատնտեսական գործունեության գնահատման կարևորագույն ցուցանիշներից մեկը արտադրանքի իրացումն է, ապա այդ առումով, մի կողմից՝ ամրապնդվում են տնտեսական կապերը գնորդ ու մատակարարող կազմակերպությունների միջև, մյուս կողմից՝ կատարելագործվում են վարկահաշվարկային փոխհարաբերությունները։

Պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմին անցնելուց հետո, Արաբկիրի կահույքի ֆաբրիկայի (որի արտադրանքն ունի սահմանափակ ասորտիմենտ) թողարկած արտադրանքի որակը համարյա չի համապատասխանում բնակչության պահանջներին։ Բավական է նշել, որ 1967 թվականին որակի պետական տեսչության կողմից ստուգված 913 արտադրատեսակներից 910-ը կամ 99,3 տոկոսը խոտանվել է։ Առևտրական կազմակերպություններն իրավացիորեն հրաժարվում են նշված ֆաբրիկայի արտադրանքը գնելուց, որովհետև այն կուտակվում է կամ պահեստներում, կամ երկար ժամանակ մնում խանութներում, վատորակության պատճառով։ Հանրահայտ է, որ իրացման ծավալի ցուցանիշն արտահայտում է արտադրության և սպառման միջև եղած անմիջական կապը։ Բացի դրանից, արտադրանքի իրացման ցուցանիշներով է վերջնականապես սահմանվում, թե արտադրանքն իր արժեքով ու սպառարժեքով հասարակական ինչպիսի ճանաչում է գտնում։

Դժբախտաբար Արաբկիրի կահույքի ֆաբրիկան միակը չէ։ Բավական է նշել, որ 1969 թվականին որակի տեսչության կողմից խոտանվել են հանրապետությունում արտադրվող հացաբուլկեղենի 3,6, գինիների՝ 13,4, գարեջրի՝



23,9, ոչ ալկոհոլային խմիչքների՝ 25,9 տոկոսը, հանքային ջրերի և պտղաբանջարեղենից պատրաստված պահածոներինը, համապատասխանաբար կազմել են 51,5 և 14,5 տոկոս։ Սա հույժ կենսական հարց է ազգաբնակչության պահանջների բավարարման տեսակետից, որի համար իրավասու օրգանները արտադրող ձեռնարկությունների հետ միասին պետք է իրենց աշխատանքները լրիվ վերակառուցեն տնտեսական ռեֆորմի պահանջներին համապատասխան։

Ձեռնարկությունների ֆինանսա-տնտեսական գործունեության վերլուծությունից պարզվում է, որ պլանավորման ու նյութական խթանման նոր սիստեմին անցնելուց հետո կատարվում և գերակատարվում են կարևորագույն ցուցանիշների համար սահմանված առաջադրանքները, որը հնարավորություն է ընձեռել մի կողմից՝ ավելացնել պետական բյուջեի եկամուտները, մյուս կողմից՝ ձեռնարկությունների տրամադրության տակ ավելի շատ միջոցներ թողնել։

Արդի պայմաններում ֆինանսական հարաբերությունների կարգավորման հարցերից մեկը պետական բյուջեի եկամուտների երկու կարևորագույն աղբյուրների՝ շրջանառության հարկի և շահույթներից պետական բյուջեին կատարվող վճարների տեսակարար կշռի և բացարձակ գումարի սիստեմատիկ փոփոխումն է։

Շրջանառության հարկի տեսակարար կշիռը պետական բյուջեի եկամտային մասում տարեցտարի նվազում է, որը պայմանավորված է նրանով, որ այժմ շահույթը, ձեռնարկությունների ֆինանսա-տնտեսական գործունեության ընդհանրացնող ցուցանիշ է, իսկ շրջանառության հարկը, ըստ էության, արտադրության տնտեսական խթանման դեր չի կատարում։ Շրջանառության հարկը պետական բյուջեի եկամտային մասում ըստ տարիների բացարձակ գումարով համարյա չի նվազում (չհաշված 1969 թվականը), այն իջնում է միայն տոկոսային հարաբերությամբ։ Օրինակ՝ յոթնամյակի տարիներին (1959—1965 թթ.) շրջանառության հարկի գումարն ավելացել է 2, իսկ շահույթներից կատարվող վճարները՝ 2,5 անգամ։ Դա հիմնականում բացատրվում է արդյունաբերական ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների շահույթի արագ աճով։ ՀՍՍՀ պետական բյուջեի եկամտային մասում 1968 թվականին շրջանառության հարկը կազմել է 360,5 մլն ռուբլի կամ 51,5 տոկոսը, 1969 թ. նշված ցուցանիշները համապատասխանաբար կազմել են 346 մլն ռուբլի և 45,1 տոկոս։ Շահույթներից կատարվող վճարները, ընդհակառակը, ավելացել են և՛ բացարձակ գումարով, և՛ տոկոսային հարաբերությամբ։ Օրինակ, 1968 թվականին բյուջեի եկամտային մասում շահույթներից կատարված վճարները կազմել է 90,4 մլն ռուբլի կամ մոտ 13 տոկոսը, 1969 թ.՝ 149,1 մլն ռուբլի՝ 19,4 տոկոս։

Ձեռնարկությունների ու տնտեսական կազմակերպությունների ղեկավարության պատասխանատվության, արտադրության արդյունավետության բարձրացման, ինչպես նաև նյութական ու դրամական միջոցների խնայողաբար օգտագործման նպատակով աստիճանաբար կրճատվում են պետական բյուջեից տրվող անվերադարձ ֆինանսավորման գումարները, դրա փոխարեն ավելացվում է բանկային վարկը։ Տնտեսական ռեֆորմի իրականացման ժամանակ բանկային վարկի դերի բարձրացումը բոլորովին չի նսեմացնում բյուջետային ֆինանսավորման նշանակությունը, որովհետև մի կողմից՝ պահպանվում է դրամական կուտակումների կենտրոնացված վերաբաշխման անհրաժեշտությունը, մյուս կողմից՝ ամրապնդվում են բյուջետային և վարկային սիստեմի փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը։

Տնտեսական ռեֆորմից առաջ ՀՍՍՀ արդյունաբերական ձեռնարկություններում կենտրոնացված կապիտալ ներդրումների ֆինանսավորման 70 տոկոսը կատարվում էր պետական բյուջեի միջոցների հաշվին։ Իսկ այժմ ֆինանսավորման հիմնական աղբյուրը ձեռնարկությունների սեփական միջոցներն են։ Օրինակ՝ 1970 թ. համար պլանով նախատեսված էր արդյունաբերական ձեռնարկությունների կապիտալ ներդրումների ֆինանսավորման միայն 43 տոկոսը կատարել բյուջեի միջոցների, մոտ 50 տոկոսը՝ սեփական միջոցների (շահույթի և ամորտիզացիոն ֆոնդի), իսկ մնացածը՝ երկարատև վարկի և այլ աղբյուրների հաշվին։

Զգալիորեն ավելացել են արդյունաբերական ձեռնարկություններին կապիտալ ներդրումների իրականացման նպատակով տրվող երկարատև վարկի գումարները։ Այսպես, 1967 թվականին շինարարական բանկը նրանց տվել է 70 մլն ռուբլու երկարատև վարկ՝ 1965 թ. 17 մլն ռուբլու դիմաց կամ 4,1 անգամ ավելի։

Ձեռնարկությունների շրջանառու միջոցների ձևավորման գործում նկատելիորեն բարձրացել են նաև կարճատև վարկի դերն ու նշանակությունը։ Օրինակ, 1968 թվականին, 1967 թվականի համեմատությամբ, ՍՍՀՄ պետական բանկի հայկական հանրապետական գրասենյակի կողմից արդյունաբերական ձեռնարկություններին տրված կարճատև վարկի գումարներն ավելացել են 12,8 տոկոսով։

Այժմ ձեռնարկություններում շահույթի բաշխումն այնպես է կատարվում, որը մի կողմից՝ նպաստում է բաշխման հարաբերությունների կատարելագործմանը, ապահովում համապետական շահը, մյուս կողմից՝ բարձրացնում սոցիալիստական ձեռնարկությունների ու տնտեսական կազմակերպությունների նյութական շահագրգռվածությունը՝ արտադրության արդյունավետության բարձրացման գործում։ Շահույթի բաշխման և օգտագործման նոր կարգը բխում է ինչպես ամբողջ հասարակության, այնպես էլ ամեն մի ձեռնարկության ու նրա կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի նյութական շահագրգռվածության բարձրացման սկզբունքից։ Բավական է ասել, որ այդ նպատակով էլ բանվոր-ծառայողներին վճարվող աշխատավարձի չափը կախման մեջ է դրվում շահույթի գումարից։

Շահույթի բաշխման նոր կարգն սկզբունքային փոփոխություն մտցրեց տնտհաշվարկային ձեռնարկությունների և պետական բյուջեի միջև իրականացվող փոխհարաբերությունների բնագավառում։ Օրինակ, 1967 թվականին ՀՍՍՀ արդյունաբերական ձեռնարկությունների ու տնտեսական կազմակերպությունների շահույթի 57,5 տոկոսը փոխանցվել է պետական բյուջե (որից շահույթներից կատարվող վճարումները՝ 43,8), իսկ մնացածը կամ 42,5 տոկոսը թողնվել է ձեռնարկությունների տրամադրության տակ։ Նշված ցուցանիշները 1968 թվականին համապատասխանաբար կազմել են 50,2, 27,2 և 49,8 տոկոս։ Ինչպես տեսնում ենք, արդի պայմաններում շահույթի բաշխման նոր կարգը հնարավորություն է ընձեռում ավելի շատ դրամական միջոցներ թողնել ձեռնարկությունների տրամադրության տակ։

Ներկայումս ձեռնարկություններում շահույթը տրոհվում է վճարման և բաշխման ենթակա մասի։ Առաջինի մեջ մտնում են ֆոնդավճարը, ռենտավճարը և բանկային վարկի տոկոսները։ Բաշխման ենթակա մասն օգտագործվում է արտադրության տեխնիկական վերակառուցման, նյութական խրախուսման և սոցիալ-կուլտուրական միջոցառումների իրականացման համար։ Այդ



նպատակով ստեղծվում են արտադրության զարգացման, նյութական խրախուսման և սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության ֆոնդեր։ Պետական բյուջեի համար կատարվող մասհանումների սիստեմում հիմնականը ֆոնդավճարն է, որի շնորհիվ ուղղակի կապ է ստեղծվում սոցիալիստական ընդլայնված վերարտադրության և պետական կենտրոնացված դրամական ֆոնդերի միջև։

Ֆոնդավճարը էական առավելություններ ունի շահույթից բյուջեին կատարվող մասհանումների նախկին կարգի համեմատությամբ, որովհետև բյուջեի վճարման այդ ձևը չէր նպաստում ձեռնարկությունների արտադրաֆոնդերի արդյունավետ օգտագործմանը, իսկ ֆոնդավճարը, ընդհակառակը, անմիջապես առնչվում է հիմնական ֆոնդերի և նորմավորվող շրջանառու միջոցների մեծության հետ ու նպաստում է դրանց արդյունավետության բարձրացմանը։

Ռենտավճարը տարածվում է այն ձեռնարկությունների արտադրանքի վրա, որոնք գտնվում են տրանսպորտային, բնա-կլիմայական, տեխնիկա-տնտեսական հատուկ բարենպաստ պայմաններում և ստանում են դիֆերենցիալ զուտ եկամուտ։ Օրինակ՝ ռենտավճարը տարածվում է նավթի, գազի արդյունահանող ձեռնարկությունների վրա, որտեղ միավոր արտադրանքի համար կատարվող ծախսերի միջև եղած տատանումները շատ մեծ են։ Այսպես, Ադրբեջանում արդյունահանվող նավթի մեկ տոննայի ինքնարժեքը յոթ անգամ բարձր է Թաթարական ԱՍՍՀ-ում արդյունահանվող նավթի ինքնարժեքից։ Հասկանալի է, որ միևնույն ճյուղի տարբեր ձեռնարկություններում տեխնիկա-տնտեսական մակարդակների տարբերության պատճառով կառաջանա լրացուցիչ զուտ եկամուտ։ Դրա համար արդյունաբերության միևնույն ճյուղի ներսում գտնվող ձեռնարկություններում, անկախ նրանց տնտեսական գործունեությունից, ունենում են շահութաբերության տարբեր մակարդակ, և առաջացած դիֆերենցիալ ռենտան փոխանցվում է պետական բյուջե։

Ձեռնարկությունների շահույթներից բյուջեին կատարվող վճարումների մեջ են մտնում նաև բանկային վարկի տոկոսները։ Մինչև տնտեսական ռեֆորմը, բանկային վարկի դիմաց սահմանված տոկոսադրույքը համեմատաբար ցածր էր և մտնում էր արտադրանքի ինքնարժեքի մեջ։ Նոր սիստեմին անցած ձեռնարկությունների և բանկերի միջև իրականացվող վարկային հարաբերությունների ընդլայնման հետ միասին բարձրացավ վարկի տոկոսադրույքը, որը վճարվում է շահույթից։ Դա նպատակ ունի բարձրացնելու վարկատու և վարկառու կազմակերպությունների պատասխանատվությունը՝ փոխառու միջոցների արդյունավետության բարձրացման ոլորտում։ Տնտեսական ռեֆորմի իրականացման պայմաններում բանկերի դերի ու նշանակության մեծացման հետ միասին, նոր բովանդակություն են ստանում նաև կարճատև ու երկարատև վարկը։

Այժմ ձեռնարկությունների իրավունքների ընդլայնումը, պայմանագրային ու վարկա-հաշվարկային փոխհարաբերությունների զարգացումն ու կատարելագործումը նորմալ պայմաններ են ստեղծում ձեռնարկություններում ամրապնդելու տնտեսական հաշվարկը, այն դարձնելով հասարակական արտադրության արդյունավետության, ինչպես նաև բնակչության բարեկեցության բարձրացման կարևոր լծակը։

Պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմին անցած ձեռնարկություններում զարգանում ու կատարելագործվում են նյութական և բարոյական գործոնները, որոնք ծառայում են արտադրության զարգացման և ժողո-

վրդական տնտեսության պլանների կատարմանը։ Հասկանալի է, որ տնտեսական խթանման ֆոնդերը (սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության, արտադրության զարգացման և այլն) ստեղծվում են շահույթի հաշվին։

Նյութական խրախուսման ֆոնդը հիմնականում օգտագործվում է ձեռնարկության բանվորներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին պարգևատրելու նպատակով։ Հետևաբար, այդ ֆոնդին շահույթից կատարվող մասհանումները կախման մեջ են դրվում ձեռնարկության կոլեկտիվի անդամների թվից, ինչպես նաև աշխատավարձի ֆոնդի մեծությունից։ Նման մոտեցումը հավասար պայմաններ է ստեղծում բոլոր ձեռնարկությունների համար։

Բերենք մեկ օրինակ. նոր սիստեմին անցնելուց հետո Երևանի փորձնական էլեկտրատեխնիկական գործարանում զգալիորեն բարելավվել են տեխնիկա-տնտեսական հիմնական ցուցանիշները։ Աճել է արտադրանքի իրացման ծավալը, ավելացել շահույթը, բարձրացել աշխատանքի արտադրողականությունն ու շահութաբերությունը։ Գործարանում միջին աշխատավարձի աճի նկատմամբ ապահովվել է աշխատանքի արտադրողականության առավել բարձր աճ։ Այսպես, եթե 1969 թվականին, 1968 թ. համեմատությամբ, միջին աշխատավարձն աճել է մեկ տոկոսով, ապա աշխատանքի արտադրողականությունը համապատասխանաբար աճել է 10,8 տոկոսով։ Այս հարաբերակցության ապահովման գործում կարևոր դեր է խաղացել նյութական խրախուսման ֆոնդի հաշվին ձեռնարկության աշխատողների նյութական խթանման ուժեղացումը։

Ձեռնարկությունների տրամադրության տակ թողնվող շահույթի չափը պայմանավորված է նրանց ֆինանսա-տնտեսական գործունեության բարելավմամբ։ Օրինակ, Երևանի էլեկտրալամպերի գործարանի հաշվեկշռային շահույթը 1969 թվականին կազմել է 4,163 հազար ռուբլի, որից տնտեսական խթանման ֆոնդերին կատարված հատկացումները կազմել են 1,967 հազար, այդ թվում նյութական խթանման ֆոնդին՝ 1,075 հազար ռուբլի կամ 54,7 տոկոսը, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդին՝ 440 հազար կամ 22,4 տոկոսը, իսկ արտադրության զարգացման ֆոնդին հատկացված գումարները համապատասխանաբար կազմել են 452 հազար ռուբլի և 22,9 տոկոս։ Շահույթներից նշված ֆոնդերին կատարված հատկացումները և դրանց օգտագործումը զգալիորեն բարելավել են գործարանի ֆինանսա-տնտեսական դրությունը։

ՍՍՀՄ իրականացվող տնտեսական ռեֆորմը լայն հնարավորություններ է ստեղծում սոցիալիստական ձեռնարկություններում ու տնտեսական կազմակերպություններում արտադրության արդյունավետության բարձրացման, ինչպես նաև հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի ավելացման համար, որոնք վերջին հաշվով, սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման կարևոր պայմաններն են։





# ԳՆՄԱՆ ԳՆԵՐԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՄԱՍԻՆ

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման և ամրապնդման գործում կարևոր տեղ է գրավում կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության գների քաղաքականությունը։ Այն անմիջականորեն կապված է ազգային եկամտի բաշխման, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման, սոցիալիստական կուտակման, աշխատավարձի ռեալ ապահովման, աշխատավորության նյութական բարեկեցության, ռուբլու գնողունակության բարձրացման և սոցիալիստական ձեռնարկություններում տնտհաշվարկի ամրապնդման հետ։ Գների ճիշտ քաղաքականությունն աջակցում է փողի նորմալ շրջանառությանը և բնակչությանն անհրաժեշտ ապրանքներով համաչափ մատակարարմանը։

ՍՍՀՄ-ում գները սահմանվում են պետության կողմից՝ պլանային կարգով, որոնք արտահայտում են սոցիալիստական հասարակության շահերն ու արտադրահարաբերությունները և նպաստում արտադրաուժերի զարգացմանը։ Մեր երկրում տնտեսական կյանքը որոշվում և նրան ուղղություն է տրվում պետական պլանով, որը հենվում է ժողովրդական տնտեսության պլանային և համաչափ զարգացման օրենքի վրա։ Դրա շնորհիվ պլանային կարգով սահմանվում են և ապրանքների գները։

Մեր երկրում արդյունաբերական ապրանքների մանրածախ և գյուղատնտեսական մթերքների գնման գների միջոցով կարգավորվում է ազգային եկամտի բաշխման այն մասը, որը կազմում է սպառման ֆոնդը։ Այդ պատճառով աշխատավորության սպառման մակարդակը պայմանավորված է դրանց եկամտի չափով և ապրանքների գների մակարդակով։ Սովետական պետությունը գների միջոցով խթանում է արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացումը, օգնում բնակչության համար արտադրվող ապրանքների և մթերքների ավելացմանը, ասորտիմենտի բարելավմանը և որակի բարձրացմանը։

Հենց այդ նկատառումներով էլ բարձրորակ գյուղատնտեսական մթերքների և հումքի համար սահմանված է լրացուցիչ վճարում, իսկ վատորակ մթերքի և հումքի համար գներից արվում է զեղչ։

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման տարբեր էտապներում մթերումների կազմակերպումն ու գների քաղաքականությունը մեր պետությունը որոշել է՝ ելնելով երկրի քաղաքական ու տնտեսական զարգացման կոնկրետ պայմաններից։ Սովետական իշխանության առաջին տարիներին, քաղաքացիական պատերազմի և ինտերվենցիայի պատճառով, գյուղատնտեսական մթերքների ու հումքի մթերումները կատարվում էին ավելցուկների բռնագրավման ձևով։ Գյուղացիները պարտավոր էին պետությանը հանձնել գյուղմթերքների ամբողջ ավելցուկը (այդ բանից ազատվում էին միայն չքավոր գյուղացիները)։ Նէպի ժամանակ պարենմասնատրումը փոխվեց պարենհարկով, որը նպաստեց գյուղատնտեսության արտադրության վերականգնմանը։

1928—1929 թթ. սոցիալիստական շինարարության ծավալման պայմաններում, երբ քաղաքի բնակչությունը բուռն աճում էր, անհրաժեշտ էր գյուղմթերքների և հումքի համար գյուղացիության հետ կնքել կոնտրակտացիոն պայմանագրեր։ Դրանք ամրապնդեցին գյուղացիական տնտեսությունների պլանային ղեկավարությունը, պայմաններ ստեղծեցին գյուղատնտեսությունը մեքենաներով, սարքավորումներով ու արդյունաբերական ապրանքներով մատակարարելու և փոխադարձաբար գյուղատնտեսական մթերքներ գնելու համար։

1932—1933 թթ. գյուղատնտեսական մթերքների հումքի գնման ծավալը կայունացնելու նպատակով սահմանվեց պարտադիր մթերումների և ՄՏԿ-ների բնավարձի կարգը, որը գրեթե անփոփոխ մնաց մինչև 1953 թ.։ ՍՄԿԿ ԿԿ սեպտեմբերյան պլենումի (1953 թ.) որոշումների համաձայն գյուղատնտեսության արտադրության բնագավառներում շեշտակի վերելք ստեղծե-

թական պատասխանատու անձերը։ Այդ պատճառով սպառողական կոոպերացիայի մթերող կազմակերպություններում պետք է տարվի պարզ հաշվարկ՝ պետական և ավելցուկների գնման միջև։ Հաշվարկները պետք է կատարվեն պարտիաներով, որովհետև հումքի կամ մթերքի արժեքները ըստ որակի, ժամկետի և ստացման աղբյուրների տարբեր են, և բաց թողումը կատարվում է փաստացի ստեղծված գնման գներով, որոնք կարող են փոփոխվել միայն լրացուցիչ վերամշակման, որակի փոփոխության (ջոկել, տեսակավորել, փոխադրել և այլն) պայմաններում կամ՝ երբ մթերող կազմակերպությունները չեն հասցնում պայմանավորված ժամանակին բաց թողնել։ Գնման գների իջեցման համար սահմանված է մեկ արտոնյալ օր, որի ժամկետն անցնելուց հետո հումքը կամ մթերքը վերագնահատվում և բաց է թողնվում վաճառքի։

Հաշվի առնելով, որ պետական մթերող կազմակերպությունների և սպառողական կոոպերացիայի վերադիր ծախսերը, վերջին հաշվով, մտնում են մանրածախ գների կազմի մեջ. այդ կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ կրճատել մթերքների և հումքի գնումների ծախսերը։

Առևտրի կազմակերպման, բնակչությանը գյուղատնտեսական մթերքներով անընդմեջ ապահովելու գործում էական նշանակություն ունի հասունացող մրգերի ու բանջարեղենի սեզոնայնության ժամանակաշրջանի երկարացումը։

1969 թ. պլանավորված էր գնել և ազգաբնակչությանը վաճառել պոմիդոր՝ 104 հազար, վարունգ՝ 11.300 և միրգ՝ 60 հազար տոննա։ Ցավոք, այդ բոլորի ցանքը և աճեցումը կատարվում է միաժամանակ, և համարյա հասնում են միաժամանակ։ Երբ առևտրական կազմակերպությունները ձեռնամուխ են լինում այն գնելու և վաճառելու, չեն հասցնում ամբողջ բերքն ընդունել և առևտրական ցանց է մտնում գերհասունացած վիճակում, մեծ կորուստների տեղիք է տրվում կամ բերքի մի մասը փչանում է դաշտերում։ Ծիրանը Հայաստանում երևում է միայն 10—15 օր, չնայած բերքն առատ է լինում։ Միրգը կամ բանջարեղենի առանձին տեսակներ խանութ են բերում և կարճ ժամանակ չանցած փչանում են։

Գյուղատնտեսական մթերքների գները մեր հանրապետությունում ըստ գոտիների սահմանելու հարցում հիմնականում համամիտ լինելով ընկ. Ա. Կ. Առումյանի հետ[1], միաժամանակ գտնում եմ անհրաժեշտ սեզոնային սահմանված գները կատարելագործել այն ձևով, որ հնարավոր լինի մրգի և բանջարեղենի գնումներ կատարել և վաճառել ո՛չ միայն ամառվա 2—3 ամիսներին, այլև այդ ժամանակաշրջանը երկարաձգել՝ սկսած ուշ գարնանից մինչև խոր աշուն։ Հարկավոր է շահագրգռել կոլտնտեսություններին՝ արտադրելու և վաղահաս և ուշ հասնող մրգեր ու բանջարեղեն, իսկ դրա համար մեր հանրապետությունն ունի լայն հնարավորություններ։ Գտնում ենք, որ պոմիդորը, ծիրանը կամ դեղձը կարելի է խանութ բերել ո՛չ լրիվ հասունացած, որպեսզի փոխադրման և 3—4 օր տևող վաճառքի ժամանակ չփչանա։ Իսկ խանութներում ամեն օր վաճառք լինի։

Վերջին տարիներին մթերումների ծավալի մեծացմամբ և ծախսերի կառուցվածքի փոփոխմամբ շրջանառության ծախսերը կրճատվել են, իսկ վերադիրն ու օգուտների նորմաները չեն վերանայվել։ Փոխադրումների պայմանների փոփոխության, փաթեթավորման նյութերի գների, բեռնակիրների աշխատավարձի բարձրացման շնորհիվ վերադիր ծախսերի նորմաներն իջել են (բարձր ծախսերն այժմ պարտադրվում է մթերող կազմակերպություններին)։ Այսպես, մինչև 1962 թ. կաշեհումքի, բրդի, ձվի մինչև 25 կմ տարածության վրա փոխադրումը կատարվում էր կոլտնտեսությունների, իսկ 1962 թվականից հետո մթերող կազմակերպությունների հաշվին։

Բրդի փաթեթավորման ծախսերի հատուցման նորմաները 1958 թ. սահմանվել է 21 ռ. 60 կ., սակայն 1961 թ. փաթեթավորման կտորի գները բարձրացել են, իսկ նորմաներն այդ ժամանակամիջոցում չեն վերանայվել, չնայած դրա համար ծախսվում է 35—38 ռուբլի։ Մեր կարծիքով պետք է վերանայվի այս նորմաները, որպեսզի մթերող կազմակերպությունները վնաս չկրեն։

Այս և նման կարգի փոփոխություններն անհրաժեշտաբար պահանջում են վերանայել ծախսերի և օգուտների նորմաները։ Մթերող կազմակերպությունները դրանք կրճատելու լայն հնարավորություններ ունեն։ Դրա համար անհրաժեշտ է ամեն կերպ ավելացնել մթերումների քանակը, կրճատել ավելորդ հաստիքները, վերանայել մթերողներին բարձր նորմաներով չարդարացնող աշխատավարձը, լիկվիդացնել ավելորդ փոխադրումները, մեքենայացնել աշխատատար պրոցեսները, ստեղծել նյութատեխնիկական բազա, պահպանել ու բարձրացնել մթերվող հումքի և մթերքների որակը։

Ս. Խ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

[1] Տե՛ս «Լենինյան ուղիով» ամսագիր, 1970 թ., № 10։

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԻՋԻՆ ԱՇԽԱՏԱՎԱՐՁԻ ԱՃԻ ՏԵՄՊԵՐԻ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Սոցիալիստական հասարակության զարգացման պրակտիկան լիովին հաստատեց սոցիալիզմի ժամանակ աշխատանքի արտադրողականության բարձրացման օրենքի էության ու գործողության մասին լենինյան դրույթների ճշմարտացիությունը։ Այսպես, ՍՍՀՄ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը, 1928 թ. համեմատությամբ, 1940 թ. ավելացել է 3,13 անգամ, 1950 թ.՝ 4,54, 1960 թ.՝ 9,27, իսկ 1965 թ.՝ 11,63 անգամ (տե՛ս Эстафета великих побед, М., 1967, стр. 61)։

Սոցիալիզմի բնորոշ առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումն ուղեկցվում է աշխատավորների միջին աշխատավարձի բարձրացմամբ։ Այսպես, եթե 1940 թ. ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվոր ծառայողների միջին ամսական աշխատավարձը կազմել է 33 ռուբլի, ապա 1950 թ. այն հասավ 63,9, 1960 թ.՝ 80,1, 1965 թ.՝ 95,6, 1967 թ.՝ 103 ռուբլու (առանց սպառման հասարակական ֆոնդերից լրացուցիչ վճարների ու արտոնությունների (տե՛ս СССР в цифрах в 1967 году, М., 1968, стр. 119)։

Սոցիալիզմի մյուս կարևոր տնտեսական օրինաչափությունն այն է, որ արտադրության զարգացման յուրաքանչյուր էտապում աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը պետք է գերազանցեն միջին աշխատավարձի աճի տեմպերին։ Դրությունն այդպես է պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցած ձեռնարկությունների մեծ մասում։ Բայց քիչ չեն նաև այն ձեռնարկությունները, որտեղ վերջին 2—3 տարում միջին աշխատավարձն ավելի արագ է աճել, քան աշխատանքի արտադրողականությունը։ Առանձին ձեռնարկություններում նկատվում է ավելի վատթարագույնը՝ նախորդ տարվա նկատմամբ աշխատանքի արտադրողականությունն իջել է, իսկ միջին աշխատավարձը զգալիորեն բարձրացել։ Օրինակ, ՀՍՍՀ գունավոր մետալուրգիայի վարչությունում (վարչության մասշտաբով) 1968 թ. աշխատանքի արտադրողականությունը (ըստ համախառն արտադրանքի), 1967 թ. նկատմամբ, կազմել է 96, իսկ միջին աշխատավարձը՝ 106,3 տոկոս, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում, համապատասխանաբար՝ 93,5 և 108,9, Երևանի սարքաշինական գործարանում՝ 95,9 և 103,8 տոկոս, Սևանի կատարող մեքենաների (ԶԻՄ) գործարանում 98,4 և 108,3 տոկոս (հանրապետության ձեռնարկությունների վերաբերյալ տվյալները վերցված են ՀՍՍՀ ԿՎՎ-ից)։ Հա-

կանալի է, որ սոցիալիստական հասարակությունը չի կարող անտարբեր լինել աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի տեմպերի նման հարաբերակցության նկատմամբ, որի հետ կապված է սոցիալիստական ընդլայնված վերարտադրության մի շարք կարևոր համամասնությունների պահպանումը (մասնավորապես, արտադրության և սպառման, սպառման և կուտակման, հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների, բնակչության գնողունակ պահանջարկի և սպառման առարկաների առաջարկի միջև և այլն)։

Ելնելով վերոհիշյալ երկու ցուցանիշների միջև նորմալ հարաբերակցության սահմանելու անհրաժեշտությունից, ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1968 թ. սեպտեմբերի 30-ի որոշմամբ նախատեսվեց, որ այն դեպքում, երբ պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցած ձեռնարկություններում միջին աշխատավարձի աճը գերազանցում է աշխատանքի արտադրողականության աճին, ապա նյութական խրախուսման ֆոնդի համապատասխան մասը պետք է փոխանցվի ձեռնարկության ռեզերվին՝ հաջորդ տարում աշխատանքի արտադրողականության հետագա աճն ու արտադրության արդյունավետության բարձրացումը խթանելու համար կամ հատկացվի ընթացիկ տարում սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդին։ Այս կարգը չի տարածվում այն ձեռնարկությունների վրա, որոնց կոլեկտիվի գործունեությունից անկախ պատճառներով, ըստ հաստատված պլանի, միջին աշխատավարձի նկատմամբ չի կարող ապահովվել աշխատանքի արտադրողականության ավելի բարձր աճ։

ՍՍՀՄ Մինիստրների սովետի նշված որոշման 8-րդ կետը, ըստ էության, սահմանում է այն կապն ու փոխադարձ պայմանավորվածությունը, որ պետք է լինի երկու ցուցանիշների աճի տեմպերի և նյութական խրախուսման ֆոնդի օգտագործման միջև։ Բայց, այնուամենայնիվ, հարաբերությունների այս ոլորտում դեռևս կան բազմաթիվ հարցեր, որոնց լուծումը տնտեսագիտության ամենահրատապ խնդիրներից մեկն է։ Այսպես, վիճելի է այն, թե արդյոք արտադրության բոլոր ճյուղերի ձեռնարկությունների համար անհրաժեշտ է սահմանել աշխատանքի արտադրողականությունն արտահայտող մեկ ընդհանուր ցուցանիշ, թե՞ այն տարբեր ճյուղերում պետք է տարբեր լինի։ Քննարկվում է նաև այն հարցը, թե հնարավոր է շատ թե քիչ երկարատև ժամանակաշրջանի սահմաններում ձեռնարկությունների համար սահմանել աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի տեմպերի հարաբերակցության կայուն խմբային նորմատիվներ։

Նախապես նշենք, որ չի կարելի ձեռնարկությունների խմբերի համար սահմանել աշխատանքի արտադրողականության և դրա ու միջին աշխատավարձի աճի հարաբերակցության երկարատև գործողության կայուն նորմատիվներ։ Ոչ մի նորմատիվ ի վիճակի չէ ճշտորեն հաշվի առնելու (այն էլ երկարատև ժամկետներում) մշտապես կատարվող այն փոփոխությունները, որոնք պայմանավորում են վերոհիշյալ ցուցանիշները։

Նշված հարցերն այժմ տնտեսագետներն ակտիվ քննարկում են և արել են մի շարք առաջարկություններ։ Մասնավորապես, աշխատանքի արտադրողականության ցուցանիշը որոշելու վերաբերյալ եղած առաջարկությունները կարելի է խմբավորել հետևյալ կերպ. աշխատանքի արտադրողականությունը ձեռնարկություններում որոշել՝ 1) արտադրանքի աշխատատարության ցուցանիշի հիման վրա, 2) մշակման նորմատիվային արժեքի, 3) զուտ (կամ պայմանական զուտ) արտադրանքի հիման վրա, 4) մեկ ընդհանուր ցուցանիշով հնարավոր չէ որոշել արտադրության բոլոր ճյուղերի ձեռնարկությունների աշխատանքի արտադրողականության մակարդակը, հետևաբար և միջին աշխատավարձի հետ նրա ճշգրիտ հարաբերակցությունը։ Ուստի, անհրաժեշտ է մտցնել աշխատանքի արտադրողականության դիֆերենցված ճյուղային ցուցանիշներ և գտնել դրանց ընդհանուր ճյուղային և այնուհետև ամբողջ արդյունաբերության համար ընդհանուր ցուցանիշին անցման եղանակը, 5) որպես աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի տեմպերի հարաբերակցությունն արտահայտող ցուցանիշ ընդունել իրացված արտադրանքի 1 ռուբլուն ընկնող աշխատավարձի ծախսումները։

Անհրաժեշտ է նշել, որ վերջին ցուցանիշը չի կարող ծառայել իր նպատակին, քանի որ այն անմիջականորեն չի արտահայտում ո՛չ աշխատանքի արտադրողականությունը, ո՛չ միջին աշխատավարձը և ո՛չ էլ դրանց փոփոխությունների հարաբերակցությունը։ Օրինակ, Երևանի ժամացույցի գործարանում 1 ռուբլի իրացված արտադրանքի վրա աշխատավարձի ծախսումները 1968 թ., 1967 թ. նկատմամբ, կազմել են 91,5 տոկոս (1967 թ. եղել է 43,91 կոպ., իսկ 1968-ին՝ 40,16 կոպ.), սակայն այս թվերը ոչ մի պատկերացում չեն տալիս աշխատանքի արտադրողականության, միջին աշխատավարձի ու դրանց միջև եղած իրական հարաբերակցության մասին։ Մինչդեռ խնդիրը հենց մեկ աշխատողի արտադրողականության և նրա միջին աշխատավարձի բացարձակ մակարդակների ու աճի տեմպերի հարաբերակցության որոշումն է։

Աշխատանքի արտադրողականության, դրա ու միջին աշխատավարձի աճի տեմպերի հարաբերակցության որոշման ցուցանիշների վերաբերյալ եղած և հետագայում արվող առաջարկություններից վերջնական ընտրություն կատարելիս, պետք է նկատի ունենալ այն, թե դրանցից որն է ավելի ճիշտ արտահայտում աշխատանքի արտադրողականության փոփոխությունների իրական պատկերը, որ ցուցանիշն է համեմատաբար ավելի քիչ ենթարկվում ապրանքա-արժեքային հարաբերությունների որոշ հակասականության և արժեքային մեծությունների կրկնահաշվարկման ազդեցությանը։

Դրա համար անհրաժեշտ է վերլուծել նշված ցուցանիշների դրական և բացասական մոմենտներն աշխատանքի արտադրողականությունը որոշելիս։ Հանրահայտ են այս գործում համախառն և ապրանքային արտադրանքի դրական ու բացասական կողմերը։ Դրանք իրենց դերը գրեթե անթերի կարող են կատարել միայն անփոփոխ գների և արտադրանքի կայուն ասորտիմենտի դեպքում։ Սակայն տնտեսական պրակտիկայում հատկապես վերջինի ապահովելը այնքան հեշտ չէ. այստեղ իր բացասական դերն է խաղում գնովի նյութերի, կիսաֆաբրիկատների և շինվածքների արժեքի փոփոխությունն արտադրանքի արժեքի ընդհանուր կազմում, որը որպես ուրիշ կոլեկտիվի աշխատանքի արդյունք միշտ հանդես է գալիս տվյալ ձեռնարկության արտադրանքի արժեքի մեջ և աշխատանքի արտադրողականությունը հաշվարկելիս դրսևորվում որպես վերջինիս գործունեության արդյունք։ Առաջ է գալիս ձեռնարկության համար «ձեռնտու» և «ոչ-ձեռնտու» արտադրանքի հարցը։

Համախառն և ապրանքային արտադրանքին հատուկ նշված թերությունները հատուկ են նաև իրացված արտադրանքի ցուցանիշին։ Այստեղ դրանց ավելանում է նաև այն, որ պատրաստի, բայց չիրացված արտադրան-

քի տարեվերջի և տարեսկզբի մնացորդների տարբերությունը վճռական դեր են խաղում աշխատանքի արտադրողականությունը որոշելիս։ Օրինակ՝ Երևանի գեղարվեստական ժամացույցների գործարանում 1968 թ., 1967 թ. նկատմամբ, աշխատանքի արտադրողականությունը, ըստ համախառն արտադրանքի, կազմել է 136,9, իսկ ըստ իրացված արտադրանքի՝ 147,2 տոկոս, ժամացույցի գործարանում այդ թվերը համապատասխանաբար կազմել են 106,6 և 115,2, ոսկերչական գործարանում՝ 129,4 և 131,5, «Կամոպրիբոր»-ում՝ 121,8 և 132,9 տոկոս։ Քանի որ այդ ձեռնարկություններում համախառն և ապրանքային արտադրանքը հավասար են, ապա վերոհիշյալ հանգամանքը, հիմնականում, բացատրվում է պատրաստի արտադրանքի տարեսկզբի և տարեվերջի մնացորդների տարբերությամբ։ Ի տարբերություն համախառն արտադրանքի, երբ կիսաֆաբրիկատների և անավարտ արտադրության մնացորդները անմիջականորեն կապված են տվյալ ձեռնարկության գործունեության հետ և պայմանավորված են դրանով, ապա պատրաստի արտադրանքի մնացորդները միշտ չէ, որ տվյալ ձեռնարկության գործունեության հետևանք են. շատ դեպքում ձեռնարկությունն ի վիճակի չէ ինքնուրույն ուղղել ստեղծված դրությունը։

Պատրաստի արտադրանքի իրացումը պայմանավորված է նաև մատակարարող, իրացնող, տրանսպորտային կազմակերպությունների (հատկապես երկաթուղու) աշխատանքով, գնորդների վճարունակությամբ և պարտաճանաչությամբ։ Ուստի, ինչպես իրավամբ նշում է Բ. Բուխաննիչը, իրացված արտադրանքի կատարողականի ցուցանիշի օգնությամբ չի կարելի գնահատել արտադրական կոլեկտիվի գործունեությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում (տե՛ս «Вопросы экономики» № 2, 1969, стр. 52)։ Այն փաստորեն մի տարվա գործունեության արդյունքների մի մասը փոխանցում է մյուս տարին և աղավաղում աշխատանքի արտադրողականության իրական պատկերը։ Եթե վերանանք պատրաստի արտադրանքի մնացորդների տարբերությունից, ապա կկորչի իրացված արտադրանքի ցուցանիշի իմաստը, քանի որ արտադրանքն իրացված է համարվում, երբ դրա արժեքն արդեն վճարված է։

Ինչ վերաբերում է զուտ արտադրանքի ցուցանիշին, ապա աշխատանքի արտադրողականության որոշման գործում նրան հատուկ թերությունները անհնար են դարձնում այս բնագավառում դրա միջոցով ձեռնարկության գործունեության գնահատումը։ Նախ, քանի որ ձեռնարկություններում այդ ցուցանիշի մեծությունը որոշող հիմնական գործոններ են աշխատավարձի ֆոնդն ու շահույթը, ուստի, այս դեպքում աշխատանքի արտադրողականության մակարդակը անմիջականորեն պայմանավորված կլինի շահույթի բացարձակ մեծությամբ։ Այդ հանգամանքը ձեռնարկություններին կդրդի ավելացնել արդյունքի այն տեսակների արտադրությունը, որոնց գների մեջ շահութաբերությունն ավելի բարձր է, ի վնաս արտադրանքի այն տեսակների, որոնց արտադրությունը հասարակության համար անհրաժեշտ է, բայց մեծածախ գներում շահութաբերությունը համեմատաբար ցածր է։ Քանի որ աշխատանքի արտադրողականության մակարդակն այժմ կարևոր նշանակություն է ձեռք բերում նյութական խրախուսման ֆոնդն օգտագործելիս, ուստի ավելի սրությամբ է դրվում ձեռնարկության համար «ձեռնտու» և «ոչ-ձեռնտու» արտադրանքի հարցը։

Իհարկե, գինը, որպես արտադրության տնտեսական խթանման կարևոր լծակ, պետք է ձեռնարկություններին դրդի իրենց համար նպաստավոր պայմաններում՝ հասարակությանն առավել անհրաժեշտ արտադրանքի տե-



սակների արտադրության մեջ։ Սակայն գնագոյացման այժմյան պայմաններում գները դեռևս ի վիճակի չեն ապահովելու արտադրանքի առանձին տեսակների արտադրության ընտրության մեջ հասարակական և կոլեկտիվ շահերի հարմոնիկ զուգակցումը։ Միաժամանակ չպետք է մոռանալ, որ սոցիալիստական հասարակարգում ամենակատարելագործված գներն անգամ կոլեկտիվ և հասարակական շահերի հարմոնիկ զուգակցումն ապահովող տնտեսական լծակների սիստեմի օղակներից մեկն են և ոչ թե ամբողջական սիստեմը։

Արտադրության մասնագիտացման խորացման համեմատ, երբ հետզհետե ձեռնարկությունները դառնում են տեխնիկապես միատարր արտադրանք թողարկող, ավելի է ընդլայնվում աշխատանքի արտադրողականության հաշվառման գործում բնեղեն և պայմանական-բնեղեն ցուցանիշների կիրառման հնարավորությունը։ Սակայն, քանի դեռ այն սահմանափակ է, արտադրության մյուս ճյուղերում, որտեղ դրանց կիրառումն անհնար է, այժմ (ելնելով ճյուղի առանձնահատկությունից) անհրաժեշտ է կիրառել հետևյալ երեք արժեքային ցուցանիշներից որևէ մեկը. որտեղ այն արդարացրել է իրեն, կիրառել մշակման նորմատիվային արժեքը, արտադրական երկարատև ցիկլով ձեռնարկություններում (ծանր մեքենաշինություն, նավաշինություն և այլն)՝ համախառն արտադրանքը, իսկ մնացած ճյուղերում՝ ապրանքային արտադրանքի ցուցանիշը։ Ինչպես տեսանք, այդ ցանկի մեջ չի կարելի ներառել ոչ իրացված և ոչ էլ զուտ արտադրանքի ցուցանիշները։

Վերը շարադրածից երևում է, որ մի ընդհանուր ցուցանիշի միջոցով հնարավոր չէ որոշել արդյունաբերության բոլոր ճյուղերի ձեռնարկությունների աշխատանքի արտադրողականության մակարդակը և անհրաժեշտ է տարբեր ճյուղերի համար կիրառել դիֆերենցված ցուցանիշներ։ Դրա հետ միասին, քանի որ դեռևս չի գտնված դիֆերենցված ցուցանիշներից ճյուղի կամ արդյունաբերության մասշտաբով ընդհանուր ցուցանիշին անցման (կամ առաջինները վերջինիս վերածելու) եղանակը, նպատակահարմար կլիներ, իբրև այդպիսի միջոց, օգտագործել համախառն արտադրանքի ցուցանիշը։ Այսինքն՝ ձեռնարկությունների հաշվետվություններում աշխատանքի արտադրողականությունն արտացոլել երկու ցուցանիշով՝ ըստ դիֆերենցված և համախառն արտադրանքի։ Ընդ որում, ձեռնարկության գործունեությունը գնահատել ըստ դիֆերենցված ցուցանիշի, իսկ համախառն արտադրանքի ցուցանիշն օգտագործել միայն ճյուղի և ամբողջ արդյունաբերության մասշտաբով՝ աշխատանքի արտադրողականության մակարդակը որոշելու համար։

Աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի տեմպերի հարաբերակցության հարցը քննելիս, կարևոր է նաև վերլուծել միջին աշխատավարձի աճը ըստ առանձին աղբյուրների՝ աշխատավարձի և նյութական խրախուսման ֆոնդի։ Դա կարևոր է տնտեսական ռեֆորմի պայմաններում աշխատավարձի բարձրացման գործում այդ երկու աղբյուրների նշանակությունը ցույց տալու և այն պատկերացումից խուսափելու համար, թե միջին աշխատավարձի աճը, երբեմն դրա գերազանցումն աշխատանքի արտադրողականության աճից, միայն նյութական խրախուսման ֆոնդերի օգտագործման հետևանք է։

Տնտեսավարման նոր սիստեմին անցած մի շարք ձեռնարկությունների տնտեսական գործունեության ցուցանիշների վերլուծությունը ցույց է տալիս, որ միջին աշխատավարձի ավելացումը, առայժմ մեծ մասամբ տեղի է ունե-

*նում աշխատավարձի ֆոնդի հաշվին։ Օրինակ, Երևանի գեղարվեստական ժամացույցների գործարանում միջին աշխատավարձը, 1968 թ. 1967 թ. նկատմամբ, աշխատավարձի ֆոնդի հաշվին ավելացել է 16,4, իսկ նյութական խրախուսման՝ 4,9 տոկոսով, Երևանի ժամացույցի գործարանում, համապատասխանաբար՝ 3,6 և 1,8 տոկոսով։ Իսկ այն ձեռնարկություններում, որտեղ աշխատանքի արտադրողականության աճը ետ է մնում միջին աշխատավարձի աճից, վերջինս ավելացել է հիմնականում աշխատավարձի ֆոնդի հաշվին։ Այսպես, նույն ժամանակաշրջանում, Երևանի սարքաշինական գործարանում միջին աշխատավարձը աշխատավարձի ֆոնդի հաշվին ավելացել է 3,3, իսկ նյութական խրախուսման ֆոնդի հաշվին՝ 0,5 տոկոսով, Երևանի ճշգրիտ էլեկտրասարքերի գործարանում այդ թվերը համապատասխանաբար եղել են՝ 6,9 և 0,3, Սևանի կատարող մեքենաների գործարանում՝ 7,7 և 0,6 տոկոս։*

*Այս բոլորը վկայում են նաև այն մասին, որ շահույթի հաշվին նյութական խրախուսման հատուկ ֆոնդերի ստեղծումը չի թուլացնում աշխատավարձի ֆոնդի դերն ու նշանակությունը արտադրության տնտեսական խթանման գործում։ Աշխատավարձի ֆոնդը եղել է և դեռևս երկար կմնա արտադրության տնտեսական խթանման սիստեմի էական օղակը։ Ուստի, աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության բարձրացման շահերը պահանջում են այսուհետև ևս հետևողականորեն կատարելագործել աշխատավարձի ֆոնդի ռացիոնալ օգտագործման ուղիները՝ աշխատավարձի ձևերն ու սիստեմները, աշխատանքի նորմավորումը, տարիֆային սիստեմն ու արտադրանքի վարձատրման միավոր գների որոշման պրակտիկան, անձնական և կոլեկտիվ նյութական շահագրգռվածության սկզբունքի կիրառումը և, վերջապես, արտադրանքի ու սպառման չափի վրա հասարակության և պետության կողմից իրականացվող վերահսկողության ձևերն ու մեթոդները։*

*Աշխատանքի արտադրողականության մակարդակը, դրա ու միջին աշխատավարձի աճի տեմպերի հարաբերակցությունը բնութագրող ցուցանիշները որակական բարդ ցուցանիշներ են իրենց մեջ սինթեզում են ձեռնարկության արտադրա-տնտեսական գործունեության բոլոր կողմերը։ Դրանց բարելավումը ենթադրում է տնտեսավարման սոցիալիստական մեթոդների հետևողական կատարելագործում, սոցիալիստական օրինաչափության խստագույն պահպանում։ Այս տեսակետից անգնահատելի նշանակություն ունեցան մեր կուսակցության ու ժողովրդի միահամուռ հավանությանն ու ջերմ պաշտպանությանն արժանացած ՍՄԿԿ Կենտկոմի 1969 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումները, որոնցում ամենայն հստակությամբ ընդգծվեց, որ ձեռնարկությունների ու հաստատությունների կուսկազմակերպությունների ղեկավար աշխատողների, սոցիալիստական հասարակության բոլոր անդամների առաջնահերթ խնդիրն է՝ այսուհետև ևս ամենայն խստությամբ պահպանել կուսակցական ու պետական կարգապահությունը, անհաշտ լինել ամեն կարգի խախտումների ու թերությունների նկատմամբ։*

Հ. Ե. ՄԿՐՏՉՅԱՆ





ՍԱՆՁՈ ՆՈՍԱԿԱ

*Ճապոնիայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի նախագահ*

# ԻՆՉՆ ԱՊԱՀՈՎԵՑ ՃԱՊՈՆԻԱՅԻ ԿՈՄԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ՃԱՊՈՆԻԱՅՈՒՄ ԵՎ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ

Նախանցյալ տարի 1968 թ. մենք տոնեցինք Կ. Մարքսի ծննդյան 150-ամյակը, իսկ այս, 1970 թ.՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը։ Այսօր, երբ Մարքսի, Էնգելսի, Լենինի գաղափարներն ու թեորիաները մարմնավորվում են համաշխարհային ողջ պատմությունն ալեկոծող վիթխարի շարժումների մեջ, և, միաժամանակ, երբ բազմապիսի նոր խնդիրներ են ծառանում, առավել անհրաժեշտ են դառնում մարքսիզմ-լենինիզմի գաղափարական ու թեորիական ժառանգության խոր ուսումնասիրումը, դրա ստեղծագործական կոնկրետացումը, յուրաքանչյուր երկրի ժողովրդի հեղափոխական գործի նոր առաջընթացը։

Ճապոնիայի մեր կոմունիստական կուսակցությունը (ՃԿԿ), իր ստեղծման իսկ օրից, 1922 թ., հանդիպելով զանազան փորձությունների, բացարձակ միապետության, ռազմա-ոստիկանական իշխանության ու նրա վարած միմյանց հաջորդող պատերազմների, ինչպես նաև ամերիկյան իմպերիալիզմի ու ճապոնական մոնոպոլիստական կապիտալի հետպատերազմյան տիրապետության պայմաններում, մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո, անհողդողդ առաջ է ընթացել։ Մեր կուսակցությունը Լենինի ծննդյան 100-ամյակը նշում է դրան կոչելով իր բոլոր անդամներին և մտադիր է այս պատեհ առիթն օգտագործել իր հետագա առաջընթացի համար։ Ճապոնիայում դեռևս անցյալ տարի ավարտվեց Լենինի 45-հատորանոց Երկերի լիակատար ժողովածուի հրատարակությունը։ Բացի այդ, մենք որոշել ենք Լենինի ծննդյան 100-ամյակի պատվին հրատարակել Լենինի Երկերի ժողովածուն 10 հատորով, որը կազմելու է մեր կուսակցությունը։ Այս տարի արդեն լույս է տեսել ժողովածուի առաջին հատորը։ Այդ հրատարակության հիմնական նպատակն է՝ առաջին. հանրամատչելի դարձնել լենինյան ողջ աշխատությունների գաղափարներն ու հիմնական թեզիսները։ Երկրորդ. նկատի առնելով մեր երկրի կոնկրետ պատմական պայմանները և սպեցիֆիկ առանձնահատկությունները, պատասխանել այն հարցին, թե ինչպես լուծել Ճապոնիայի բանվոր դասակարգի և ժողովրդի պրակտիկ խնդիրները։ Երրորդ. նշել միջազգային կոմունիստական շարժման և մարքսիզմ-լենինիզմի առջև այսօր ծառացած լուրջ փորձությունների ճիշտ հաղթահարման խնդիրները լուծելու ուղիները, նրանց նոր պատմական զարգացման նվաճումների խնդիրները։ Բացի այդ, ՃԿԿ կազմակերպում է նաև հոբելյանական դասախոսություններ, Կենտրոնական կոմիտեի մամուլի յուրաքանչյուր օրգանի հոբելյանական հատուկ թողարկումները, անցկացնում տոնական բազմապիսի միջոցառումներ։ Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված հոբելյանական այդ միջոցառումները միավորվում են ՃԿԿ XI համագումարի նախապատրաստման ողջ գործունեությամբ, որը բացվելու է ընթացիկ տարվա հուլիսի 1-ին և մեծ նշանակություն կունենա Ճապոնիայի հեղափոխական շարժման հետագա զարգացման համար։

## ՃԱՊՈՆԻԱՅԻ ՆԵՐԿԱ ԻՐԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԵՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

Վ. Ի. Լենինը վաղուց ի վեր մեծ հետաքրքրություն է հանդես բերել Ասիայի, Արևելքի նկատմամբ և ավելի քան կես դար առաջ մատնանշել, որ «...Ասիայում մեծագույն համաշխարհային փոթորիկների նոր աղբյուր բացվեց», որ «...այդ փոթորիկների ու Եվրոպայի վրա նրանց «հակադարձ անդրադարձման» «դարաշրջան է սկսվում» (Երկեր, հ. 18, էջ 739)։

Հասկանալի է, որ լենինյան վերլուծությունը խոր ու ճշմարտացի էր: Հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Ասիայի ժողովուրդների ազատագրական, հանուն դեմոկրատիայի ու սոցիալիզմի հեղափոխական շարժումների զարգացումը հետևողականորեն հաստատեց, որ այդ շրջանը «համաշխարհային մեծ փոթորիկների նոր աղբյուր է»:

Ամերիկյան նեխող իմպերիալիզմն այսօր, մի կողմից՝ հարմարվում է հակաիմպերիալիստական ուժերի միջազգային հետպատերազմյան պայքարի ընթացքին ու արդյունքներին, մյուս կողմից՝ օգտագործելով միջազգային կոմունիստական շարժման ու սոցիալիզմի ճակատի անջատվածությունը, իր ագրեսիվ քաղաքականության սուր ծայրն ուղղում է Ասիայի դեմ: Այդ հստակ կերպով հաստատեց Վիետնամում ամերիկյան իմպերիալիզմի մղած 60-ական թվականների զավթողական պատերազմը: Վիետնամի պրոբլեմը իմպերիալիստների հետ հակաիմպերիալիստական ուժերի միջազգային հակամարտությունների կենտրոնական է դարձել: Խուսափելով Սովետական Միության, Չինաստանի և սոցիալիստական այլ խոշոր տերությունների հետ անմիջական ընդհարումից, ամերիկյան իմպերիալիզմը ձգտում է իր ագրեսիվ ջանքերը կենտրոնացնել ոչ-մեծ սոցիալիստական երկրների դեմ և ջախջախել նրանց զատ-զատ: Մեր կուսակցությունն այդ նոր քաղաքականությունն անվանում է «զատ-զատ ջախջախման քաղաքականություն»: Չնայած այդ քաղաքականության կրախին, ամերիկյան իմպերիալիզմը ջանում է այն շարունակել նոր դիմակի տակ: Նիքսոնի կառավարության վարած «միջազգային լարվածության թուլացման» քաղաքականությունը լիովին խաբուսիկ է: Այդ կառավարությունը, «պատերազմի վիետնամացման» ճանապարհով կրճատելով ամերիկյան բանակի կորուստները, մտադիր է Վիետնամի ագրեսիվ պատերազմը վերածել երկարատև կամպանիայի և Հարավային Վիետնամում պահպանել իր իշխանությունը: Բացի այդ, Լաոսում տարածելով պատերազմի հրդեհը, նա ջանում է այնտեղ «երկրորդ Վիետնամ» ստեղծել, միաժամանակ բուռն ագրեսիա է նախապատրաստում Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Հանրապետության դեմ: Ինչպես վկայում է նաև գուամյան դոկտրինան, այսօրվա նոր առանձնահատկությունն այն է, որ ամերիկյան իմպերիալիզմը փորձում է Ասիայում իր ագրեսիվ քաղաքականությունն իրականացնել, «բեռը դնելով» ասիական հակակոմունիստական երկրների վրա և հենվում է նոր բազմակողմանի ռազմական դաշինքին:

Ճապոնիան ևս գտնվում է ամերիկյան իմպերիալիզմի այդ պլանների կենտրոնում:

1969 թ. նոյեմբերին Ճապոնիայի և ԱՄՆ-ի կառավարությունների ղեկավարների հանդիպումն ու նրանց համատեղ հայտարարության մեջ գործարքի առարկա դարձավ ամերիկյան իմպերիալիզմի ամբողջ քառորդ դար անօրինականորեն օկուպացված Օկինավայի պրեֆեկտուրայի (բնակչությունը 1 մլն մարդ), վարչական իրավունքները 1972 թ. Ճապոնիային վերադարձնելու խոստումը: Այդ հանդիպումն ու հայտարարությունը Ճապոնիային Ասիայի նկատմամբ ագրեսիվ քաղաքականության մեջ առավել ակտիվ մասնակցություն հարկադրող ամերիկյան իմպերիալիզմի պահանջների համատեղ արգասիք են և ճապոնական մոնոպոլիստական կապիտալի իմպերիալիստական մտահղացումները, կապիտալ, որը համագործակցելով ամերիկյան իմպերիալիզմի հետ, ձգտում է Ասիայում իր ինքնուրույն ազդեցությունը վերականգնել: Այդ նշանակում է՝ բացասական առումով փոփոխել ճապոնա-ամերիկյան «անվտանգության պայմանագիրը», ճապոնա-ամերիկյան ռազմական դաշինքին առավել ագրեսիվ, ռեակցիոն բնույթ տալ, այն վերածել Ասիայի բազմակողմանի ռազմական բլոկի միջուկի: Ընդ որում, Ամերիկայի Միացյալ Նահանգների ենթակայության պայմաններում մի նոր, ավելի բարձր աստիճանի են ելնում ճապոնական միլիտարիզմի ու իմպերիալիզմի վերածնունդն ու զորեղացումը:

Վերջին տարիներս ճապոնական մոնոպոլիստական կապիտալը, շնորհիվ աշխարհում կապիտալի ամենաարագ կուտակման, կապիտալիստական երկրների շրջանում, ազգային համախառն արտադրանքի ծավալով երկրորդ տեղը գրավեց և շեշտակիորեն վերականգնեց ու ամրապնդեց իր միլիտարիզմն ու իմպերիալիզմը: Ինչ վերաբերում է Ճապոնիայի ռազմական ուժերի տեմպերի աճին, ապա, ինչպես ակնհայտորեն ցույց են տալիս փաստերը, վերջին հինգ տարիների ընթացքում, ռազմական ծախսերի ավելացման տոկոսն այստեղ, կապիտալիստական գլխավոր տերությունների մեջ, ամենաբարձրն է: Ճապոնիան շեշտակիորեն ավելացնելով իր մոնոպոլիաների արտադրանքի ու կապիտալի արտահանումը, շարունակելով համագործակցել Ասիայում ամերիկյան տիրապետության իրականացման համար, նպաստում է իմպերիալիզմի ընդլայնմանը Հարավ-Արևելյան Ասիայում: Ամերիկա-ճապոնական կառավարող շրջանները ջանում են երկարաձգել ճապոնա-ամերիկյան «անվտանգության պայմանագիրը», որի գործողության տասնամյա ժամկետը լրանում է 1970 թ. հունիսի 22-ին: Նրանք փորձում են ճապոնա-ամերիկյան ռազմական դաշինքը Ասիայի տիրապետության առանցքը դարձնել:

Այդ պայմաններում ավելի ու ավելի կարևոր է դառնում ՃԿԿ դերը: Ճապոնիան միակ խիստ զարգացած կապիտալիստական երկիրն է Ասիայում: Ամերիկյան իմպերիալիզմի համար այն ագրեսիայի հիմնական հենակետն է դառնում, և, ինչպես ասում են, «եթե չլիներ Ճապոնիան, չէր լինի նաև Վիետնամի պատերազմը»: Մեր կուսակցությունը կմիավորի ժողովրդական մասսաներին, կստեղծի հզոր միասնական ճակատ, դրա հիման վրա՝ կոալիցիոն կառավարություն, չեղյալ կհայտարարի «անվտանգության պայմանագիրը» և կհիմնի խաղաղ, անկախ, դեմոկրատական Ճապոնիա, որը չի մտնի որևէ ռազմական բլոկի մեջ և կվարի չեզոք քաղաքականություն: Դա հսկայական նշանակություն կունենա Ասիայի ողջ իրադրության համար:

ԱՄՆ-ի ենթակայության տակ գտնվող ճապոնական միլիտարիզմի և իմպերիալիզմի վերականգնումն ու ամրապնդումը ո՛չ միայն չեն համապատասխանում ճապոնական ժողովրդի անկախության, խաղաղության և չեզոքության պահանջներին, այլև սրում են կառավարող շրջանների թշնամական վերաբերմունքը մասսաների, նրանց կյանքի պաշտպանությանն ուղղված պահանջների նկատմամբ:

Ճապոնական մոնոպոլիայի վերականգնման ու ամրապնդման համար տնտեսական բազա դարձած էկոնոմիկայի նպատակասլաց աճը 60-ական թվականներին սատարվում էր օտարերկրյա և ազգային կապիտալի ներդրումներով, մոնոպոլիստական կապիտալի արագ կուտակմամբ, բանվոր դասակարգի և աշխատավոր ժողովրդի դաժան շահագործմամբ ու կողոպտմամբ: Դա անխուսափելիորեն ուղեկցվում էր խիստ ցածր աշխատավարձով, ծանր հարկերով, գների բարձրացմամբ, ինֆլյացիայով և սրում ջրի ու օդի աղտոտման, տրանսպորտի հարուցած դժբախտ դեպքերի և քաղաքային այլ պրոբլեմներ: Արդյունքը՝ ժողովրդի մեջ պայքարի վիթխարի էներգիա էր կուտակվում: Տվյալ ժամանակաշրջանը բնորոշվում էր նաև նրանով, որ 10 տարվա ընթացքում գյուղատնտեսությունից հեռացել են գյուղական 4 մլն բանող: Միջակ և մանր գյուղացիները իրենց դժգոհությունն ու զայրույթն են արտահայտում գյուղատնտեսության կապիտալիստական բռնի վերակառուցման համար: Է՛լ ավելի է մեծանում ՃԿԿ դերը նաև ժողովրդի կյանքի պաշտպանության գործում:

Այդ պայմաններում պայքարող մեր կուսակցությունը 1969 թ. վերջերին կայացած համընդհանուր պառլամենտական ընտրություններին դիմակայեց լիբերալ-դեմոկրատական կուսակցության կառավարության հակազգային, հակաժողովրդական քաղաքականությունը և առաջ քաշեց այդքան հստակ մատնանշող նախընտրական հեռատես ծրագիր, որի կատարմանը պետք է ձգտեն Ճապոնիայի բանվոր դասակարգն ու ժողովուրդը: Այդ ընտրություններին մեր կուսակցությանը տված ձայների թիվը ավելացավ մեկ միլիոնով. նա ընդամենը ստացավ 3200 հազար ձայն— դա ներկայացուցիչների պալատում հետպատերազմյան ողջ ժամանակաշրջանի ընտրությունների ընթացքում ստացված ձայների ամենամեծ թիվն է, ամբողջ ձայների մոտ 7 տոկոսը: Ներկայացուցիչների պալատում ընտրված կոմունիստների թիվը այդ պալատի արձակումից առաջ եղած չորս հոգուց հասավ 14-ի: Լիբերալ-դեմոկրատական կուսակցությանը տրված ձայների տոկոսն իջավ, սակայն վերջինս իր տեղերի թիվն պառլամենտում ավելացրեց և շարունակում է մեծամասնություն պահպանել: Դեմոկրատական սոցիալիզմի աջ հակակոմունիստական կուսակցությունը մնաց մինչ ընտրությունների վիճակում: Կոմեյտոյի հակակոմունիստական պաշտպանողական կրոնական կուսակցությունը ստացավ 47 դեպուտատական տեղ, դրանց թիվը գրեթե կրկնապատկեց: Սոցիալիստական կուսակցությունը, մինչ ներկայացուցչական պալատի արձակումն ունեցած 134 տեղի փոխարեն 90 դեպուտատական տեղ ստանալով, զգալի չափով նահանջեց:

Համընդհանուր ընտրություններում մեր կուսակցության ձեռք բերած հաջողությունը բարձրացրեց նրա քաղաքական տեսակարար կշիռը, նոր պայմաններ ստեղծեց քաղաքական ուժերի վերակառուցման և ճապոնական ժողովրդի պայքարի համար: Առավել ակնհայտ դարձավ, որ մեր կուսակցությունը, իրոք այն գլխավոր քաղաքական ուժն է, որը 70-ական թվականներին իսկապես հակադրվելու է լիբերալ-դեմոկրատական կուսակցությանը: ՃԿԿ զարգացման պատմական նոր փուլ է սկսվում: Մեր կուսակցության պատմական պարտքի տեսանկյունից, նրա առաջընթացը միայն առաջին քայլն է, բայց նա առավել լայն մասսաների շրջանում ամրապնդեց հավատը մարքսիզմ-լենինիզմի հաղթանակի նկատմամբ:

## ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԿԻՐԱՌՈՒՄԸ

50-ական թվականներին ամերիկյան օկուպացիոն իշխանություններն ու ռեակցիոն ուժերը, օգտվելով Կորեայի նվաճողական պատերազմից, ճնշում գործադրեցին մեր կուսակցության վրա: Դրա հետևանքով, ինչպես և միջազգային գործոնների ազդեցության տակ, ՃԿԿ-ում պառակտում առաջացավ, դրան մեծ հարված հասցրեց ուլտրաձախ, ավանտյուրիստական տակտիկան, որի վրա էր հենվում անջատված խմբավորումը: Այդ պայմաններում զգալի չափով թուլացավ նաև կոմկուսակցու-

մասներ կստեղծեն սոցիալիստական հեղափոխության անցնելու համար:

Մեր կուսակցության մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական կիրառման երկրորդ կարևոր պրոբլեմը—ՃԿԿ քաղաքականության սիստեմատիկ զարգացումն է՝ լայն մասսաներին, բարձր զարգացած մոնոպոլիստական կապիտալիզմի սոցիալական այդ բարդ պայմաններում հեղափոխության կողմը գրավելու համար:

Մեր կուսակցությունը հատկապես լուրջ ուշադրություն է նվիրել քաղաքական գործունեությանը, որը մասսաների պահանջների բավարարմանն ուղղված կուսակցական կոնկրետ, սիստեմատիկ կուրս է մատնանշել: Նա վերջիններիս ամենօրյա կենսական շահերն ու պահանջները շաղկապել է ծրագրում բնութագրված հեղափոխական պարտքի հետ, այդպիսով դարձել նրանց կապող օղակը: Լենինը բազմիցս ընդգծել է «մասսաների սեփական քաղաքական փորձի» կարևորությունն այն բանից հետո, երբ նրանք կհասնեն հեղափոխական գիտակցության: Նա սովորեցնում էր. «... որպեսզի իսկապես ամբողջ դասակարգը, որպեսզի աշխատավորների և կապիտալի կողմից ճնշվածների իսկապես լայն մասսաները հասնեն այդպիսի դիրքի (ավանգարդի աջակցության դիրքին— Ս. Ն.), դրա համար միայն պրոպագանդան, միայն ագիտացիան քիչ է: Դրա համար այդ մասսաները պետք է սեփական քաղաքական փորձ ունենան» (Երկեր, հ. 31, էջ 99):

Լայն մասսաները հեղափոխության անհրաժեշտությունը գիտակցում են ո՛չ միայն թեորիապես, այլև իրենց քաղաքական փորձի շնորհիվ: Ժամանակակից Ճապոնիայի պայմաններում, ուր վերականգնման և ԱՄՆ-ից կախման մեջ գտնվող միլիտարիզմի և իմպերիալիզմի ամրապնդման ազդեցությամբ ավելի են սրվում խոր հակասությունները, աշխատավոր մասսաները կենսական բազմատեսակ պահանջներ են ներկայացնում: Կուսակցության քաղաքականությունը ցույց է տալիս այդ պահանջների կոնկրետ բավարարման ուղին և ընդգծում, որ միայն դեմոկրատական իշխանությունը կարող է ապահովել դրանց համակողմանի լուծումը: Այդպիսով, հարկավոր է մասսաների կենսական շահերից ելնելով իրենց իսկ սեփական փորձի միջոցով զարգացնել դեմոկրատական կոալիցիոն կուսակցության ստեղծման և ժողովրդի դեմոկրատական հեղափոխության իրականացման վերաբերյալ նրանց քաղաքական գիտակցությունը: Դա է կուսակցության կենսական քաղաքականության հեղափոխական նշանակությունը:

Արդի պրոբլեմների վերաբերյալ կուսակցության քաղաքականություն մշակելով, մեր կուսակցությունը պրոպագանդիստական գործունեության հիմքում դրեց ոչ միայն լիբերալ-դեմոկրատական կուսակցության կառավարության քաղաքական կուրսի հակաժողովրդական էության մերկացումն ու բողոքը դրա դեմ, այլև, ի հակակշիռ այդ կուրսի, առաջ քաշեց իր պոզիտիվ, կոնստրուկտիվ ու կոնկրետ քաղաքականությունը: Այն ժամանակ, երբ Ճապոնիայի քաղաքական հինգ կուսակցությունները կատաղի մրցում են մասսաների աջակցությունը նվաճելու համար, առանց մասսաների պահանջների բավարարմանն ուղղված պոզիտիվ քաղաքականության, անհնար է ընդլայնել կոմունիստական կուսակցության աջակցությունը:

Անհրաժեշտ է, որ կուսակցության քաղաքականությունը երկու գլխավոր տարր ունենա:

Առաջինը— մասսաների ամենօրյա պահանջներին սերտորեն կապված կոնկրետ քաղաքական կուրսն է: Եթե կուսակցությունը գների հարցի և օդի ու ջրի աղտոտման պրոբլեմի վերաբերյալ անընդհատ միայն կրկնի այն ճշմարտությունը, թե «դրանք պետք է արմատապես վճռվեն միայն հեղափոխության միջոցով», ապա այդպիսի կուսակցությունը լիովին կհեռանա մասսաների կենսական պահանջներից: Վճռականորեն նախազգուշացնելով ռեֆորմիզմի վտանգավորությունը, ՃԿԿ, սակայն, լուրջ ուշադրություն նվիրեց կոնկրետ ռեֆորմներին և, մանրամասն, կոնկրետ քաղաքական կուրս մատնանշեց, օրինակ, գների բարձրացման արգելակման և ջրի ու օդի աղտոտման պրոբլեմի լուծման համար:

Երկրորդ կարևոր տարրը— մասսաների պահանջների համակողմանի բավարարմանն ուղղված արմատական քաղաքական կուրսն է: Մեր կուսակցության քաղաքական կուրսը, օրինակ, գների բարձրացման և օդի ու ջրի աղտոտման առնչությամբ, պետք է մեծ ուշադրություն նվիրի հետևողական ռեֆորմներին: Դրա հետ մեկտեղ այն պետք է անվարան գտնի այդ պրոբլեմների աղբյուրը և դրանց բազմակողմանի լուծումը:

Քանի որ հարցը հիմնավոր է դրվում, այն անխուսափելիորեն շոշափում է ամերիկաճապոնական ռեակցիոն ուժերի ողջ քաղաքականությունը, նրանց իշխանության հիմքերը, այսինքն՝ չի կարող չվերաբերել Սախայում իշխանություն հաստատելու նպատակին ուղղված մոնոպոլիստական կապիտալի պաշտպանության ճապոնա-ամերիկյան ռազմական դաշինքի ամրապնդման հակազգային, հակաժողովրդական քաղաքականության քննադատությանը: Դա անխուսափելիորեն



վերաբերում է ռեակցիոն ուժերի քաղաքականության փոխարեն ազգային-ժողովրդական քաղաքական կուրսի կենսագործմանը:

Վերցնենք, թեկուզ մի պրոբլեմ—գների բարձրացման կամ օդի ու ջրի աղտոտման պրոբլեմը: Քանի որ այժմյան ինֆլյացիան և քաղաքի պրոբլեմների սրումը միլիտարիզմի վերականգնմանն ուղղված մոնոպոլիստական կապիտալի քաղաքական կուրսը— «Բարձր աճի» քաղաքականության անխուսափելի հետևանք է, ապա այդ քաղաքականությունը փոխելու անհրաժեշտություն է ստեղծվել:

Այսպիսով— մեր կուսակցության ողջ քաղաքականությունը ցույց է տալիս, որ մասսաների որոշ պահանջներ իրոք բավարարվել են նույնիսկ լիբերալ դեմոկրատական կուսակցության կառավարության գոյության պայմաններում: Միաժամանակ, այն դարձել է այն բանի կոնկրետ ու սիստեմատիկ ցուցանիշը, որ այդ պահանջների լրիվ ու իսկական բավարարման երաշխիքը միայն լիբերալ դեմոկրատական կուսակցության կառավարության տապալումն է, դեմոկրատական կոալիցիոն կառավարության ստեղծումը և ապա՝ ժողովրդական իշխանության հաստատումը:

Մեր կուսակցությունը մոբիլիզացնելով իր բոլոր անդամներին, ծանոթացավ մասսաների կենսական պահանջներին, խորապես վերլուծեց դրանք և համագործակցած գիտնականհետազոտողների հետ, ինչպես կոմունիստ, այնպես և անկուսակցական, աշխատեց տարբեր հարցերի վերաբերյալ իր քաղաքականությունն ստեղծել: ՃԿԿ ջանում էր հմտորեն արձագանքել ամեն մի պրոբլեմի, քննարկել այն ամբողջությամբ և մյուս քաղաքական կուսակցություններից առաջ իր քաղաքականությունը պարզաբանել մասսաներին: Բացի այդ, ՃԿԿ անդրադառնում է ո՛չ միայն առօրյա պրոբլեմներին, այլև իր հիմքում դնելով ժողովրդի շահերի պաշտպանությունը, հիմնարար քաղաքականություն է առաջադրում արդյունաբերության ասպարեզում՝ քաղաքականություն, որը հակադրվում է տնտեսական երկարաժամկետ պլաններին և արդյունաբերության ասպարեզում մոնոպոլիստական կապիտալի ու լիբերալ դեմոկրատական կուսակցության կառավարության հիմնական քաղաքականությանը: Կոմկուսակցությունը, միաժամանակ, մատնանշում է Ճապոնիայի տերիտորիայի բնական պայմանների օգտագործման հեռանկարները և ռեսուրսների իրացման պլանները:

Եվ կարևոր է նաև այն, որ բոլոր աստիճանների կուսակցական կոմիտեներն ու հիմնական կուսկազմակերպությունները, ողջ երկրի մասշտաբով՝ շրջանի, ձեռնարկության շրջանակներում քաղաքականություն են մշակել, շաղկապելով դա Կենտրոնական կոմիտեի քաղաքական կուրսին, իրենց քաղաքականության լայն պրոպագանդա են ծավալել ու այն գործնականում բոլոր ընտրողների օբյեկտը դարձրել:

Մեր այդպիսի քաղաքական գործունեությունը վավերացնում է ՃԿԿ կուրսի գերազանցությունը ճապոնական մյուս կուսակցությունների քաղաքականության հանդեպ: Դրա հետ մեկտեղ զգալի չափով աճեց ժողովրդի վստահությունը կոմկուսակցության նկատմամբ, որովհետև միայն նա կարող էր ճապոնական ժողովրդին մատնանշել գալիքի լուրջ հեռանկարները:

Մեր կուսակցությունն ակտիվ կերպով պարզաբանում էր նաև հեղափոխության ընթացքում պառլամենտի օգտագործման և պառլամենտական պայքարի նշանակությունը: Միաժամանակ, կուսակցությունը ցուցադրում էր մեր երկրի ժամանակակից պայմաններում գիտական սոցիալիզմի սկզբունքների ստեղծագործական կիրառումը բազմակուսակցության և «բռնության» հարցի կապակցությամբ ապագա անկախ, դեմոկրատական, խաղաղ, չեզոք Ճապոնիայում և սոցիալիստական Ճապոնիայում: ՃԿԿ, օգտագործելով տարբեր առիթները, տվյալ պրոբլեմների վերաբերյալ թեորիական հոդվածներ հրապարակեց, իսկ նրա ներկայացուցիչները կուսակցության հայացքները շարադրեցին նաև միջազգային տեսական կոնֆերանսներում: Այդ իսկ պատճառով հարկ չկա այստեղ մանրամասն անդրադառնալ վերոհիշյալին: Բայց ես կուզեի միայն ընդգծել, որ այդ պրոբլեմների պրոպագանդան և պարզաբանումը գաղափարական պայքարի, հակակոմունիստական պրոպագանդայի դեմ մղված պայքարի անհրաժեշտ խնդիրներն են:

Այն բանի երրորդ օրինակը, որ մեր կուսակցությունը պաշտպանելով մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական սկզբունքները, դրանք որպես կենդանի գործունեության կուրս կիրառեց Ճապոնիայի կոնկրետ պայմաններում — միասնական ճակատի տակտիկայի հարցն է:

Մեր կուսակցությունն իր իսկ ծրագրի հիման վրա հակաիմպերիալիստական, հակամոնոպոլիստական հեղափոխություն կատարելու համար ջանում է ստեղծել դեմոկրատական բոլոր կուսակցություններին ու խմբավորումներին, դեմոկրատական համակ մասսաներին համախմբող ազգային-դեմոկրատական միասնական ճակատ: Դրա հետ մեկտեղ, ՃԿԿ դեմոկրատական ուժերին բազմիցս կոչ է արել համատեղ պայքար մղել հանուն ընդհանուր առաջնահերթ խնդիրների լուծման և գլխավորել միասնական գործողությունների կազմակերպումը: Կոմկուսակ-

թյունն այդ դիրքորոշումը սահմանեց, հատկապես, 1958 թվականին ՃԿԿ VII համագումարից հետո, ելնելով 50-ական թվականների առաջին կեսերի միջազգային հարաբերությունների իր լուրջ փորձից:

Մեր կուսակցության ինքնուրույն և անկախ դիրքորոշումն ամենևին չի հակասում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքորոշմանը: Ընդհակառակը, ժամանակակից փուլում, երբ բոլոր երկրների կոմունիստական կուսակցությունների ինքնուրույնությունը, անկախությունը և իրավահավասարությունը կոմունիստական շարժման միջազգային համախմբվածության անհրաժեշտ նախադրյալներն են դարձել, այն անզատելի է պրոլետարական ինտերնացիոնալիզմից: Դա իսկական հայրենասիրությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմին միավորող դիրքորոշում է:

Նման ինքնուրույն և անկախ դիրքորոշումն անհրաժեշտ է Ճապոնիայի հեղափոխական շարժման զարգացման համար, քանի որ ժողովրդի հեղափոխական շարժումը որոշվում է յուրաքանչյուր երկրի ներքին զարգացմամբ, նրա սոցիալական հակասություններով, դասակարգային պայքարի զարգացմամբ. ամեն մի երկրի հեղափոխություն այդ իսկ երկրի բանվոր դասակարգի ու ժողովրդի ներքին գործն է:

Երբեմն դեպքեր են եղել, երբ բարդացել ու «բորբոքվել» է միջազգային կոմունիստական շարժման անջատվածության վերաբերյալ խնդիրը: Եվ այդ կապակցությամբ Ճապոնիայի դեմոկրատական ու հեղափոխական շարժման արգելքներ էին ստեղծվում, զանազան իրադարձություններ հարվածում էին սոցիալիզմի ու կոմունիզմի իդեալներին: Չնայած դրան, մեր կուսակցությունը համառորեն շարունակում էր ինքնուրույն, անկախ դիրք գրավել, ինքնուրույն գնահատել միջազգային կոմունիստական շարժման ամեն մի հարց և հենվել որևէ միջամտություն չհանդուրժող գծի: Դա Ճապոնիայի դեմոկրատական հեղափոխական շարժման առաջընթացի ապահովման կարևոր պրոբլեմներից մեկը դարձավ: Եվ յուրաքանչյուր կոնկրետ հարցի կապակցությամբ աշխատավորական մասսաների ծանոթությունը ՃԿԿ ինքնուրույն դիրքորոշմանը, ամրապնդեց հավատը մեր կուսակցության նկատմամբ և նրանք խորացրին սոցիալիզմի և կոմունիզմի իդեալների ու էության իրենց ըմբռնումը:

Կարևորն այն է, որ Ճապոնիայի հեղափոխական շարժման առջև առանձին պատասխանատվության հենց այդ դիրքորոշումն է միաժամանակ ամրապնդում ողջ աշխարհի բանվոր դասակարգի և ժողովուրդների հետ միջազգային համագործակցությունը և, իրոք, ներդրում է միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության հասնելու գործում:

Լենինը հետևյալն է ասում. «Գործով ինտերնացիոնալիզմը մեկ և միայն մեկ է՝ անձնվեր աշխատանք իր երկրում հեղափոխական շարժումն ու հեղափոխական պայքարը զարգացնելու համար, **նույնպիսի պայքարին** և նույնպիսի գծին աջակցելու համար (պրոպագանդայով, համակրանքով, նյութապես), և **միմիայն այդ պայքարին** աջակցելու համար առանց բացառության **բոլոր** երկրներում» (Երկեր, հ. 24, էջ 72):

Կոմունիստական շարժումը միջազգային բնույթ ունի, սակայն յուրաքանչյուր կուսակցություն միայն կոնկրետ պայմաններից ելնելով և տվյալ երկրի բազայի վրա կարող է ակտիվ կերպով իր ավանդը ներդնել բանվոր դասակարգի միջազգային ընդհանուր պատմական գործում:

Այսպիսով, ներկայումս յուրաքանչյուր կուսակցության ինքնուրույնության զուգակցումը կոմունիստական շարժման միջազգային համախմբվածությանը, ավելի ու ավելի կարևոր է դառնում ողջ համաշխարհային կոմունիստական շարժման համար:

Լենինը, մեջբերելով Էնգելսի խոսքերը, ասում է. հաղթանակած պրոլետարիատը «**...չի կարող ոչ մի օտար ժողովրդի վզին, ոչ մի երջանկացում փաթաթել՝ դրանով չխարխլելով իր սեփական հաղթանակը**» (Երկեր, հ. 22, էջ 475):

Այն բանից հետո, երբ Ռուսաստանի բանվոր դասակարգը իր ձեռքը վերցրեց իշխանությունը, Լենինը վճռականապես նախազգուշացրեց, որ սոցիալիստական պետության մեջ երևան եկած մեծ ազգի նացիոնալիզմը «... իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի, մեր ամբողջ սկզբունքային պաշտպանության» վիժեցումն է (Երկեր, հ. 36, էջ 707):

Ժամանակակից միջազգային կոմունիստական շարժման համար ուսանելի են նաև Լենինի պայքարը ընդդեմ «մեծ ազգի նացիոնալիզմի» և նրա նախազգուշացումը «հաղթանակած պրոլետարիատին»:

Միջազգային կոմունիստական շարժման մեջ անհանդուրժելի է որևէ մեծապետական շովինիստական դիրքորոշում: Եվ որևէ կուսակցություն չի կարող իր կարծիքը կամ քաղաքականությունը միակողմանիորեն պարտադրել ուրիշ կուսակցությունների: Թեկուզ նա նույնիսկ ուրիշ կուսակցությունների համար դրանք սուբյեկտիվորեն օգտակար համարի:

Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում յուրաքանչյուր կուսակցության անկախության ու



իրավահավասարության նորմերից շեղվելը արգելակում է տարբեր երկրների կոմկուսակցությունների ինտերնացիոնալ միասնությունը: Այդ շեղումը խախտում է նաև ազգի ինքնորոշման վերաբերյալ դրույթը, որը յուրաքանչյուր կուսակցության համար իր բանվոր դասակարգի ու ժողովրդի պայքարի զարգացման ուղին ընտրելու հնարավորություն է ընձեռում:

Սակայն յուրաքանչյուր կուսակցության ինքնուրույնությունը հարգելը, անշուշտ, չի նշանակում լիովին անտեսել մտքերի օգտակար փոխանակության անհրաժեշտությունը տարբեր երկրների կոմունիստների միջև, միջազգային խորհրդակցությունների անհրաժեշտությունը և այլն: Դա չի նշանակում, անտեսել գիտական ճանաչման վրա հիմնված միջազգային կոմունիստական շարժման ընդհանուր խնդիրների սահմանումը: Այն, նամանավանդ, միջազգային կոմունիստական շարժման «բևեռացման» և բազմարժեքության պահանջներ չի հարուցում:

Եղել են դեպքեր, երբ մեր կուսակցությունը միջազգային կոմունիստական շարժման ներսում գոյություն ունեցող վիճելի հարցերի շուրջ հապշտապ միակողմանի եզրակացությունների դեմ է արտահայտվել, այդ նպատակին օգտագործելով միջազգային խորհրդակցությունները, որոնց համար չէին հասունացել պայմանները կամ այլ միջոցներ: Բայց դա չի նշանակում, որ մեր կուսակցությունը վիճելի հարցերն անլուծելի է համարում: Փաստորեն, վերջին իրադարձությունների ու պայքարի զարգացման ընթացքը վիճելի շատ հարցերի պատասխանն է: Տվյալ ժամանակաշրջանում, երբ միջազգային կոմունիստական շարժումը զարգացման նոր փուլ է թևակոխել, ժամանակակից վիճելի հարցերը աջ և «ձախ» օպորտունիզմի ու դրա հետ կապված «մեծ ազգի նացիոնալիզմի» դեմ մղած պայքարի սրման արտացոլումն են: Եթե այդ հարցերը լուծվեն, ապա միջազգային կոմունիստական շարժումը կարող է առավել բարձր մակարդակի, նոր, իսկական միասնության հասնել:

Մեր կուսակցությունը ջերմորեն ցանկանում է, որպեսզի միջազգային կոմունիստական շարժումը հնարավորին չափ շուտ հաղթահարի այսօրվա անջատվածությունը և այնտեղ անպայման այնպիսի նորմեր ստեղծվեն, որ հնարավորություն ընձեռվի խստիվ պահպանել անկախությունը, իրավահավասարությունը, ներքին գործերին չմիջամտելը, որ միջազգային կոմունիստական շարժման համախմբվածությունը բարձր մակարդակի լինի և միջազգային մասշտաբով համախմբված ինքնուրույն, անկախ կուսակցությունները պայքարեն իմպերիալիստական ռեակցիոն ուժերի դեմ և իրենց գործունեության ոլորտում հաջողությունների հասնեն: ՃԿԿ համոզված է, որ մեր օրերում հենց դա է Լենինի պատգամների կենսագործման ուղին:

Այդ ամենի հետ մեկտեղ միջազգային կոմունիստական շարժման արագ համախմբման համար, ՃԿԿ կարծիքով կարևոր և անհրաժեշտ է, նույնիսկ վիճելի հարցերի առկայության պայմաններում ամրապնդելով համատեղ գործողություններն ու միասնական ճակատը, պայքարել ընդդեմ ամերիկյան իմպերիալիզմի Վիետնամում մղած ագրեսիվ պատերազմի: Մեր կուսակցությունը գտնում է, որ հակաիմպերիալիստական պայքարում գործողությունների միասնության վերաբերյալ հարցերը քննարկելու համար հենց այդ տեսանկյունով հնարավոր կլիներ և անհրաժեշտ է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցություններ անցկացնել, եթե խորհրդակցության անցկացման համար հասունացել են պայմանները և շահագրգռված կուսակցությունները համաձայնեին դրան: Բայց ժամանակակից իրադրության պայմաններում , գտնում է ՃԿԿ, միջազգային կոմունիստական շարժման համախմբման հասնելու և միջազգային համատեղ գործողությունների ու հակաիմպերիալիստական միասնական ճակատի ամրապնդման համար մեծ նշանակություն ունի և արդյունավետ է հինգ աշխարհամասերի հակաիմպերիալիստական և դեմոկրատական ուժերի միջազգային խորհրդակցության հրավիրման նրա առաջարկը: Ներկայումս միջազգային համատեղ գործողությունների և միասնական հակաիմպերիալիստական ճակատի կարևորությունն առավել է մեծանում:

ՃԿԿ X համագումարի (1966 թ.) նյութերում ասված է.

«Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի գաղափարական ու թեորիական անսպառ ուժի և ողջ աշխարհի ու բոլոր երկրների ժողովուրդների հակաիմպերիալիստական ուժերի ազատագրական պայքարին սերտորեն կապված իսկական կոմունիստների պայքարի շնորհիվ, անտարակույս, կհաղթահարվեն բոլոր դժվարությունները, օպորտունիզմի ամեն տեսակ դրսևորումները, դրա հիման վրա հնարավոր կլինի հասնել միջազգային կոմունիստական շարժման մարքս-լենինյան իսկական ամրապնդման ու նրա համագործակցության առավել բարձր մակարդակի: Միջազգային կոմունիստական շարժումն ան-

պայման կհաղթահարի ներկայիս փորձությունները և մարքս-լենինյան անհաղթ դրոշը բարձր պահած՝ առավել մեծ դեր կխաղա ողջ աշխարհի ժողովուրդների ազատագրության պատմական գործում»:

Այսօր մենք այդ հարցում ավելի ու ավելի հաստատակամ ենք դառնում:

## ԼԵՆԻՆՅԱՆ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՎԱՆԳԱՐԴԱՅԻՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Վերջապես, ավելի քան տասը տարիների ընթացքում ՃԿԿ ազդեցությունն անընդհատ մեծանում է այն բանի շնորհիվ, որ մեր կուսակցությունը, հաղթահարելով բազում դժվարություններ, հետևողականորեն և ինքնուրույն լուրջ ուշադրություն էր նվիրում լենինյան մասսայական ավանգարդային կուսակցության ստեղծմանն ու կուսակցական մամուլի օրգանների տպաքանակի ավելացմանը:

Վ. Ի. Լենինն ասել է. «...տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն— և մենք շուռ կտանք Ռուսաստանը» (Երկեր, հ. 5 էջ 622): Նա շեշտը դնում էր այնպիսի կուսակցության շինարարության վրա, որն ունենար քաղաքական-թեորիական և կազմակերպական ուժ, այսինքն՝ այնպիսի կուսակցության, «... որը ամենահեղափոխական դասակարգի իրոք առաջավոր ջոկատն է» (Երկեր, հ. 5, էջ 695):

Մեր կուսակցությունը, կոմկուսակցության իրոք առաջատար ջոկատի ընդլայնումն ու ամրապնդումը կարևոր պայման էր համարում հակաիմպերիալիստական, հակամոնոպոլիստական դեմոկրատական հեղափոխության հաղթանակի, սոցիալիզմի ուղիների բացման համար: Այդ պատճառով ՃԿԿ ջանում էր «ստեղծել բազմամիլիոն մասսաների մղած պայքարը ղեկավարելու իրոք ունակ, հզոր, մասսայական ավանգարդային կուսակցություն» (ՃԿԿ X համագումարի որոշումներից): Մեր կուսակցությունը մերժեց ռևիզիոնիստական տարրերի այն պնդումը, թե մասսայական պայքարի հետևանքով կուսակցությունն աճում ու ամրապնդվում է տարերայնորեն: ՃԿԿ ինքնուրույն ու նպատակասլաց ընդլայնում և ամրապնդում էր իր շարքերն ու ազդեցությունը:

ՃԿԿ կանոնադրության երկրորդ հոդվածը կուսակցության բոլոր անդամներին պարտավորեցնում է՝ «աշխատել մասսաների շրջանում, պաշտպանել նրանց շահերը, պայքարել նրանց հետ մեկտեղ, մասսաների շրջանում պրոպագանդել կուսակցության քաղաքականությունն ու որոշումները, տարածել կուսակցական մամուլի օրգաններն ու գրականությունը, կազմակերպել մասսաներին և ընդլայնել կուսակցության շարքերը»:

Ճապոնիայի՝ բարձր զարգացած կապիտալիստական երկրի, տիրող դասակարգն իր տրամադրության տակ ունի պրոպագանդիստական վիթխարի ապարատ: Հարյուր միլիոնանոց բնակչություն ունեցող երկրում, ուր գոյություն ունի մոտ 24 միլիոն տնային տնտեսություն, լույս է տեսնում ավելի քան 30 միլիոն օրինակ օրաթերթ, ներառյալ երեք խոշոր համազգային առևտրական թերթ, յուրաքանչյուրը 5 միլիոն օրինակով, նրանք ունեն նաև 20 միլիոնից ավելի հեռուստացույց և ավելի քան 40 միլիոն ռադիոընդունիչ: Ճապոնական կապիտալիզմի «բարձր տեմպերի» (աշխարհում ամենաբարձր) պայմաններում, օբյեկտիվորեն այնպիսի իրադրություն է ստեղծվում, երբ աշխատավոր մասսաների մի մասի շրջանում «հարուստ հասարակության», «բարեկեցիկ պետության» և «պահանջարկի հեղափոխության» վերաբերյալ պատրանքներ են տարածվում: Նման պայմաններում պրոպագանդիստական օրգաններն ամեն օր ժողովրդի գլխին վիթխարի չափերի հասնող ինֆորմացիաներ են տեղում, այնտեղ ներդնում բուրժուական գաղափարախոսության գիտակցությունը: Դրա ազդեցությունը վերացնելու համար, որին անխուսափելիորեն ենթարկվում են ժողովրդական մասսաները, դեմոկրատական շարժման մեջ առաջադիմության հասնելու և լայն մասսաներին գաղափարապես ու քաղաքականապես ՃԿԿ կողմը գրավելու նպատակով, անհրաժեշտ է ընդլայնել կուսակցական մամուլի հրատարակությունների, ամենից առաջ, կուսակցական մամուլի օրգանի, այսինքն՝ Լենինի արտահայտությամբ, համազգային քաղաքական թերթերի թողարկումը: Կարևոր է, որ ողջ կուսակցությունը պլանաչափորեն զբաղվի կուսակցական շարքերի ընդլայնմամբ ու ամրապնդմամբ, սիստեմատիկ պայքար մղի աջ և «ձախ» օպորտունիզմի դեմ: Անհրաժեշտ է գիտակցաբար և պլանաչափորեն կենսագործել կուսակցության իսկ գաղափարական, քաղաքական և կազմակերպական կառուցումը:

Այն ժամանակից ի վեր, երբ 1959 թ. ամռանը կայացավ ՃԿԿ Կենտկոմի VI պլենումը (1958 թ. հուլիս—օգոստոսին տեղի ունեցած VII համագումարից հետո) և 1960 թ. սեպտեմբերին տեղի ունեցավ կուսակցության ակտիվիստների առաջին համազգային խորհրդակցությունը, մեր կուսակցությունը բազմիցս ընդգծել է մասսայական աշխատանքի և կուսակցության շինարարության զուգահեռ ծավալման անհրաժեշտությունը: Մեր կուսակցությունը, գլխավորելով մասսաներին, իր գործունեությունը վարում էր կուսակցական մամուլի տպաքանակն ակտիվորեն բազմապատկելով: Դրա հետ մեկտեղ, կուսակցության շարքերն ընդգրկելու համար առաջավոր մարդկանցից թեկնածուներ ընտրելով, ՃԿԿ ձգտում էր, որպեսզի նրանք ակտիվորեն ծանոթանային կուսակցության ծրագրին ու քաղաքականությանը, գիտական սոցիալիզմի իդեալներին ու էությանը, պատրաստում նրանց կուսակցության մեջ ընդունվելու: ՃԿԿ վերջին տասը տարիների ընթացքում, ունենալով կուսակցության ուժերն ընդլայնելու և գաղափարական դաստիարակության իր ծրագիրը, վճռականորեն ու համառորեն հետամուտ էր լինում նրա կատարմանը: Դրա շնորհիվ Ճապոնիայի այսօրվա դժվարին պայմաններում կուսակցության անդամների թիվը, 1959 թվականի համեմատությամբ, ավելացել է 7 անգամ: «Ակահաթայի» օրաթերթի տպաքանակը, 1959 թվականի համեմատությամբ, ավելացել է 8 անգամ, իսկ կիրակնօրյա «Ակահաթայի» տպաքանակը՝ 40 անգամ: Այդպես էր մեր կուսակցությունն ամրապնդում իր ուժերն ու ազդեցությունը: Այժմ ՃԿԿ-ում հաշվվում է մոտ 300 հազար անդամ և մոտ 2 միլիոն ամենօրյա ու կիրակնօրյա (շաբաթաթերթի) «Ակահաթայի» ընթերցող: Ճապոնիայի վերջին համընդհանուր ընտրություններին մեր կուսակցությունը հաջողություններ ձեռք բերեց շնորհիվ մասսայական պայքարում և կուսակցության շինարարության ոլորտում հասած զգալի նվաճումների, ամենից առաջ կուսակցական ուժերի ընդլայնման, կուսակցական մամուլի օրգանի տպաքանակի ավելացման:

ՃԿԿ չի կարող օգտագործել թերթերի տարածման առևտրական սովորական միջոցները: Այդ իսկ պատճառով իրենք՝ կոմունիստներն են «Ակահաթայի» ընթերցողներին հասցնում: Այդպիսով, կոմունիստներն ամեն օր և անընդմեջ ամրապնդում են կուսակցության և ընթերցողների կապը: Լենինն ասում էր. «Համառուսական քաղաքական լրագրի ստեղծումը... պետք է լինի **հիմնական թելը**, որից բռնելով մենք կկարողանայինք անշեղորեն զարգացնել, խորացնել և լայնացնել... կազմակերպությունը» (Երկեր, հ. 5, էջ 669): Կենդանի քաղաքական ագիտացիան,— նշում էր նա,— անհնար է առանց «համառուսական, հաճախակի լույս տեսնող և կանոնավոր տարածվող լրագրի» (նույն տեղը): Մեր կուսակցության մամուլի օրգանի աշխատանքը— Ճապոնիայի կոնկրետ պայմաններում լենինյան այդ ցուցումների կենսագործումն է:

Նրանք, ովքեր կատարում են այդ դժվարին ու քրտնաջան աշխատանքը, ժամանակին առաքում են թերթերը, հեղափոխական ավյունով տոգորված կոմունիստներ են:

Կուսակցության շինարարության հիմքը մենք համարում ենք մեր բոլոր կոմունիստների մարքսիզմ-լենինիզմին տիրապետելը և նրանց տեսական մակարդակի բարձրացումը, որը կօգներ նրանց մարքսիզմ-լենինիզմի թեորիան կիրառել կյանքում: Դրա համար մենք մեր բոլոր կուսակցական համագումարներում ընդգծում էինք գաղափարա-դաստիարակչական աշխատանքի ուժեղացման անհրաժեշտությունը: 1969 թ. սեպտեմբեր—հոկտեմբերին մասսայական պրոպագանդայի գաղափարական դաստիարակության և կուսակցական ուժերի ընդլայնման միավորյալ միամսյակ անցկացվեց: ՃԿԿ իր ջանքերն ուղղում է կոմունիստների գաղափարա-տեսական մակարդակի բարձրացմանը: Այդ նպատակով ՃԿԿ Կենտկոմին կից բացվել են կուսակցական դպրոց, տարբեր ատյանների կուսակցական դպրոցներ, սահմանված է դասախոսի իրավունքներ ստանալու համար քննական սիստեմ: Քննական սեսիաներին, որոնք արդեն երեք անգամ անց են կացվել, մասնակցել են 70 հազար հոգի: Արդեն տարրական և միջին ատյանների տասնհազարից ավելի դասախոսներ կան: Մասսայական ավանգարդային կուսակցություն հասկացությունը չի նշանակում, որ կուսակցությունը «մասսայական» է դարձել, շնորհիվ կոմունիստների քաղաքական ու գաղափարական մակարդակի և մարտունակության կամ կազմակերպական աշխատանքի թուլացման: Ինչպես ուսուցել է Լենինն իր **«Մի քայլ առաջ, երկու քայլ ետ»** ու մի շարք այլ աշխատություններում, դա նշանակում է հեղափոխությանը մարտունակ ծառայելու վճռականությամբ լի, մարքսիստական թեորիային տիրապետող, կոմունիստներից սերած խոշոր կուսակցության շինարարություն, որն առավել չափով նկատի առնելով ժամանակակից պայմանները, պահպանում է բանվոր դասակարգի ավանգարդային կուսակցության հիմնական բնույթը և ոչ պրոֆեսիոնալ հեղափոխականների փոքրաթիվ խմբից կազմված կուսակցության շինարարություն:

Հեղափոխական մեր պարտքի տեսանկյունով, վերջին տասը տարիների ընթացքում ձեռք բերված հաջողություններն ու առաջընթացը միայն առաջին քայլերն են, առջևում տակավին բարդ խնդիրներ են ծառացած: Արհմիութենական շարժման ոլորտում մեր կուսակցության ազդեցության ընդլայնումը, որի զգալի մասը դեռևս սոցիալ-դեմոկրատա-

կան քաղաքական ղեկավարության տակ է գտնվում, խոշոր ձեռնարկություններում կայուն կուսակցական կազմակերպությունների ստեղծումը, գյուղացիական շարժման զարգացման համար մղվող պայքարը, որտեղ տակավին կազմակերպական աշխատանքում հետամնացություն է նկատվում, գյուղում կուսակցական կազմակերպությունների ստեղծումը, որը դեռևս լիբերալ դեմոկրատական կուսակցության քաղաքական բազան է և այլն—այս ամենը խիստ կարևոր խնդիրներ են դառնում:

Այժմ, ինչպես երբեք մեր կուսակցությունը, շնորհիվ նաև դեմոկրատական ցենտրալիզմի կազմակերպական սկզբունքի, քաղաքական ճիշտ ուղու հիմունքով է համախմբվել: ԾԿԿ վերջին ընտրություններին իր առաջընթացով զարգացման նոր փուլ բաց արեց, առավել լայն մասսաները սկսեցին հետաքրքրություն երևան բերել նրա գործունեության հանդեպ, և հավատալ կուսակցությանը: Կասկածից վեր է, որ կուսակցության շարքերի ընդլայնման և կուսակցության առաջընթացի համար առավել թռիչքաձև զարգացման հնարավորություն կա: Մասսայական պայքարի հետագա զարգացման համեմատ ստեղծված իրավիճակը կապահանջի կուսակցական ուժերի բազմապատկման առավել արագ տեմպեր և կուսակցական շինարարության կատարելագործում: ԾԿԿ պետք է անդադրում ձգտի դառնալու թեորիայի ուժին տիրապետող, ճապոնական ժողովրդի համար լիակատար ազատագրություն ձեռք բերելու ունակ, ամեն դժվարություն հաղթահարող լենինյան մասսայական ավանգարդային կուսակցություն: Մենք համոզված ենք, որ այս տարվա հուլիսին տեղի ունեցող կուսակցության XI համագումարը նշանավոր տարեթիվ կդառնա նրա նոր առաջընթացի ճանապարհին:

«Проблемы мира и социализма»
1971, № 5.



*Օգնություն*

# ԿՈՒՍՈՒՍՈՒՑՄԱՆ ՑԱՆՑԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

Վ. ՇԱՊԿՈ

## ՃԿԿ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՂԵԿԱՎԱՐ ՈՒԺ

*Այս կոնսուլտացիայի թեման նվիրված է նոր տիպի կուսակցության՝ բանվոր դասակարգի մարքսիստական հեղափոխական կուսակցության լենինյան ուսմունքի պրոբլեմներից մեկին: Այդ ուսմունքը բազմակողմանի է և ընդգրկում է այնպիսի հարցերի մի մեծ համակարգ, որոնք իրենց հերթին օրգանապես կապված են սոցիալիստական հեղափոխության և նոր հասարակության կառուցման տեսության հետ: Այստեղ՝ պայմանականորեն կարելի է առանձնացնել երեք հիմնական ասպեկտներ: Առաջինը կոմունիստական կուսակցության, նրա կողմից կապիտալիստական կարգերի տապալման, սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի համար աշխատավորների պայքարի ղեկավարման օբյեկտիվ անհրաժեշտության պարզաբանումն է. երկրորդը՝ հասարակության մեջ կուսակցության տեղի ու դերի, մասսաների նկատմամբ կուսակցական ղեկավարության բովանդակության և սկզբունքների բացահայտումը, երրորդը՝ կուսակցության, նրա ներքին կառուցվածքի ու զարգացման սկզբունքների վերլուծությունը:*

*Տվյալ կոնսուլտացիայում մենք կանգ կառնենք հատկապես առաջին ասպեկտի վրա, քանի որ հենց այն առավել անմիջականորեն է կապված գիտական կոմունիզմի պրոբլեմատիկայի հետ: Ընդ որում թեմային համապատասխան հարկավոր է նախ և առաջ պարզել, թե ինչո՞վ է պայմանավորված հասարակության նկատմամբ կուսակցության ղեկավարության անհրաժեշտությունը մեր օրերում, մի ժամանակաշրջանում, երբ սոցիալիզմը վերաճում է կոմունիզմի: Խորհուրդ է տրվում թեման ուսումնասիրելիս ուշադրությունը կենտրոնացնել հետևյալ հարցերի վրա:*

1. Բանվոր դասակարգի, նրա ղեկավար ուժի՝ մարքս-լենինյան կուսակցության առաջատար դերը կոմունիստական շինարարության գործում:

2. Արդի փուլում ՍՄԿԿ ղեկավար դերի աճը բնորոշող հիմնական գործոնները:

3. Կուսակցության ղեկավարության դերի իրականացման մի քանի նախադրյալները:

## 1.

*Գիտական կոմունիզմի գծով նախորդ կոնսուլտացիաներում[1] ցույց է տրվել, որ կոմունիստական ֆորմացիայի ձևավորումը, ինչպես և պատմական ամեն մի խոշոր վերափոխում, որոշվում է հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքներով: Սակայն ի տարբերություն նախորդ դարաշրջանների այդ վերափոխումները պրոլետարական հեղափոխությունների և կապիտալիզմից կոմունիզմին անցման դարաշրջանում իրականացվում են ոչ թե ժողովրդական մասսաների տարերային շարժման միջոցով, այլ շնորհիվ նրանց գիտակից, նպատակասլաց ստեղծագործական գործունեության: «...Կենդանի, ստեղծարար սոցիալիզմը հենց ժողովրդական մասսաների ստեղծագործությունն է»,— ասել է Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 26, էջ 346): Եվ որքան ավելի լայնորեն է ծավալվում կոմունիստական շինարարությունը, այնքան ավելի մեծ նշանակություն է ստանում դասակարգերի, ազգերի սոցիալական ակտիվությունը, մասսաների ստեղծարար գործունեությունը որպես այդ շինարարության կարևորագույն գործոն:*

*Սոցիալիստական հասարակությունը կոմունիզմի վերաճման շրջանում, ընդհուպ մինչև այդ պրոցեսի ավարտումը, մնում է որպես տարբեր դասակարգերից ու սոցիալական խավերից բաղկացած հասարակություն: Դրանց հարաբերությունները բնորոշվում են որպես համագործակցության, փոխադարձ օգնության հարաբերություններ, որոնք բացառում են դասակարգային որևէ հակամարտություն: Չնայած օբյեկտիվորեն դրանք տարբեր դասակարգեր ու սոցիալական խավեր են: Նոր հասարակարգի կառուցման ասպարեզում նրանց համատեղ գործունեությունը կարող է հաջող լինել միայն բանվոր դասակարգի առաջատար դերի դեպքում, դասակարգ, որն առաջինն է ընկալում գիտական կոմունիզմի գաղափարները և ունակ է գլխավորելու մասսաների պայքարը հանուն այդ գաղափարների կենսագործման:*

*Որպես համայն աշխատավորության առաջնորդ բանվոր դասակարգի համաշխարհային-պատմական միսիան չի ավարտվում անմիջականորեն սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի կառուցման պրոբլեմների լուծմամբ: Այդ միսիան բանվոր դասակարգն իրագործում է նաև կոմունիստական հասարակարգի կառուցման պայմաններում, երբ ձեռք է բերվել ամբողջ ժողովրդի սոցիալ-քաղաքական միասնությունը: Ինչպես ընդգծվում է ՍՄԿԿ ծրագրում, բանվոր դասակարգը հասարակության ղեկավարման պատասխանատվությունը կավարտի կոմունիզմի կառուցմամբ, երբ կանհետանան դասակարգերը:*

*Հեղափոխական շարժման փորձն արդեն վաղուց ապացուցել է, որ բանվոր դասակարգն իր պատմական միսիան սկսում է հաջողությամբ կատարել այն ժամանակ միայն, երբ նրա ավանգարդը կազմակերպվել է որպես մի քաղաքական կուսակցություն, որը զինված է առաջավոր հեղափոխական*

[1] *Տե՛ս* Политическое самообразование, 1970 *թ.* №№ 2, 8, 9:



*տեսությամբ, գաղափարապես և կազմակերպորեն ղեկավարում է աշխատա-
վորության հեղափոխական պայքարը, ստեղծարար-գործունեությունը: Այս
ճշմարտությունն անխախտ է մնում նաև կոմունիստական շինարարության
պայմաններում: Առանց հասարակական զարգացման օրենքների իմացու-
թյանը տիրապետած կուսակցության, առանց նրա ղեկավարության մասսա-
ների ստեղծագործությունը չի կարող գիտակից, նպատակային բնույթ
ստանալ և, հետևապես, դառնալ կոմունիստական կարգերի ձևավորման գոր-
ծոն:*

*Իսկ ինչպե՞ս է դրսևորվում բանվոր դասակարգի առաջատար դերը կո-
մունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում:*

*Սոցիալիզմի ձևավորման տարիներին այդ դերը գլխավորապես մարմ-
նավորվել է պրոլետարիատի դիկտատուրայում, որը բանվոր դասակարգին
տվել է քաղաքական ուժ՝ ժողովրդական լայն մասսաներին սոցիալիստական
ոգով դաստիարակելու, նոր կարգերի հաստատման համար մղվող պայքա-
րում նրանց ներգրավելու համար: Դրան համապատասխան կոմունիստա-
կան կուսակցությունը՝ պրոլետարիատի ավանգարդը, հանդես գալով նրա
դիկտատուրայի ղեկավար ուժ, ապահովել է այդ դասակարգի քաղաքական
իշխանությունը հասարակության մեջ: Սոցիալիզմի հաղթանակից հետո և
կոմունիզմի ծավալուն կառուցմանն անցնելու շրջանում, երբ ավարտվում է
պրոլետարիատի դիկտատուրայի պետության վերաճումը համաժողովրդական
պետության, բանվոր դասակարգի առաջատար դերը դրսևորվում է նոր պայ-
մաններին համապատասխանող ձևերում:*

*Պրոլետարիատի՝ որպես արդի դարաշրջանի ամենաառաջավոր դասա-
կարգի, դրությունը պայմանավորված է այն բանով, որ նա կապված է հա-
սարակական առաջընթացի նյութական հիմքը կազմող խոշոր արտադրու-
թյան հետ: Դա պատմական պրոցեսում բանվոր դասակարգի առաջատար
դերի ընդհանուր օբյեկտիվ հիմքն է: Այժմ կոմունիզմի նյութա-տեխնիկական
բազայի ստեղծման պարտադիր նախապայմանը համրային արտադրության
ինդուստրիալ զարգացումն է՝ գիտա-տեխնիկական հեղափոխության նվա-
ճումների լայն օգտագործմամբ: Այդ պատճառով վիթխարի չափով աճում
է խոշոր ինդուստրիայի, դրանով իսկ նաև կոմունիստական շինարարության
առաջավոր դիրքերում գտնվող բանվոր դասակարգի նշանակությունը: Հարկ
է նկատել, որ գիտա-տեխնիկական հեղափոխության պայմաններում, նրա
օբյեկտիվ պահանջներին համապատասխան, բանվոր դասակարգը, որպես
հասարակության կարևորագույն արտադրողական ուժ, հասնում է զարգաց-
ման անհամեմատ բարձր մակարդակի: Դրա շնորհիվ անընդհատ աճում է
նրա հեղինակությունը սովետական ժողովրդի բոլոր խավերի շրջանում:*

*Այնուհետև: Արդի փուլում բանվոր դասակարգի ղեկավար դերի ամրա-
պնդման օբյեկտիվ գլխավոր գործոններից են նրան բնորոշ մեր ժողովրդի
գաղափարական և սոցիալ-քաղաքական միասնության հիմքում ընկած հատ-
կանիշներն ու գծերը: Բանվոր դասակարգի մեծ նպատակը կոմունիզմի կա-
ռուցումն է, նրա լավագույն գծերն են գիտակցականությունը, կազմակերպ-
վածությունը, համախմբվածությունը, ինտերնացիոնալիզմը: Այս ամենը
բնորոշ է դառնում գյուղացիությանը, մտավորականությանը: Բանվոր դա-
սակարգի առաջատար դերն այժմ արտահայտվում է այն բանում, որ ժողո-
վրդի բոլոր խավերը սկզբունքորեն անցել են այդ առաջավոր դասակարգի
դիրքերը, յուրացրել նրա գծերն ու հատկանիշները, համախմբվել նրա շուր-*

ջը։ Դրան նպաստել է ամենից առաջ պատմական փորձը, որը բոլոր աշխատավորներին գործնականում ցույց է տվել, թե ազատ ու երջանիկ կյանքի նրանց միակ ճանապարհն այն է, որով ընթանում է բանվոր դասակարգը։ Հերոսական պայքարով և անձնուրաց աշխատանքով, սոցիալիզմի կառուցման ասպարեզում ծավալած կազմակերպչական բազմակողմանի գործունեությամբ այդ դասակարգը փայլուն կերպով ցուցադրել է հասարակությանը ղեկավարելու, նոր հասարակարգ ստեղծելու իր ունակությունը։

ՍՍՀ Միության բանվոր դասակարգի առաջատար դերի կարևորագույն դրսևորումն այն է, որ մեր օրերում նրա քաղաքական կազմակերպությունները՝ սովետական պետությունը և կոմունիստական կուսակցությունը, դարձել են ամբողջ ժողովրդի քաղաքական կազմակերպություններ։ Այդ հարցը քննարկելիս ամենից առաջ պետք է նկատի ունենալ, որ կոմունիստական կուսակցության դասակարգային էությունը չի փոխվել նրանից, որ նա դարձել է ամբողջ սովետական ժողովրդի ավանգարդը։ Նա եղել և մնում է պրոլետարական, արտահայտելով բանվոր դասակարգի նպատակները, գաղափարախոսությունը, հեղափոխական հատկանիշները։ Բանվորներն առաջվա պես գերակշռող տեղ են գրավում մեր կուսակցության սոցիալական կազմում։ Ավելին՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության՝ ամբողջ ժողովրդի ավանգարդ դառնալը արդի փուլում բանվոր դասակարգի առաջատար դերի անհրաժեշտության ակնառու ապացույցն է, քանի որ հենց դրանում է արտահայտված այն փաստը, որ բոլոր սովետական մարդիկ, անկախ իրենց սոցիալական պատկանելությունից, հաստատուն կանգնած են բանվոր դասակարգի դիրքերում։ Այսպիսով, ակներև է, որ հասարակության մեջ սովետական բանվոր դասակարգի ղեկավար դերի իրականացումն այժմ էլ հնարավոր է միայն կոմունիստների լենինյան կուսակցության գործունեությամբ։ Բանվոր դասակարգը միայն կուսակցության ղեկավարությամբ կարող է կենսագործել կոմունիստական գաղափարները։ Միայն կուսակցության ղեկավարությամբ նա կարող է դեպի կոմունիզմ առաջնորդել բոլոր աշխատավորներին։ Այլ խոսքով՝ այստեղ առկա է այն ընդհանուր օրինաչափությունը, որը գործում է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ողջ ընթացքում։

Այդ օրինաչափության դրսևորման անհրաժեշտ նախապայմաններն առաջացել են պատմական այն ճանապարհին, որն անցել է Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը սոցիալիստական շինարարության տարիներին բանվոր դասակարգի հետ միասին։ Այդ տարիներին լիովին դրսևորվեց կուսակցության՝ նոր հասարակարգի ստեղծման գիտականորեն հիմնավորված ծրագիր մշակելու և դրա կենսագործումը հմտորեն կազմակերպելու ունակությունը։ Աշխատավորները սեփական փորձով համոզվեցին, որ լենինյան կուսակցության ղեկավարությունն իրենց իղձերի ու շահերի իրականացման ամենահուսալի երաշխիքն է։ Այդ պատմական փորձի շնորհիվ հասարակության մեջ ամրապնդվեց, անառարկելի դարձավ մեր կուսակցության քաղաքական հեղինակությունը։ Ներկայումս այդ հեղինակությամբ պայմանավորվում է ողջ ժողովրդի խոր վստահությունը ՍՄԿԿ քաղաքականության ու ղեկավարության նկատմամբ. այն հնարավորություն է ընձեռում կուսակցությանը իրականացնելու սովետական հասարակության ղեկավար ուժի իր կոչումը. հասարակության զարգացման նոր փուլում, երբ ժողովրդի գործնական խնդիրն է կոմունիզմի կառուցումը ՍՍՀ Միությունում։



2.

Կոմունիզմի կառուցման գործում մարքս-լենինյան կուսակցության ղեկավար դերի անշեղ բարձրացումը պայմանավորված է մեր հասարակության տնտեսական ու կուլտուրական ողջ առաջընթացով։ Այդ ևս կոմունիստական շինարարության օրինաչափությունն է։

Ինչպես ընդգծված է ՍՄԿԿ ծրագրում, այդ հանգամանքը, ինչպես և կոմունիստական շինարարության կուսակցական ղեկավարության անհրաժեշտությունը, պայմանավորված են մի շարք օբյեկտիվ պատճառներով։

Այդ պատճառներից մեկը կապված է կոմունիստական շինարարության մասշտաբների ընդլայնման և տեմպերի աճման հետ, նրա բոլոր բնագավառներից ամենից առաջ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման բնագավառում, բարդ պրոբլեմների լուծման անհրաժեշտության հետ։ Կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի իրականացրած տնտեսական, կուլտուրական ու սոցիալական խոր վերափոխումների շնորհիվ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունը ներկայումս հասել է վիթխարի մասշտաբների, ձեռք բերել ներքին հզոր զենք, էներգիա և դինամիզմ։ Սովետական հասարակության զարգացման վրա հարաճուն ազդեցություն է գործում արդի գիտա-տեխնիկական հեղափոխությունը, որը լայն հնարավորություններ է բացում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների օգտագործման միջոցով արտադրության ինտենսիվացման և տնտեսական առաջընթացի տեմպերի արագ աճման համար։ Այդ հնարավորությունները, սակայն, չեն իրականացվում ինքնին։ Գիտա-տեխնիկական հեղափոխությունը արտադրաուժերի զարգացմանը ներհատուկ պատմական օբյեկտիվ պրոցես է, որը նոր բարդ պրոբլեմներ է առաջադրում արտադրության կազմակերպման ու կառավարման սիստեմին, պահանջում է գիտականորեն խորապես հիմնավորված կանխատեսումներ և պլաններ տնտեսական գործունեության բոլոր մակարդակներում»։ Այստեղից էլ վիթխարի չափով աճում է մարդկանց համատեղ գործունեության գիտական կառավարման նշանակությունը հանրային աշխատանքի բոլոր բնագավառներում։

Այս ամենը վկայում է, որ մեր հասարակությունը ներկայումս թևակոխել է էկոնոմիկայի ու կուլտուրայի ինտենսիվ զարգացման փուլը, որը հնարավորություն է ընձեռում առավել արդյունավետ օգտագործելու սոցիալիստական կարգերում կուտակված հասունացած հնարավորությունները տնտեսության հետագա հզոր վերելքի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, սոցիալական ու կուլտուրական առաջընթացի, կոմունիզմին անցնելու համար։

Հասարակական զարգացման տեմպերի արագացումը այժմ ոչ միայն ուժեղացնում է կառավարման նշանակությունը տեխնիկա-տնտեսական առումով, այլև մեծ չափով բարձրացնում կոմունիստական կուսակցության, սովետական սոցիալիստական պետության քաղաքական ղեկավարության, քաղաքականության դերը։ Եվ այստեղ բանը միայն այն չէ, որ հենց մարքս-լենինյան մեթոդոլոգիայով զինված կուսակցությունն է ունակ գիտականորեն վերլուծելու հասարակության սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման բարդ պրոցեսները, հիմնվելով արդի գիտական իմացության նվաճումների վրա, որոշելու նոր խնդիրների լուծման ճիշտ ուղիներն ու մեթոդները։ Կուսակցության դերի բարձրացումը տվյալ դեպքում անմիջականորեն առնչվում է այն բանին, որ այժմ վճռական նշանակություն է ստա-

նում արտադրության և ամբողջ հասարակության կառավարման կատարելագործումը՝ նրա զարգացման պատմական լայն հեռանկարների հաշվառմամբ։

Կառավարումը ոչ միայն և ոչ այնքան կազմակերպական, որքան սոցիալ-քաղաքական ֆունկցիա է։ Կառավարել նշանակում է պայմաններ ստեղծել ինչպես արտադրական և հասարակական ողջ մեխանիզմի ներդաշնակ ու պլանաչափ գործունեության, նույնպես և այն բանի համար, որ նրա յուրաքանչյուր օղակում աշխատանքի կազմակերպումը խարսխվի մարդկանց բարձր գիտակցականության և ինքնակարգապահության, անձնական ու կոլեկտիվ ողջ սոցիալիստական հասարակության շահերի զուգորդման ըմբռնման վրա։ Լոկ այդ պայմանով կարելի է հաջողությամբ կատարել ոչ միայն մեր մոտակա պահանջմունքների բավարարման հետ կապված ընթացիկ արտադրական պլաններն ու առաջադրանքները, այլև իրականացնել դեպի գալիքը, դեպի կոմունիզմի կառուցումը տանող հեռանկարները։

Կառավարման այդպիսի ֆունկցիան անիրագործելի է առանց մարքս-լենինյան կուսակցության, առանց հասարակության զարգացման վրա նրա գաղափարական, քաղաքական ու կազմակերպական ներգործության, որն իրականացվում է պետական ղեկավարման սիստեմի, հասարակական բոլոր կազմակերպությունների միջոցով։ Կուսակցության քաղաքականությունը սահմանում է արհմիությունների, լենինյան կոմերիտմիության և այլ հասարակական կազմակերպությունների գործունեության հիմնական ուղղությունը, ապահովում հասարակական ու պետական կազմակերպությունների փոխադարձ սերտ կապը, նրանց համատեղ ջանքերն ուղղելով կոմունիզմի կառուցման կենսական պրոբլեմների լուծմանը։

«Կառավարելու համար,— ասել է Վ. Ի. Լենինը,— հարկավոր է կոփված հեղափոխական-կոմունիստների բանակ ունենալ, այդ բանակը կա, այն կոչվում է կուսակցություն» (Երկեր, հ. 32, էջ 59—60)։ Այս խոսքերն առանձնապես հրատապ են այսօր։ Ղեկավարելու համար այնպիսի մի բարդ օրգանիզմ ինչպիսին սոցիալիստական հասարակությունն է զարգացման արդի փուլում, նրա արտադրական և գիտա-տեխնիկական ապարատը, անհրաժեշտ է կոմունիստների կոփված, քաղաքական առաջնորդի և մասսաների կազմակերպչի բոլոր հատկանիշներով օժտված կուսակցություն, որի գործունեությունը բխում է ժամանակակից ողջ գիտական իմացությունից։

Կուսակցության ղեկավար դերի բարձրացումն առավել ևս անհրաժեշտ է, քանի որ հասարակության կառավարման սիստեմի այժմյան կատարելագործման պայմաններում բացառիկ նշանակություն է ստանում մասսաների կազմակերպման ու կոմունիստական դաստիարակության խնդիրը։ Կոմունիստական շինարարության մասշտաբների ընդլայնման հետ մեկտեղ օրինաչափորեն ավելանում է նրա մասնակիցների թիվը, բնակչության ավելի ու ավելի լայն մասսաներ են մասնակից դառնում կոմունիզմի տնտեսական, սոցիալական ու հոգևոր հիմքերի ստեղծմանը։ Ոչ պակաս կարևոր է նաև այն, որ սոցիալիստական դեմոկրատիայի ու կուլտուրայի զարգացմանը զուգընթաց այժմ վիթխարի չափով աճում է մասսաների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, մասսաներ, որոնք ձգտում են իրենց ավանդը մուծել կոմունիզմի կառուցման ընդհանուր գործում։ Դրա հետ մեկտեղ պահանջվում է, որ յուրաքանչյուր աշխատավոր առավելագույն չափով հարստացնի իր գիտելիքները, թե գիտա-տեխնիկական, տնտեսական և թե կոմունիստական շինարարության քաղաքականության ասպարեզներում։



Այդ բոլոր գործոններից իսկ բխում են հասարակության կառավարման արդի սիստեմին ներկայացվող հատուկ պահանջները։ Մի կողմից, այդ սիստեմը պետք է ապահովի յուրաքանչյուր կազմակերպության, ձեռնարկության ու կոլեկտիվի գործունեության բավարար ազատությունը, նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, որպեսզի նրանք կարողանան լիովին դրսևորել իրենց հնարավորություններն ու եռանդը։ Մյուս կողմից՝ կառավարման սիստեմը պետք է նրանց գործունեությանը հաղորդի առավել պարզորոշություն, համաձայնեցվածություն, որպեսզի մեր հասարակության արտադրական, իսկ դրա հետ մեկտեղ նաև սոցիալ-քաղաքական ամբողջ օրգանիզմը գործի լավ ժամացույցի ճշգրտությամբ։ Այլ կերպ ասած՝ խոսքը արտադրության և ողջ հասարակական կյանքի կառավարման ոլորտում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի նոր, ավելի բարձր մակարդակով կիրառման մասին է։ Երկրի միասնական քաղաքական ղեկավարությունը բոլոր սոցիալական և այլ պրոցեսների ղեկավարման բնագավառում ուղղություն տվող, կենտրոնացնող գործոն է։ Այդպիսի ղեկավարությունն իսկ կուսակցության գլխավոր ֆունկցիան է։

Կան նաև այլ օբյեկտիվ պատճառներ, որոնց շնորհիվ աճում է կոմունիստական կուսակցության դերը որպես սովետական հասարակության ղեկավար ուժի։ Համառոտակի անդրադառնանք դրանցից միայն մեկին. դա առնչվում է այն բանի հետ, որ ՍՍՀՄ-ում կոմունիստական հասարակարգն ստեղծվում է համաշխարհային ասպարեզում սոցիալիզմի ու կապիտալիզմի քաղաքական ու գաղափարախոսական սուր պայքարի պայմաններում։ Կոմունիստական շինարարության այդ առանձնահատկությունը վիթխարի նշանակություն է ստանում կոմունիստական կուսակցության և սովետական պետության արտաքին քաղաքական գործունեության ոլորտում, որը պահանջում է արդի համաշխարհային զարգացման բարդ պրոցեսների խոր վերլուծություն և ուսումնասիրություն։ Այդպիսի վերլուծությունն անհրաժեշտ է ոչ միայն գիտականորեն հիմնավորված, ռեալիստական և, միաժամանակ, լենինիզմի տեսակետից հետևողական արտաքին քաղաքական գիծ մշակելու համար։ Այն անհրաժեշտ է կոմունիստական շինարարության ներքին պրոբլեմների, գաղափարական պայքարի և մասսաների կոմունիստական դաստիարակության խնդիրների լուծման ճիշտ կողմնորոշման համար։

Իմպերիալիզմի գաղափարախոսության ու քաղաքականության դեմ միջազգային կոմունիստական շարժման և համաշխարհային սոցիալիստական սիստեմի, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի ամրապնդման ու զարգացման համար մղվող պայքարում մեր հաջողությունները մեծ չափով պայմանավորված են այն ազդեցությամբ, որ դրա վրա գործում է կոմունիստական կուսակցության և սովետական պետության քաղաքականությունը միջազգային հարաբերությունների ասպարեզում։ Ճիշտ այդպես էլ կուսակցության նպատակասլաց աշխատանքը պայմանավորում է հաջողությունները՝ սոցիալիստական հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի, կոմունիստական համոզվածության ու գաղափարական կայունության, բուրժուական գաղափարախոսության հանդեպ անհաշտելիության ոգով բոլոր սովետական մարդկանց քաղաքական դաստիարակության ասպարեզում։

Ինչպես տեսնում ենք, արդի փուլում աճում է ՍՄԿԿ դերը սովետական հասարակության կյանքում շնորհիվ կոմունիստական շինարարության այն

առանձնահատկությունների, որոնք պայմանավորված են ինչպես երկրի ներքին զարգացմամբ, նույնպես և միջազգային իրադրությամբ, ուր տեղի է ունենում այդ պրոցեսը։

## 3.

Այսպիսով պարզ դարձավ, որ կոմունիստական շինարարության ժամանակաշրջանում Սովետական Միության կոմունիստական կուսակցության ղեկավար դերի բարձրացումը օրինաչափ երևույթ է սովետական հասարակության կյանքում, սոցիալիզմից կոմունիզմին վերաճելու օբյեկտիվ պայմանների ծնունդ։ Հայտնի է, սակայն, որ հասարակական զարգացման օրինաչափություններն ինքնին չեն իրականանում, այլ դրսևորվում են մասսաների գործողություններում։

Կոմունիստական շինարարության մեջ ՍՄԿԿ դերի բարձրացումը բխում է նաև կուսակցության՝ որպես քաղաքական կազմակերպության, բնույթից ու առանձնահատկություններից։ Այդ առթիվ առաջին հերթին պետք է նկատի ունենալ այն սկզբունքները, որոնց վրա հիմնված է կուսակցության ներքին կյանքը, նրա կազմակերպչական ու գաղափարական գործունեությունը, ինչպես նաև այնպիսի գործոններ, ինչպիսիք են նրա շարքերի աճը և որակական կազմի բարելավումը, ժողովրդի հետ ունեցած կապերի ամրապնդումը, ղեկավարության ոճի ու մեթոդների կատարելագործումը։ Այսպիսով, կուսակցության ղեկավար դերի բարձրացումը ամենից առաջ և գլխավորապես նրա պատասխանատվության մեծացումն է կոմունիզմի կառուցման գործում։ Կուսակցության ճիշտ քաղաքականությամբ, կազմակերպչական ու դաստիարակչական հմուտ աշխատանքով, աշխատավորների բոլոր հասարակական կազմակերպությունների կուսակցական կառավարման արվեստով է պայմանավորված սովետական պետության առաջընթացը դեպի պատմական նորանոր բնագծեր։

Կոմունիզմի կառուցման հաջող ղեկավարման գլխավոր պայմաններից են կոմունիստների տեսական զինվածությունը, քաղաքական կոփվածությունը։ Մարքսիզմ-լենինիզմը այն գիտական հիմքն է, որին կռթնած, կուսակցությունը բացահայտում է հասարակական զարգացման օրինաչափություններն ու հեռանկարները, վերլուծում պատմական իրադրությունը, առաջադրում կոմունիզմի համար պայքարի խնդիրները, նշում դրանց լուծման ուղիները։ Այս առնչությամբ հարկ է առանձնացնել հատկապես մարքս-լենինյան տեսության նկատմամբ կուսակցության ստեղծագործական, ամեն տեսակ դոգմատիզմին խորթ, մոտեցման հարցը։ Այդ տեսությունը, նրա հետևությունները ու դրույթները կուսակցությանը ծառայում են որպես գործողության ղեկավար սկզբունք, ելակետ, որոնց վրա հիմնվում է նրա պրակտիկ գործունեությունը, որպես հասարակական կյանքի օբյեկտիվ պրոցեսների վերլուծության և դրանից բխող նոր հետևությունների ու տեսական դրույթների հիմնավորման մեթոդոլոգիան։ Նման ստեղծագործական մոտեցման շնորհիվ է հնարավոր ոչ միայն տեսության հարստացումն ու զարգացումը, այլև նոր հասարակարգի կառուցման յուրաքանչյուր պատմական փուլի համար կոմունիստների ու բոլոր աշխատավորների կոնկրետ գործունեության պրակտիկ ծրագրերի մշակումը։ Այս առումով փայլուն օրինակ է կուսակցության ծրագիրը, ուր տրված է արդի դարաշրջանի և մեր երկրի ներքին զարգացման տեսական խոր վերլուծությունը, բացահայտված են սովետական հասարակության կյանքի նոր շրջանի՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի հիմնական գծերն ու օրինաչափությունները։ ՍՄԿԿ ծրագիրը բովանդակում է կուսակցության ու ժողովրդի այնպիսի հիմնական խնդիրների մշակումը, ինչպիսիք են կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը, կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացումը, նոր մարդու ձևավորումը։

Հարկ է հատուկ ընդգծել, որ իսկական գիտական ու ռեալիստական քաղաքականության հիմքը կարող է լինել միայն ստեղծագործաբար զարգացող տեսությունը, այսինքն կյանքի փաստերի վերլուծությունից բխող տեսությունը, որն առանձնացնում է տվյալ փուլի ամենահրատապ ու կարևոր պրոբլեմները, դրանով իսկ հնարավորություն ընձեռում սահմանելու գործնական կոնկրետ խնդիրները։ Քաղաքականության մեջ դոգմատիզմից, սուբյեկտիվիստական ու վոլյունտարիստական սխալներից կարելի է խուսափել միայն հենվելով այդպիսի տեսության վրա։ Հանրային արտադրության համակողմանի ինտենսիվացում ու արդյունավետության բարձրացում, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացում և հասարակության կառավարման կատարելագործում, մասսաների գաղափարական դաստիարակության բարելավում— ահա կուսակցության քաղաքականության այն հիմնական ուղղությունները, որ սահմանվել են ՍՄԿԿ XXIII համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումներում։ Այդ կարևորագույն պրոբլեմների առաջքաշումը ելնում է կենսական, ռեալ փաստերի հետևողական գիտական վերլուծությունից, հաշվի է առնում այն պահանջները, որոնք բխում են մեր հասարակարգի սոցիալ-տնտեսական և կուլտուրական առաջադիմության օբյեկտիվ օրինաչափություններից։

ՍՄԿԿ քաղաքականության մեջ, նրա գործունեության ծրագրում խտացված են այն գլխավոր, ընդհանուր խնդիրները, որոնք ողջ սովետական ժողովրդին առաջադրում է հասարակական զարգացման օբյեկտիվ ընթացքը։ Հասարակական զարգացման կոնկրետ ընթացքով պայմանավորված կուսակցության քաղաքականությունը վիթխարի նշանակություն է ձեռք բերում արդի պայմաններում, երբ առանձնապես կարևոր է սովետական բոլոր մարդկանց ստեղծագործական ողջ եռանդը ուղղել միասնական նպատակին՝ կոմունիզմի կառուցմանը։

Գիտականորեն հիմնավորված քաղաքականությունը կուսակցությանը հնարավորություն է ընձեռում հաջողությամբ կատարելու ժողովրդի ավանգարդի դերը, ավանգարդ, որը կոչված է պաշտպանելու և ամրապնդելու սոցիալիզմի հաղթանակով ստեղծված մեր հասարակության գաղափարական ու սոցիալ-քաղաքական միասնությունը։

Հասարակության նյութական ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտներում կուսակցության ներգործությունն ուժեղացնելու կարևոր գործոն է նաև ներկուսակցական դեմոկրատիայի զարգացումը։ Դա ևս սովետական սոցիալիստական հասարակության բուն էությամբ պայմանավորված օրինաչափ երևույթ է, հասարակություն, որի կենսագործունեությունը օբյեկտիվորեն կարիք ունի ղեկավար այնպիսի ուժի, ինչպիսին կոմունիստական կուսակցությունն է։ Կուսակցության նորմերն ու սկզբունքները անմիջականորեն ներգործում են պետական ու հասարակական կյանքի վրա։ Օրինակ, կուսակցության գործունեության հիմքում ընկած դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը դարձել է (որոշ տարբերություններով ու դրսևորման կոնկրետ ձևերով) պե-

տական ղեկավարման, կառավարման ողջ սիստեմի համապարփակ արմատական սկզբունքը։ Կոմունիզմի կառուցման շրջանում, երբ սովետական դեմոկրատիայի համակողմանի ծավալումը, բոլոր քաղաքացիներին երկրի կառավարմանը մասնակից դարձնելը բնորոշում են սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը, ավելի կարևոր նշանակություն է ստանում կուսակցության ներքին կյանքը որպես այդ պրոցեսների վրա ազդող գործոն։

Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումն ու կատարելագործումը մեր օրերում բացում են հասարակական կոմունիստական ինքնակառավարման ճանապարհը։ Այդ ճանապարհին ներկուսակցական կյանքի լենինյան նորմերն ու սկզբունքները կծառայեն որպես ամենաստույգ ուղեցույցներ և լավագույն օրինակներ։ Օրինակ, լենինյան այն միտքը, թե՝ «... կուսակցության բոլոր գործերն անմիջականորեն կամ ներկայացուցիչների միջոցով վարում են կուսակցության բոլոր անդամները հավասար իրավունքներով և առանց որևէ բացառության...» (տե՛ս, Երկեր, հ. 11, էջ 546), կդառնա կոմունիստական հասարակական ինքնակառավարման հիմնական սկզբունքը, երբ ողջ բնակչությունն անխտիր կմասնակցի հասարակական գործերի կառավարմանը։ Ճիշտ այդպես էլ կոմունիստների գաղափարական միասնության վրա հիմնված կուսակցական գիտակցական կարգապահությունը դառնում է աշխատավորների այն ինքնակարգապահության օրինակը, որը կլինի կոմունիստական ինքնակառավարման անբաժանելի տարրը։

Վերը շարադրվածը մի անգամ ևս ապացուցում է, թե արդի փուլում կուսակցության ղեկավար դերի հաջող իրականացման համար որպիսի նշանակություն ունի ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացումը լենինյան նորմերի ու սկզբունքների հիման վրա։ Այդպիսի խնդիր է դրված ՍՄԿԿ ծրագրում։ Կուսակցության XXIII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների մշակած և մեր կուսակցության կողմից կուսակցական շինարարության բնագավառում հետևողականորեն իրականացվող միջոցառումների կոմպլեքսն ուղղված է այդ խնդրի լուծմանը, կուսակցության Ծրագրի հետևյալ դրույթի կատարմանը. «Կուսակցությունը, որպես կոմունիստական հասարակարգ կառուցող ժողովրդի առաջավոր ջոկատ, պետք է առջևից ընթանա նաև իր ներկուսակցական կյանքի կազմակերպման գործում, որպես օրինակ ծառայելով կոմունիստական հասարակական ինքնակառավարման առավել կատարյալ ձևերի մշակման համար...»։

* * *

Կոմունիստական կուսակցության կողմից սովետական հասարակության ղեկավարումը բազմաբովանդակ հասկացություն է։ Այս կոնսուլտացիայում քննարկվել են դրա միայն մի քանի կողմերը, որոնք օգնում են հասկանալու կոմունիզմի կառուցման գործում ՍՄԿԿ ղեկավար դերի օբյեկտիվ պայմանավորվածությունը, ինչպես նաև այն հիմնական նախապայմանները, որոնք կուսակցությանը թույլ են տալիս հաջողությամբ կատարելու իր այդ դերը։ Վերջում կարող ենք անել այսպիսի հետևություն. կոմունիզմի կառուցման պրոցեսը մեր երկրում ակնառու վկայությունն է այն բանի, որ դրա հաջողությունները վճռականորեն պայմանավորված են մարքս-լենինյան կուսակցության ղեկավարությամբ։

Կոմունիստական կուսակցության գլխավորությամբ կենսագործելով նրա գիտականորեն հիմնավորված քաղաքականությունը՝ սովետական ժողովուրդը հաղթականորեն լուծում է կոմունիզմի կառուցման վիթխարի խնդիրները։

«Политическое самообразование», 1970 г., № 11:



## ԾԱՂԿՈՂ ՔԱՂԱՔ

Վերջին երկու տասնամյակում Սովետական Հայաստանի քարտեզի վրա երևան եկան նոր քաղաքներ, որոնք էական դեր են խաղում հանրապետության էկոնոմիկայի զարգացման գործում։

Այդ քաղաքներից է Կամոն, որն արդյունաբերական նոր ձեռնարկությունների հետ միասին հայտնի է իր զովասուն բնությամբ, առողջարար օդով, գեղարքունաց լեռներից առատորեն սկիզբ առնող սառնորակ, վճիտ ջրերով, շրջապատի բուսականությամբ, աշխատասեր ու հյուրընկալ ժողովրդով։

1 —

Սովետական իշխանության առաջին իսկ տարվանից Կամոյի աշխատավորները ձեռնամուխ եղան խաղաղ, ստեղծագործական աշխատանքի։ Շունչ ու կենդանություն տվին դաշտերին, սկսեցին աստիճանաբար վերականգնել իրենց քայքայված տնտեսությունը, բարեկարգել քաղաքը, կառուցումներ սկսել։ Այդ գործում նրանց ոգեշնչում էին հեղափոխության բովով անցած կոմունիստներն ու կոմերիտականները, որոնք գտնվում էին լենինյան գաղափարների իրագործման համար ծավալված պայքարի առաջին գծում, հանդես բերում ամուր կամք, անսպառ եռանդ, հինը փոխելու և նորը կառուցելու նախաձեռնություն։

Սերնդից սերունդ ֆիզիկական ծանր աշխատանք կատարող, հորդ քրտինքով քարից ու հողից հաց քամող Նոր Բայազետի գյուղացին հիացավ, երբ 1929 թ. տեսավ առաջին տրակտորը, նոր կյանքի կենսաբեր գարնան անդրանիկ ծիծեռնակը։ Շատ չանցած գործի դրվեցին նորաստեղծ ՄՏ կայանի տարբեր մարկաների նոր տրակտորները, շարքացանները, հնձող ու կապող մեքենաները, կալսիչները, կոմբայնները և այլն, որոնք արմատական հեղաշրջում առաջացրին հողագործության բնագավառում։ Դրանք թեթևացրին գյուղացու աշխատանքը, ավելացրին բերքատվությունն ու կոլտնտեսականների եկամուտը։ Վերջապես, վերացվեց անցյալից ժառանգված չքավորությունը և արտադրամիջոցների հանրային սեփականության հիման վրա իրագործվող արտադրապրոցեսում կյանքի կոչվեց յուրաքանչյուրին ըստ աշխատանքի վարձատրության սոցիալիզմի սկզբունքը։

2 —

Կար ժամանակ, երբ Նոր Բայազետի բոլոր ձեռնարկությունների համախառն արտադրանքի գերակշռող մասը կազմում էր գյուղատնտեսության

արտադրանքը։ Բատիկի անվան կոլտնտեսությունը (որի բազայի վրա 1967 թվականից կազմակերպված է սովխոզ) իր հիմնական արտադրաֆոնդերով ու արտադրանքով գրավում էր առաջատար տեղ։ Այլ կերպ ասած, տնտեսության որոշիչ ճյուղը գյուղատնտեսությունն էր և դա պատահական չէր։ Չէ՞ որ շուրջ 100 տարի գավառի կենտրոն հանդիսացող և քաղաք համարվող այս բնակավայրը (որը Երևանից գտնվում է 100, իսկ Սևանա լճից 5 կիլոմետր հեռավորության վրա) բառիս բուն իմաստով արդյունաբերություն չի ունեցել։ Մինչդեռ կյանքը, սոցիալիստական շինարարության պրակտիկան ցույց տվեց, որ արդյունաբերության զարգացման համար այստեղ կան լայն հնարավորություններ։ Մնում էր նրան կազմակերպչորեն օգնել և համապատասխան միջոցներ տրամադրել։ Հարազատ սովետական կառավարությունը կատարեց և՛ մեկը, և՛ մյուսը։

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության օգնության ու հոգատարության շնորհիվ Նոր Բայազետում աստիճանաբար հիմք դրվեց նաև արդյունաբերության զարգացմանը, որն առանձնապես լայն թափ ստացավ վերջին ժամանակաշրջանում։ Աշխատավորները սիրով մասնակցեցին այդ գործին, արագորեն կառուցեցին արտադրական նորանոր ձեռնարկություններ, հիմնովին փոխեցին իրենց քաղաքի դեմքը, այն դարձրին արդյունաբերական քաղաք և 1958 թվականից կոչեցին հեղափոխության լեգենդար հերոս Կամոյի անունով։

Սովետական իշխանության տարիներին քաղաքում կազմակերպված «Կարմիր աստղ» կոշկակարական արտելը վերածվել է ֆաբրիկայի, տեքստիլ արտելը՝ տրիկոտաժ ֆաբրիկայի, փայտամշակմանը՝ կահույքի կոմբինատի, թիթեղագործական, նորոգման և մի քանի ուրիշ մանր արտելներ՝ կենցաղսպասարկման կոմբինատի և այլն։ Դրանց կողքին վերջին տարիներին վեր խոյացան ժամանակակից առաջավոր տեխնիկայով ու սարքավորումներով հագեցված կաբելի, սարքաշինական, ավտոնորոգման, «Սևան» հանքային ջրի գործարանները, կարի ֆաբրիկան և այլ ձեռնարկություններ, որոնք հիմնովին փոխեցին քաղաքի դեմքը և հանդիսացան արդյունաբերության զարգացման հիմնական օջախները։

Ահա մի քանի տվյալներ, որոնք պարզորոշ պատկերացում են տալիս վերելքի ուղին բռնած Կամո քաղաքի արդյունաբերության զարգացման վերաբերյալ։

Աղյուսակ 1

Կամոյի արդյունաբերական ձեռնարկությունների թիվը, հիմնական արտադրաֆոնդերը և համախառն արտադրանքը

| | 1940 թ. | 1950 թ. | 1960 թ. | 1969 թ. |
|---|---|---|---|---|
| 1. Արդյունաբերական ձեռնարկությունների թիվը | 7 | 8 | 9 | 16 |
| 2. Հիմնական արտադրաֆոնդերի արժեքը (մլն. ռ.) | 0,13 | 0,47 | 1,3 | 8,5 |
| 3. Համախառն արտադրանքը (մլն. ռ.) | 0,23 | 0,54 | 3,8 | 26,1 |

Աղյուսակում բերված տվյալներից երևում է, որ արդյունաբերական ձեռնարկությունների թվի ավելացման հետ միասին առավել չափով ավելացել են նաև նրանց հիմնական արտադրաֆոնդերն ու համախառն արտադրանքը։



Հատկանշական է, որ 1969 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, հիմնական արտադրաֆոնդերն ավելացել են մոտ 64, իսկ համախառն արտադրանքը՝ 104 անգամ։ Կարևորն այն է, որ հիմնական արտադրաֆոնդերի այդպիսի մեծ չափով ավելացման հետ միասին տարեցտարի ավելացել է նաև դրանց դիմաց տրված արտադրանքը։ Այսպես. 1940 թվականին մեկ ռուբլու հիմնական արտադրաֆոնդի դիմաց տրվել է 1,15 ռ., 1950 թվականին՝ 1,77 ռ., 1960 թվականին՝ 2,98 ռ. իսկ 1969 թվականին՝ 3,7 ռ. արտադրանք։ Այդպիսի աճը արդյունք է ձեռքի աշխատանքի կրճատման, նոր տեխնիկայի ներդրման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, արտադրության մասնագիտացման և, վերջապես, աշխատանքի արտադրողականության բարձրացման։

Աղյուսակում բերված տվյալներից միաժամանակ երևում է և այն, որ 1940 թվականի 0,23 միլիոն ռուբլու դիմաց արդյունաբերական ձեռնարկությունները 1969 թվականին տվել են 26,1 միլիոն ռուբլու համախառն արտադրանք, որն ավելի քան 10 անգամ գերազանցում է քաղաքի տերիտորիայում գործող գյուղատնտեսական ձեռնարկությունների (Կամոյի և նրա տերիտորիայում ընդգրկված նախկին Հացառատ և Արծվաքար գյուղերի սովխոզների) համախառն արտադրանքին՝ միասին վերցրած։

Այս պերճախոս փաստը հաստատում է այն իրողությունը, որ երբեմնի հետամնաց գյուղաքաղաքն այսօր դարձել է արդյունաբերական ծաղկող քաղաք։ Նրա արդյունաբերական ձեռնարկությունները թողարկում են մոտ 30 տեսակի արտադրանք՝ էլեկտրալարեր, ճշգրիտ ու էլեկտրա-տեխնիկական սարքավորումներ, հայկական ոճի գեղեցիկ գորգեր և այլն, որոնք լայն պահանջարկ ունեն։ Դրանցից 18 տեսակը արտահանվում են արտասահմանյան երկրներ։

Կամոյի արդյունաբերությունը երիտասարդ է և աչքի է ընկնում իր աճի բարձր տեմպերով։ Բավական է ասել, որ միայն 1970 թվականին, 1969 թվականի համեմատությամբ, քաղաքի արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է մոտ 21 տոկոսով։ Կան առանձին ձեռնարկություններ, ուր արտադրության աճման տեմպերն ավելի բարձր են։ Արտադրանքի բարձր տեմպեր կապահովվեն նաև առաջիկա տարիներում, որովհետև տնտեսական նոր ռեֆորմի հետևողական իրագործման հետ միասին շարք են մտնում նոր արտադրամասեր, վերակառուցվում ու մեծ չափերով ընդարձակվում են խոշոր արտադրական ձեռնարկությունները, որոնցից մի քանիսի կարողությունը կրկնապատկվելու և եռապատկվելու է։

Տեղական կուսակցական կազմակերպությունները քաղաքական-մասսայական աշխատանքի և սոցիալիստական մրցության ծավալման միջոցով բարձրացրել են բանվորների ու ինժեներա-տեխնիկական անձնակազմի արտադրական ակտիվությունը, զարգացրել նրանց ստեղծագործական նախաձեռնությունը։ Դրա և նոր տեխնիկայի արմատավորման շնորհիվ արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվները պատվով կատարեցին հնգամյա պլանով սահմանված առաջադրանքները։ Ահա նրանցից մեկը՝ կարի ֆաբրիկան, որը գործի վերածելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով ժամկետից շուտ կատարեց հնգամյա պլանով տրված առաջադրանքները։ Հնգամյակում նախատեսված 21,5 միլիոն ռուբլու փոխարեն, 4 տարի 10 ամսում ֆաբրիկան տվեց 22,8 միլիոն ռուբլու արտադրանք։ Նրա կոլեկտիվը, նախորդ հնգամյակի համեմատու-

թյամբ, կրկնապատկեց աշխատանքի արտադրողականությունը և պլանից ավելի թողարկեց 150 հազար կտոր զանազան հագուստեղեն։

Կամոյի արդյունաբերական ձեռնարկությունների առավել բարձր ցուցանիշների հասան Սովետական Հայաստանի հիսնամյա հոբելյանական տարում՝ 1970 թվականին։ Նրանք գերակատարեցին ոչ միայն արտադրանքի թողարկման, այլև իրացման պլանը (4,3 տոկոսով)։ Նախորդ տարվա համեմատությամբ, արտադրանքի իրացման աճը կազմեց 16 տոկոս։ Այս գործում առանձնապես աչքի ընկան կաբելի, սարքաշինական, «Սևան» հանքային ջրի և պանրի գործարանները։

Տեղական կուսակցական և սովետական օրգաններն անում են ամեն ինչ, որպեսզի այդ նվաճումները ամրապնդվեն և դրանց բազայի վրա նոր հնգամյակում ավելի մեծ հաջողություններ ձեռք բերվեն ո՛չ միայն արտադրանքի թողարկման, այլև եղած ձեռնարկությունների ընդարձակման ու նորերի կառուցման բնագավառներում։ Կուսշրջկոմի առաջին քարտուղար ընկ. Աղաբեկ Գևորգյանը մեզ հետ ունեցած զրույցի ժամանակ պատմելով արդյունաբերությանը հատկացվող միջոցների ավելացման և քաղաքի զարգացման նկատմամբ կուսակցության ու կառավարության ցուցաբերած ջերմ հոգատարության մասին, ասաց, որ շինարարները, մոնտաժողները, տրանսպորտի և մյուս աշխատողները դրան պատասխանում են կոնկրետ գործերով, սիստեմատիկաբար գերակատարում տրված առաջադրանքները։ Կուսշրջկոմը և քաղսովետի գործկոմը հետևում են, որ արդյունաբերության զարգացման համար կապիտալ ներդրումներն իրացվեն խելացիորեն, որ շինարարությունը կատարվի կոմպլեքս կերպով, միջոցները չփոշիացվեն և սահմանված ժամկետին արտադրական կարողությունները շահագործման հանձնվեն։

Այդ բոլորը, իհարկե, հեշտ չեն և կապված են որոշակի դժվարությունների (տրանսպորտի պակասի, նյութերի մատակարարման գործի կարգավորման, կադրերի պատրաստման և այլն) հետ։ Սակայն Կամո քաղաքի միասնական կուսակցական կազմակերպությունը, եռանդով լեցուն աշխատավորները դժվարությունների առջև կանգնող չեն։ Իրենց ամուր կամքի, եռանդի, մտքի ու բազկի հզոր ուժով նրանք արագ թափով առաջ են տանում նորոգ կյանքի շինարարության հրապարակի վերածված հարազատ քաղաքի արդյունաբերության զարգացումը։ Դա հայրենանվեր մեծ գործ է, որը երախտագիտությամբ կհիշեն գալիք սերունդները։

3 —

Սովետական իշխանության առաջին տարիներին Կամո քաղաքում բանվորներն աննշան թիվ էին կազմում։ Նրանցից աչքի ընկնող մի փոքր ջոկ, թվով 6—8 հոգի, երախտավոր վարպետ, գրաշար ու տպագրիչ, Տ. Մանուչարյանի ղեկավարությամբ աշխատում էին շրջսովետի գործկոմի տպարանում։ Հետագայում բանվորական ջոկատներ առաջացան նաև նոր հիմնադրված մի քանի փոքր ձեռնարկություններում։ Բայց, այնուամենայնիվ, բանվորի պատվավոր կոչումը կրողների թիվը քիչ էր և դա հասկանալի է։ Միայն համեմատաբար խոշոր արտադրական ձեռնարկությունների հիմնադրումից հետո է, որ առաջացան բանվորական սովար կոլեկտիվներ, երևացին ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Այդ առումով որոշակի հետաքրքրություն են ներկայացնում հետևյալ տվյալները։



Աղյուսակ № 2

Կամո քաղաքի բանվորների, ինժեներա-տեխնիկական և վարչա-սպասարկման աշխատողների թիվը ըստ տարիների

| | 1951 թ. | 1969 թ. | 1960 թ. | 1970 թ. |
|---|---|---|---|---|
| Բանվորներ | 530 | 1470 | 4216 | 5000 |
| Ինժեներա-տեխնիկական և վարչա-սպասարկման աշխատողներ | 76 | 210 | 603 | 633*) |
| որից՝ ինժեներներ և տեխնիկներ | 30 | 84 | 241 | 246** |

№ 2 աղյուսակում բերված տվյալներից երևում է, որ 20 տարում (1951—1970 թթ.) բանվորների թիվն աճել է 9,4 անգամ և այսօր հասել է 5.000-ի։ Դա արդեն քաղաքի աշխատողների մեծ մասն է, նրանց առաջատար ուժը — պանծալի բանվոր դասակարգը, որին վճռական դեր է պատկանում քաղաքի էկոնոմիկայի ստեղծման ու զարգացման գործում։ Բանվորների մեծ մասը երիտասարդներ են, որոնք որակավորվել ու ձեռք են բերել խառատի, կոդուղի, փաթաթողի, ձևողի և այլ մասնագիտություններ։ Նրանցից շատ-շատերը (Վ. Խզմալյան, Վ. Աղլամազյան, Վ. Աղոյան, Լ. Զաքոյան, Հ. Իսրայելյան և ուրիշներ) դարձել են իրենց գործի իսկական վարպետներ, սիստեմատիկաբար գերակատարում են արտադրական պլանները և հարգանք վայելում կոլեկտիվում։

Նորագույն տեխնիկան, արդյունաբերության մեջ կատարվող գիտատեխնիկական հեղաշրջումը, բարդ ու նուրբ տեխնոլոգիական պրոցեսներն այսօր առավել բարձր պահանջներ են ներկայացնում բանվորներին, որոնք պետք է ունենան անհրաժեշտ գիտելիքներ, փորձ, հմտություն և որակավորում։ Հատկապես Կամոյի առաջատար ձեռնարկությունների համար, որոնք կրկնակի չափով խոշորացվում են, այդպիսի բանվորների, ինչպես նաև վարպետների ու տեխնիկների պատրաստումը օրվա հրամայական պահանջն է, լուրջ պրոբլեմ։ Վերջինիս լուծման նպատակով քաղաքում բացված են ինդուստրիալ տեխնիկում և պրոֆտեխնիկական ուսումնարան, ուր սովորում են հարյուրավոր երիտասարդներ։ Զգալի թվով բանվորներ որակավորվում են տեղի մասնագետների մոտ և Միության տարբեր քաղաքների համանման ձեռնարկություններում։ Մի շարք գործարանների դիրեկտորներ (ինչպիսին, ասենք, Հրայր Սուլթանյանն է), արտադրությունը հմտորեն գլխավորելու հետ միասին մշտապես իրենց ուշադրության տեսադաշտում են պահում կադրերի պատրաստման ու որակավորման գործը։

Առաջներում Կամոյում հազուկենտ պրակտիկ տեխնիկներ ու մեխանիկներ կային, իսկ ինժեներներ՝ համարյա չկային։ Այդպիսիք հրավիրվում էին դրսից, որոնք գործն ավարտելուց հետո գնում էին։ Իսկ այժմ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությամբ 246 ինժեներ, մեխանիկ ու տեխնիկ են աշխատում քաղաքում, որոնք հիմնականում տեղացիներ են։ Նրանցից Է. Տոնոյանը, Վ. Կուռոյանը, Վ. Հովհաննիսյանը և մյուսները դարձել են արտադրության հրամանատարներ, նորի, առաջավորի արմատավորողներ։ Ամեն տարի տեխնիկական ինտելիգենցիայի շարքերը համալրվում

*) 1970 թ. առաջին կիսամյակի տվյալներով.

**) 1970 թ. առաջին կիսամյակի տվյալներով.

են նոր մասնագետներով և, հատկապես, տեղացի այն երիտասարդներով, որոնք բարձրագույն կրթություն ստանալուց հետո սիրով աշխատանքի են անցնում հարազատ քաղաքում։

4 —

Բարեկարգվել ու գեղեցկացել է Կամո քաղաքը, զարգացել է նրա կուլտուրան, բարեփոխվել կենցաղը, բարեկեցիկ ու բերկրալի է դարձել աշխատավորների կյանքը։

Նրանց համար, ովքեր Կամո քաղաքը տեսել են երկու տասնամյակ առաջ (էլ չենք ասում նախասովետական շրջանում), այսօր անճանաչելի է դարձել այն իր ասֆալտապատ ու ծառազարդ փողոցներով, այգիներով, պուրակներով, արտադրական, վարչական ու բնակելի նորակառույց գեղեցիկ շենքերով, օդանավակայանով, վեր խոյացած հուշարձաններով, կուլտուր-լուսավորական ու առողջապահական հիմնարկություններով, առևտրական ու հասարակական սննդի օբյեկտներով, ինքնատիպ լողավազանով, ցայտաղբյուրներով, ավտոտրանսպորտով և այլն։

Չորս կողմից աճել ու ընդարձակվել է քաղաքը։ «Խաչեր» կոչված թաղամասից այն ձգվել ու նոր շենքերով միացել է Հացառատին (նախկին ճահիճների հետքն անգամ չկա)։ Բնակելի շատ շենքեր են կառուցվել նաև մյուս թաղամասերում, հատկապես, շրջակայքի ազատ տարածություններում։

Քաղաքում ուժեղ թափով շարունակվում է նաև կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, մանկապարտեզների, արտադրական նոր կորպուսների, կենցաղսպասարկման տաղավարների, 600 տեղանոց դահլիճ ունեցող կուլտուրայի հոյակապ պալատի, յոթ հարկանի հյուրանոցի և վարչական մի շարք շենքերի շինարարությունը։ Առաջիկայում կկառուցվեն նաև կաբելի գործարանի, կահույքի ֆաբրիկայի տիպային շենքերը՝ ավելի քան 10 միլիոն ռուբլու արժողությամբ։

Շինարարության այդպիսի թափն ու ծավալն ուրախալի են, ոգևորիչ։ Բայց պետք է խիստ հետևել, որ ամեն մի օբյեկտ, հատկապես առանձնատները կառուցվեն պլանային կարգով՝ քաղաքի գլխավոր հատակագծին համապատասխան, որպեսզի և՛ հողը չշռայլվի, և՛ այսօրվա կառուցվածը վաղը չքանդվի։ Շինարարության համար յուրաքանչյուր հողակտորի օգտագործմանը պետք է նայել ապագայի տեսանկյունից, հստակորեն որոշել քաղաքի սեփական դեմքի կազմավորման և, առհասարակ, նրա կենտրոնի վերակառուցման հարցը։

Կամո քաղաքի ուրախացնող բոլոր հաջողությունների մեջ էական տեղ է գրավում նաև բնակչության աճը։ 1926 թվականի 8.447-ի դիմաց այժմ այն ունի 20.000 բնակիչ։ Բնակչության թվի այդպիսի մեծացումը տեղի է ունեցել, մի կողմից՝ բնական աճի, մյուս կողմից՝ Հացառատ և Արծվաքար գյուղերը քաղաքի տերիտորիայում ընդգրկելու շնորհիվ։

Բնակչության աճի հետ միասին նշանակալից չափով ավելացել են բանվորների և ծառայողների եկամուտները, բարձրացել է նրանց կենսամակարդակը։ Այդ բանում համոզվելու համար մտեք ցանկացած բանվորի ու ծառայողի տուն. դուք կտեսնեք գեղեցիկ կահավորում, բարեկեցիկ ու կուլտուրական կյանք։ Ռադիոընդունիչով, նոր մահճակալներով և նման բաներով այլևս ոչ ոքի չես զարմացնի։



— Մեր քաղաքացիները,— գոհունակությամբ պատմում է քաղառի դիրեկտոր Ռ. Ղամարյանը,— այժմ ավելի շատ են գնում երկարաժամկետ օգտագործման այնպիսի ապրանքներ, ինչպիսիք են լվացքի մեքենաները, սառնարանները, հեռուստացույցները, դաշնամուրը, կահույքը և այլն։ Տարեկան մեր ապրանքաշրջանառությունը կազմում է մոտ 10 միլիոն ռուբլի, որի զգալի մասը նման ապրանքների վաճառքից է գոյանում։

Իհարկե, բնակչությանը այդպիսի ապրանքներ է մատակարարում նաև սպառկոոպերացիան, որն առևտրի լայն ցանց ունի։

Հետաքրքրական թվեր է հաղորդում քաղսովետի գործկոմի նախագահի տեղակալ Ժ. Ռափյանը։

— Քաղաքում կա ջեռուցման 11 կաթսայատուն, կոյուղի, մաքրման կայան, 360 բնակարանում բնական, մնացած մեծ մասում՝ հեղուկ գազի օջախներ, կենցաղսպասարկման լայն ցանց։ 1969 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, քաղաքացիների կենցաղսպասարկման ծառայությունը եռապատկվել է։

Բնակչության կենցաղի բարելավման, կուլտուրական սպասարկման և քաղաքի հեռանկարային զարգացման մասին մեզ շատ բան պատմեց նաև քաղսովետի գործկոմի նախագահ Հրաչիկ Դադոյանը։ Նրա հետ մենք հաճելի զրույց ունեցանք։ Դրանցից մեկի ժամանակ ներս մտավ պանրագործարանի դիրեկտոր, սոցիալիստական աշխատանքի հերոս, արդեն ավագ սերնդին պատկանող Հակոբ Կուռոյանը։ Ես նրան վաղուց գիտեմ որպես գործարար և պետական որոշումները հետևողականորեն կատարող աշխատողի։

— Մեծ պանրագործարան ենք կառուցել,— ասաց Կուռոյանը,— ջեռուցման լայն հնարավորություն կա, ջերմատուն պետք է ունենանք, քաղաքի բանվոր ծառայողներին տարվա բոլոր եղանակներին թարմ բանջարեղեն տանք, բայց ջերմատան համար հողամաս տրամադրելու մասին որոշման կատարումը ձգձգվում է։

Ընկ. Կուռոյանը վրդովված էր, որ գործը ուշացվում է։ Նախագահը նրան հանգստացրեց և ասաց, որ ջերմատան կառուցումն արագացնելու համար կարվի ամեն ինչ։

Դա նոր միջոցառում է, գնահատելի նախաձեռնություն, որը նույնպես կապված է քաղաքի աշխատավորության սպասարկման, նրա սննդի առավել բարելավման հետ։

Նոր զարգացող այս քաղաքի հին և նոր սերնդի մարդիկ առհասարակ գովեստարժան շատ գործեր են անում. դրանց բոլորի մասին հնարավոր չէ մեկ հոդվածում խոսել։ Բայց կան գործեր, որոնց մասին, թեկուզ շատ կարճ, պետք է ասել։

Կամո քաղաքն առատ է սառնորակ ջրերով։ Բայց, չնայած դրան, առաջներում այն ծարավ էր ու խանձված։ Քաղաքի պատմությանը լավ քաջածանոթ և նրա շինարարությանն ակտիվ մասնակցող Ավետիք Հովեյանը պատմում է, որ այստեղ ընդամենը 11 աղբյուր կար, որոնցից 7-ը՝ մեկ գծի վրա։ Մարդիկ դրանց մոտ հերթի էին կանգնում, դույլերով ու կժերով հարյուրավոր մետր հեռավորության վրա ջուր տանում, իսկ մի մասն էլ պարզապես գետի ջրից էր օգտվում։

Իսկ այսօ՞ր։ Ինչ համեմատություն։ «Խաչեր» կոչված վայրի հորդառատ ջրերը բազմաթիվ երակներով քաղաք են բերվել։ Համարյա բոլոր քաղաքացիներն իրենց բակերում աղբյուր, իսկ մի մասն էլ տներում ջրի ծորակ

ունեն: Դա մեծ բարիք է, վաղուցվա փափագած երազի իրագործում: Առատորեն հոսող ջուրը քաղաքացիներին հնարավորություն տվեց ո՛չ միայն էապես բարելավելու կենցաղը և պահպանելու կատարյալ մաքրություն, այլև աճեցնելու ծառ ու ծաղիկ, բանջարեղեն, տանձ ու խնձոր, բալ ու սալոր, որոնք զարդարում են նրանց սեղանը:

Սովետական իշխանության տարիներին բարգավաճած տնտեսական բազայի հիման վրա Կամոյում զարգացան նաև կուլտուրան ու լուսավորությունը: Նրա պետական դրամատիկ թատրոնը, կինո-թատրոնը, կուլտուրայի տունը, գրադարանները, գավառագիտական թանգարանը դարձել են աշխատավորների սիրված վայրերը, նրանց հոգևոր պահանջմունքների բավարարման կարևոր միջոցը:

Այստեղ առանձնապես լայն է լուսավորության ցանցը:

— Մեր քաղաքում,— պատմում է քաղժողկրթբաժվար Լ. Գուլաբյանը,— գործում են 10 դպրոց, որոնցից 2-ը մեկ հերթի: Դպրոցներում սովորում են 5.200 աշակերտ, նրանց կրթում ու դաստիարակում են 270 ուսուցիչ:

Բեղմնավոր ու անգնահատելի է ուսուցիչների գործունեությունը, նրանք կազմում են քաղաքի մտավորականության առավել ստվար մասը և իրենց շարքերում ունեն մաթեմատիկայի, ֆիզիկայի, պատմության, բնագիտության, լեզվի ու գրականության և այլ առարկաների որակյալ մասնագետներ: Նրանց սաներից շատերն աճել ու դարձել են կուսակցական, պետական ու տնտեսական ղեկավար աշխատողներ, գիտնականներ, բարձրագույն կրթությամբ տարբեր մասնագետներ, արտադրության առաջավորներ, որոնք երախտագիտությամբ են հիշում ու հարգում իրենց ուսուցիչներին:

Անգնահատելի գործ են կատարում նաև տեխնիկական ինտելիգենցիան, բժիշկները, կուլտուր-լուսավորական և մյուս հիմնարկությունների աշխատողները, որոնք բանվորների հետ միասին, կուսակցական կազմակերպությունների ամենօրյա ղեկավարությամբ ու օգնությամբ, առաջ են տանում նոր կյանքի կառուցումը, բազմապատկում իրենց ծաղկող ու զարգացող քաղաքի փառքը:

* * *

Սովետական իշխանության հիսուն տարում Կամո քաղաքը կտրեց-անցավ դարերի ճանապարհ, ձեռք բերեց այն, ինչ նախկինում երազ էր թվում: Մեծ են, հուսադրիչ ու նշանակալից նրա հաջողությունները, որոնցով քաղաքի աշխատավորները բաց ճակատով են դիմավորում Հայաստանի կոմունիստական կուսակցության XXV և Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարները:

Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ



## Էջեր հեղափոխական անցյալից

# ՄԵՐ ՄԱՐՏԱԿԱՆ «ՉՈՆ»-Ը

Սովետական կարգերի առաջին տարիներին հեղափոխության նվաճումների պաշտպանության դիրքերում աներեր կանգնած էին հակահեղափոխության դեմ պայքարող կոմունիստներից և կոմերիտականներից կազմված՝ հատուկ ծառայության զորամասերը (части особого назначения, ЧОН):

Չոնի վրա կոնկրետ պարտականություն էր դրված զորավիգ լինել նորաստեղծ սովետական իշխանությանը, կոմունիստներին ու կոմերիտականներին սովորեցնել ռազմական գործը, պատեհ առիթներին զենքի ուժով ճնշելու դասակարգային թշնամու ամեն տեսակի անակնկալ ոտնձգությունները, որը բաց կռվում պարտություն կրելով անցել էր ընդհատակ, ու դավադրությամբ վնասում էր իշխանությանը: Անհրաժեշտ էր նաև լիկվիդացնել քաղաքական բանդիտիզմը, որը գլուխ էր բարձրացրել սովետական իշխանության առաջին տարիներին:

Չոնը— առաջին անգամ ստեղծվել է Սովետական Ռուսաստանում 1918 թվականին՝ 1921 թվականին ՌԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեն հաստատում է նրա կանոնադրությունը: Ըստ որի Չոնն ուներ իր հանրապետական, երկրամասային, մարզային, գավառային ղեկավար մարմինը: Ընդհանուր ղեկավարությունը գտնվում էր կուսակցության Կենտրոնական կոմիտեի, իսկ տեղերում երկրամասային, գավառային կոմիտեների ձեռքում: Կուսակցությունն իր ղեկավարությունն իրականացնում էր Չոնի խորհուրդների միջոցով, իսկ խորհուրդներն ունեին շտաբներ, որոնք կազմակերպում էին զորամասերի ուսուցումը և մարտական գործողությունները: Մեր հանրապետությունում մարտական օպերացիաները անց էին կացվում Հայաստանի միլիցիայի և արտակարգ հանձնաժողովի— Չեկայի (որը 1922 թվականից վերակազմվեց պետքաղվարչության) ուժերի հետ միասին,— Հատուկ ծառայության զորամասերը,— ասել է Ալ. Մյասնիկյանը,— մեծ դեր խաղացին քաղաքացիական կռիվներում, հատկապես այստեղ, Կովկասում:

Հայկական ՍՍՀ-ում Չոնը կազմակերպվել է 1921 թվականի ապրիլ-մայիսին, կոմունիստական ջոկատների բազայի վրա, կոմունիստական ջոկատներ, որոնք փառավոր ուղի էին անցել 1921 թվականի փետրվար-ապրիլ ամիսների ընթացքում՝ 11-րդ կարմիր բանակի զորամասերի հետ միասին Ղամարլուի ռազմաճակատում դաշնակների փետրվարյան ավանտյուրայի դեմ մղված կռիվներում:

Կարմիր բանակի կողմից 1921 թվականի ապրիլի 2-ին Երևանը ազատագրելուց, դաշնակների ավանտյուրան լիկվիդացնելուց հետո կոմունիստական ջոկատները վերակազմվեցին «Հատուկ ծառայության զորամասերի»— Չոնի: Հայաստանի Կ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի որոշմամբ կուսակցության և կոմերիտմիության անդամները ներգրավվեցին Չոնի շարքերն անկախ կուսակցության մեջ գրաված նրանց դիրքից, կուսակցության և պետական օրգաններում կատարած պաշտոններից: Բոլոր կոմունիստներն ու կոմերիտականները հաշվառման մեջ էին: Բջիջներում Չոնի գծով կային ավագներ, որոնք կապված էին Չոնի համապատասխան շտաբների հետ: Չոնը կազմակերպված էր բանակի սիստեմով՝ գնդեր, գումարտակներ, վաշտեր, դասակներ ու ջոկեր, որոնք ունեին հատկացված հավաքավայրեր:

Չոնի շարքերում և նրա հրամանատարական կազմում ընդգրկվեցին նաև սովետական իշխանության հավատարիմ, անկուսակցական հայրենասերները: Զորամասերի ուսուցումը ղեկավարում էին հաստիքային և մասամբ արտահաստիքային հրամանատարները, որոնց մի մասը համալրվում էին կարմիր բանակի հայկական դիվիզիայի փորձված կադրերից:

1922 թվականի հունվարից կազմակերպվում է Չոնի հանրապետական ընդհանուր հրամանատարություն: Հայկական ՍՍՀ հատուկ ծառայության զորամասերի առաջին հրամանատար նշանակվում է Արմենակ Բաղդասարյանը, շտաբի պետ՝ Հակոբ Արոյանը, հրամանատարի տեղակալ՝ Սեդրակ Հովակիմյանը (որը միաժամանակ հանդիսանում էր Երևանի գավառի Չոնի հրամանատարը), շտաբի օպերատիվ մասի պետ՝ Կոնստանդին Նուդնի, շտաբի պետի օգնական Լևոն Ստեփանյանը, ադմինիստրատիվ մասի պետ՝ Ստեփան Խաչատրյանը (որն ավելի ուշ նշանակվեց հանրապետության միլիցիայի պետ):

Հայկական հանրապետության Չոնի ղեկավարները քաղաքացիական կռիվների քաջարի ռազմիկներ էին, պարգևատրվել էին կարմիր դրոշի և այլ շքանշաններով: Ա. Բաղդասարյանը և Հ.

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԳՈՐԾՈՆՆ ԱՆԴՐԿՈՎԿԱՍՈՒՄ*

*Գալուստ Գալոյանի նոր աշխատության թեման մոտ է նրա նախորդ ուսումնասիրություններին։ Այստեղ հեղինակը լուսաբանում է Անդրկովկասում բանվորական հեղափոխական շարժման և ազգային ազատագրական կռվի միահյուսման պրոբլեմը՝ երկրամասի պրոլետարիատի կազմակերպված դասակարգային պայքարի սկզբնապահից մինչև հաղթավարտի առաջին տարիները։*

*1890-ական թվականներից որոշակի է դառնում, որ Անդրկովկասի ժողովուրդներին հուզող ազգային-ազատագրական հարցերի լուծման վճռական պայմանը բանվորական շարժման հաղթանակն է։ Ազգային ազատագրական խնդիրները միահյուսվում են պրոլետարիատի պայքարին։ Պրոլետարիատն աստիճանաբար անցնում է երկրամասի ժողովուրդների և՛ սոցիալական, և՛ ազգային ազատագրության համար մղվող պայքարի գլուխ։ Ցարիզմի ու բուրժուազիայի դեմ երկրամասի բազմազգ աշխատավորների համատեղ կռիվը դառնում է Անդրկովկասում հասարակական պրոգրեսի վճռական գործոնը։ Դրանով է պայմանավորվում անդրկովկասյան ժողովուրդների բախտը, Անդրկովկասի սոցիալ-տնտեսական առաջընթացը։*

*Գիրքը հիմնված է Անդրկովկասի կյանքից քաղած փաստերով ապացուցվող մարքսիստական ճշմարտության երկու սյուների վրա. 1) ազգային հարցը բանվորական հեղափոխական շարժման բաղկացուցիչ մասն է։ 2) Բանվորական հարցի համեմատ ազգային հարցն ստորադաս է։ Հեղինակն իր հերթին ելնում է այն ճիշտ ըմբռնումից, որ մարքսիստական ուսմունքի մեջ սոցիալականի համեմատ ազգային հարցը թեպետ ածանցյալ է, բայց դա ոչ միայն վերջինիս թերագնահատումը չէ, այլ ընդհակառակը, առանց ազգային հարցի ճիշտ լուծման չի կարող լինել նաև բանվորական հարցի կատարյալ լուծում։*

*Անդրկովկասը հիանալի օրինակ է ապացուցելու համար, որ իմպերիալիզմի կործանման դարաշրջանում ազգային-ազատագրական հարցի լուծումն իրոք պայմանավորված է պրոլետարիատի հեղափոխական պայքարի հաղթանակով։ Անդրկովկասի հարուստ փորձն այդ իմաստով այսօր օգտակար մի դաս է իմպերիալիզմի դեմ ազգային-ազատագրական պայքարի ուղին մտած երկրների բանվոր դասակարգի և մյուս առաջադիմական ուժերի համար։*

**Բանվորական շարժումը և ազգային հարցը Անդրկովկասում** *(1900—1917 թթ. հոկտեմբեր) բաժնում ցույց է տրվում ազգային-ազատագրական շարժման էվոլյուցիան Անդրկովկասում, անցյալ դարի վերջերից ներկա դարի երկրորդ տասնամյակը ներառյալ, այսինքն՝ այդ շարժման միավորումն Անդրկովկասյան և համառուսաստանյան բանվորական հեղափոխական շարժման հետ, ազգային-ազատագրական և բանվորական շարժման խնդիրների ձուլումը։ Սկսած 1890-ական թվականներից Անդրկովկասում ոչ ոք այնպես լավ չէր պայքարում ցարիզմի ազգահալած, ազգատյաց քաղաքականության, դարերով եղբայր ժողովուրդների թշնամացման դեմ, ինչպես երկրամասի և Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատը, և դա ազգերից սոսկ որևէ մեկի բանվորների պայքարը չէր, բոլոր ազգերի բանվորների համատեղ պայքարն էր այդ, մարքսիզմի ինտերնացիոնալիստական գաղափարների տարածման ամենապարարտ հողը թե՛ Ռուսաստանում և թե՛ նրա ազգային ծայրամասերում։*

* Г. А. Галоян — Рабочее движение и национальный вопрос в Закавказье 1900—1922. Е. «Айастан», 1969.



*Թեև ցարիզմի և բուրժուազիայի դեմ ոտքի ելած ամենահեղափոխական ուժը պրոլետարիատն էր, բայց միայն նա չէր դժգոհ կեղեքողներից։ Ուստի, բնական է, որ գրախոսվող գրքում տեղ է տրված հակացարական տարրերի միավորմանը, ցարիզմից ու բուրժուազիայից դժգոհ բոլոր ուժերին կազմակերպելու նպատակով բոլշևիկների կատարած աշխատանքների լուսաբանմանը։ Այդ տեսակետից ուշագրավ է սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպության (հայտնի մանրբուրժուական սպեցիֆիկների) մասին ՌՍԴԲԿ V համագումարի և կուսակցության Կենտկոմի 1909 թ. հունվարյան պլենումի որոշումների վերլուծումը։ Դրանցում միջոցներ էին նշվում հեղափոխության մեջ հիշյալ կազմակերպության ուժերն օգտագործելու մասին։ Հատկանշական է, որ կովկասյան մենշևիկներն արտահայտվում էին նման որոշման դեմ, խանգարելով հակացարական ուժերի միավորմանը։*

*Գրքում հիշատակվում է մանրբուրժուական և ազգայնական այլ տարրերի հակացարական ջանքերի միավորման նպատակով բոլշևիկների գործադրած ուրիշ միջոցների մասին ևս (տե՛ս էջ 119 և այլն)։ Սրանք բոլշևիկների պատմության հայտնի, բայց պատմական գրականության մեջ անցյալում բավարար չլուսաբանված էջեր են, որոնք կարոտ էին մանրազնին գիտական ուսումնասիրման։ Եվ, ահա, այդ ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ազգային ու սոցիալական խնդիրների միահյուսումը հնարավոր է այն դեպքում, երբ նեղ-ազգայնական շահերը ետ են մղվում, երբ նման պատրվակներով չեն ջանում բանվորական շարժումը ազգայնական, մանրբուրժուական խնդիրների լուծմանը ենթարկել։*

*Գրախոսվող աշխատության մեջ տեղին ու պատշաճ ձևով բացահայտվում են ազգայնական կուսակցությունների ձախողումների ու քայքայման փաստերը, նրանց պառակտման պատճառները և, այդպիսով, ցույց է տրվում բանվորական, ինտերնացիոնալիստական ուժերի ազդեցության աճը երկրամասում։ 1907 թ., օրինակ, պառակտվեց դաշնակցականների բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունը։ Մի խումբ «երիտասարդ դաշնակցականներ», անջատվելով կուսակցությունից, կոչ հրապարակեցին, որում դաշնակցության հին պարագլուխներին քննադատում էին բուրժուազիային ծառայելու և ոստիկանության հետ գործարք կնքելու համար։ Նկատելով այդ ճշմարտությունը և դժգոհելով դրանից՝ «երիտասարդ դաշնակցականները», սակայն, ձուլվեցին էսեռների հետ՝ շարունակելով պճնվել սոցիալիզմի կեղծ ֆրազներով։ Կովկասյան նացիոնալիստներն, այդպիսով, ազգային-ազատագրական շարժման հերոսներ չէին ձևանում։*

*Բայց ազգայնականները տարբերվում էին միմյանցից։ Աշխատության մեջ այդ տարբերությունները հնարավորին չափ նկատելի են դառնում հնչակյան կուսակցության ծրագրերի ու գործունեության վերլուծությամբ։ Ընդգծելով հնչակյան կուսակցության մանրբուրժուական, ազգայնական բնույթը, հեղինակը նշում է, որ հնչակյանները երբեմն հանդես էին գալիս դաշնակցական նացիոնալիզմի դեմ և, «...հրաժարվելով ազգայնական սկզբունքներից, շատ բան վերցրել էին սոցիալ-դեմոկրատների ծրագրից, ձգտելով հանդես գալ դասակարգային պայքարի գաղափարների պրոպագանդիստների դերում» (էջ 125)։*

*Այստեղ միաժամանակ վկայակոչվում են հնչակյան կուսակցության ծրագրի այն առանձին հատվածները, որոնք ուղղված էին մարդու կողմից մարդու շահագործման դեմ, պաշտպանում էին ազգերի ինքնորոշման իրավունքը և այլն։ Այս բոլորն իրավամբ բացատրվում է երկրամասում բանվորական հեղափոխական շարժման ուժեղացմամբ, մարքսիստական գաղափարների հետագա տարածմամբ, ազգային-ազատագրական շարժման մեջ բանվոր դասակարգի հեղափոխական դերի բարձրացմամբ։ Այս բացատրության հետ մեկտեղ լավ կլիներ, որ Թուրքիայում հնչակյանների բռնած դիրքի պոզիտիվ շարադրանքը հեղինակը լրացներ արևմտահայության նկատմամբ նրանց և մյուս հայ ազգայնականների մտածելակերպի և գործելակերպի գնահատմամբ, բացահայտեր պրոլետարիատի դիրքորոշումը Թուրքիայում ազգային փոքրամասնությունների, մասնավորապես, հայության ազատագրության հարցում։*

*Մեր կարծիքով, տվյալ հարցի անցյալի գիտական լուսաբանումը լրացման կարիք ունի նաև առաջին համաշխարհային պատերազմում կամավորական շարժման հետ կապված հանգամանքների գնահատման առումով։ Ճիշտ ու տեղին նշելով, թե երբ պայթեց առաջին համաշխարհային պատերազմը, Արևմտյան Հայաստանի հայերը «թուրքական լծից իրենց ազատագրման հույսերը կապեցին ռուսական զենքի հաղթանակի հետ» (էջ 178), հեղինակը ցույց է տալիս, որ հայկական կամավորական ջոկատների ստեղծման* նախաձեռնողները *եղել են ցարական իշխանությունները (նույն տեղը)։ Այնուհետև հիշատակվում են թուրքերի ջանքերը՝ դաշնակցականներին «Հայաստանին լիակատար ավտոնոմիա» խոստանալու միջոցով հայերին Ռուսաստանից կտրելու, Թուրքիայի կողմը գրավելու նպատակով (տե՛ս էջ 180—181)։ Եվ ապա՝ 1915 թվականի ապրիլի 24-ի եղեռնը։ Փաստերի այս շարքը հիմնականում ճիշտ է, հավաստի։ Դրանց վերլուծությունը և տրված գնահատականները լիակատար կլինեին, եթե հայ*

## Մամուլի տեսության փոխարեն

# ՈՒՍՈՒՄՆ ԱՆՎԵՐՋ Է

*Մամուլի աշխատողներին լավ են հայտնի այն հոգեմաշ ջանքերը, որ գործադրվում են խմբագրություններում հոդվածներ մշակելիս։ Որքա՜ն երկարաշունչ նախադասություններ, սխալ ու ձգձգված դարձվածքներ են հղկվում, մեկ բառով փոխարինվում, ազատվում ավելորդ, խոսքը ծանրաբեռնող բառերից, արտահայտություններից, ստուգվում, ճշտվում, փոխվում են շատ ու շատ բաներ... Այդ ամենը ոչ ոք չի տեսնում, ոչ ոք չի իմանում։ Ահա լույս են տեսնում գիրքը, ամսագիրը, թերթը, և նկատվում են բաց թողածը, վրիպածը, սխալը, չուղղվածը։*

*Կյանքում կատարված վիթխարի փոփոխությունները իրենց կնիքն են դնում և լեզվական կուլտուրայի վրա, փոփոխություններ, որոնցից հաճախ ետ են մնում ոչ միայն մամուլի օրգանները, այլև լեզվագիտական հաստատությունները։*

*Վերջերս աչքի անցրինք մի քանի շրջանային թերթեր (1970 թ.) և նկատեցինք, որ անհետանում են մի շարք բառեր։ Մեր* ասպարեզ, մարզ, բնագավառ, ոլորտ *և նման այլ գոյականներ, որ երկար ժամանակ այնպես հաջողությամբ գործածվում էին իբրև կապական բառեր, իրենց հոլովական, թվական վերջավորություններն առած, ձեռք-ձեռքի տված՝ հեռանում են մեր լեզվական անդաստանից։ Նկատելի է, որ* ուղղություն *բառը բոլորովին փոխել է իր ուղղությունը և, գործիական հոլովն առած,* գործի *հետ գործակցած, ուր ասես խցկվում, «փոխարինում» է շատ կապերի։*

*Մեր նայած թերթերում արշավում են քրոնամխած* ուղղությամբը, *հետևից էլ՝* գործը: *Այսպես. «...որոշումները մինչև վերջ կենսագործելու ուղղությամբ» (ասպարեզում— «Արարատ», 30/V). «...զգուշացումը՝... պայքար կազմակերպելու ուղղությամբ» (մասին— «Արարատ», 11/VI), «...մտահոգվեն այդ ուղղությամբ» (մտահոգվեն դրանով, կամ դրա համար), «...մասսայական աշխատանք ծավալելու... տնտեսական կյանքին մասնակից դարձնելու ուղղությամբ» (ասպարեզում— «Արարատ», 30/VI), «...ուշադրություն է դարձվել տնտեսական խթանների բարձրացման գործին» (ուշադրություն է նվիրվել... բարձրացմանը),— «...հաջողություններ են ձեռք բերվել... զարգացման, բարեկեցության բարձրացման գործում» (ոլորտում— «Պղնձի համար», 9/VI), «Խոսելով կովերի ցեղը բարելավելու և տոհմային գործի մասին» (...կովերի ցեղի բարելավման և տոհմաբուծության մասին— «Արտաշատ», 12/V)։*

*Թերևս ճիշտ կլիներ գործածել փակագծում նշված կամ նման այլ ձևեր, փոխանակ* գործում, ուղղությամբ, գծով *բառերի։ Նման շատ օրինակների կարելի է հանդիպել նշված թերթերի շատ այլ համարներում, ինչպես և «Զանգեզուրում», «Վերելքում» և, եթե շարունակենք ու համարձակվենք դուրս գալ շրջանային թերթերի սահմաններից, օրինակներն անթիվ կլինեն։*

*Լավ է ասել Կ. Ֆեդինը. «Եթե տեսնում ես սըխալներ ձևում, փնտրիր սխալներ և բովանդակության մեջ»։ Այդպես էլ լինում է գեղարվեստական գրականության մեջ։*

*Իսկ մեր ուսումնասիրած թերթերում որքան ասեք կարելի է հանդիպել նման նախադասությունների. «Հանրային տնտեսությունները գերակատարել են նաև անասունների գլխաքանակի հոբելյանական տարվա առաջադրանքները» («...գերակատարել են հոբելյանական տարվա առաջադրանքները նաև անասունների գլխաքանակի ավելացման մարզում»), «...կոլտնտեսությունները նվազեցրել են գառների ստացումը» (կոլտնտեսություններն այժմ ավելի քիչ գառներ են ստանում— «Արտաշատ», 12/V), «...առանց կանգ առնելու, հանգավոր* ուղի ընտրած ճանապարհի *որևէ* խաչուղում» *(առանց կանգ առնելու, իր ընտրած հանգավոր ուղու կամ ճանապարհի որևէ խաչմերուկում.— «Արարատ», 2/VI). «Այստեղ կանաչին է տալիս փարթամորեն աճած պոմիդորի... եգիպտացորենի կուլտուրաների տակ գտնվող ցանքատարածությունները» (...կանաչին են տալիս... պոմիդորի, եգիպտացորենի ցանքատարածությունները— «Արարատ», 11 մայիսի)։ «Այժմ 30 գլուխ խոշոր եղջերավոր անասուններ գիրացման տակ են դրված» (գիրացվում են— «Վերելք», հուլիսի 4)։ «Ինչպես չի կարելի հիացմունքով չխոսել... խաչատրյանի մասին» (ինչպե՞ս հիացմունքով չխոսել. «Արարատ», 4/VI)։ «Ամեն ինչ սկսվեց շարժվել, սակայն կանգ առավ սահմանապահի մտքերի պահը» (թերևս ուզում է ասել՝ կտրվեց սահմանապահի մտքի թե՞լը—«Արարատ» 2/VI)։ Իսկ հուլիսի 4-ի համարում կարդում ենք. «...ձգտում ժամանակին սովորել ագրոտեխնիկական մշակությունները և խնամքով հավաքել փարթամորեն ցենտներ ծխախոտ» (!)։ Կարծում ենք ճիշտ կլինի՝ ...սովորել ագրոտեխնիկական կանոնները և խնամքով հավաքել փարթամորեն աճած ծխախոտը։*

*Իրոք որ՝ անորոշ գրում են այն բանի մասին, ինչ անորոշ են պատկերացնում, թե ոչ ինչպե՞ս հասկանալ այս խառնիճաղանջությունը. «Հատուկ նշանակություն է ներկայացնում ռացիոնալիզատորական առաջարկությունը՝ Ղաթարի* ծննդավայրի *(երևի ուզում է ասել հանքի— է. Ս.) մշակման հատակի բարձրությունը 50—80 մետրի փոխարեն հասցնելու մինչև 120 մետրի»։ Թերևս ճիշտ կլիներ ասել՝ կարևոր նշանակություն ունի ձեռնարկության մի խումբ ինժեներա-տեխնիկական մասնագետների ռացիոնալիզատորական առաջարկությունը՝ Ղաթարի հանքավայրի մշակվող հատվածի բարձրությունը 50—80-ի փոխարեն հասցնել 120 մետրի։ Կամ՝ «Հաճելի է նշել, որ կոմբինատում ստորգետնյա պայմաններում արդյունահանված հանքաքարի նկատմամբ, բացման աշխատանքները հնարավորություն են տալիս մի քանի անգամ ավելացնելու աշխատանքի արտադրողականությունը (խոսքը բաց և փակ հանքերի մասին է— «Պղնձի համար», 14/VI)։ Իսկ «Վերելքի» մայիսի 26-ի համարում* Գանձասարի հերոսը *ակնարկում կարդում ենք. «Հազիվ երեք ամսական էր նա, երբ հայրը վախճանվեց։ Նրա հինգ երեխաները* մնացին մոր *խնամքին» (ո՞ւմ, այդ երեք ամսականի՞ հինգ երեխաները)։*

*Նման օրինակներ շատ կան «Արարատի» հունիսի 2-ի, 4-ի, 30-ի, հուլիսի 4-ի, «Ծիածանի» հունիսի 7-ի, 9-ի, 30-ի, «Պղնձի համարի» հունիսի 9-ի, 30-ի, «Վերելքի» մայիսի 26-ի, 28-ի, հուլիսի 4-ի և նշված թերթերի շատ այլ համարներում։*

*Ամենքին հայտնի է, որ դերբայներն առանց օժանդակ բայի բայ չեն դառնա, իսկ առանց ստորոգյալի ամփոփ միտք՝ նախադասություն չի կազմվի, որքան էլ շատ բառեր օգտագործվեն տվյալ դեպքում։ Այսպես. «Հայ ժողովրդի փառապանծ վերածննդի 50-ամյակը արժանավայել դիմավորելու համար յուրաքանչյուր տնտեսություն... մշակում կոնկրետ միջոցառումներ, ծավալում ագիտացիա, ցուցաբերում...» («Արարատ», 30/VI). այսքան անկատար դերբայ և ոչ մի, գոնե է, օժանդակ բայ։*

*Փոխաբերությունը և անձնավորումը հաճախ են օգտագործվում գեղարվեստական գրականության մեջ, հատկապես պոեզիայում՝ խոսքը տպավորիչ, պատկերավոր և ոչ թե արտառոց, անհավանական դարձնելու նպատակով. Թերթում դրանք գործածվում են մեծ մասամբ ակնարկներում։ Մի առարկայի՝ մեկ ուրիշին վերագրված հատկանիշը պետք է բնական լինի (առվակը երգում է, արևը ժպտում է, ծառերը կանաչ են հագել, «Ամպերը դանդաղ, ուղտերի նըման նոր են ջուր խմած սարից բարձրանում» և այլն) և ոչ թե տարակուսանք ու կասկած հարուցի։ Ինչպես միշտ, այս անգամ ես՝ բառը ոչ թե իր ուղղակի, այլ անուղղակի իմաստով գործածվելիս մեծ զգուշություն է անհրաժեշտ, որպեսզի չստեղծվեն այնպիսի «պատկերներ», ինչպիսիք հանդիպում ենք Մկրտիչ Մկրտչյանի* Իսկ ես ինչպես... *բանաստեղծության մեջ («Վերելք», 28/V)։*

*Երբ արշալույս արեգակը* մայրամուտի
մահճակալում
*Գիրկն է մտնում երանավետ երազների՝*
*Քաղաքների ու շենքերի լույսերն անթիվ*
Փայլփլում են ճերկում ցանված ոսկեճատիկ
սերմերի պես:
*Եվ լուսինը՝ արեգակի հարսը ճերմակ,*
Հափշտակված բեզ է նայում տիեզերքի
պատշգամբից:

*Չէ՛ որ պոեզիան չպետք է այսքան պրոզայիկ լինի։*

*«Ծիածանի» հունիսի 30-ի համարում* Արեգ անտառի բացատում *ակնարկում կարդում ենք հետևյալ «գեղարվեստական պատկերները». «Դաշնամուրն ու ակորդեոնը* ճչացին նորից՝ արթնացնելով *անտառի* քնած ստվերները», *«...ճամբարի շրջակա անտառներում հաճարենիներն ու թխկենիները նորից սկսեցին օրորել փոքրիկ հանգստացողների երգն ու ծիծաղը...»։ Գրելուց առաջ, մեր կարծիքով, լավ կլինի պատկերացնել գրածը։ Նույն թերթի հունիսի 9-ի համարում՝ «Սեդրակյանը հանել է վերնաշապիկը և թիակներն արևի տակ խաղացնելով հընձում է», «արագորեն առաջ է ընթանում կեռասի հավաքը», կամ հունիսի 27-ի համարում՝ «...հոսում է ջուրը, արևի տակ կաթիլներ սերմանում պտղավորված կանաչության մեջ», «Պատկերացնո՞ւմ եք, հաջորդ տարին այգին ոչ միայն փթթեց, այլև գերակատարեց այդ տարվա պլանները». իրոք, դժվար է պատկերացնել նման արտահայտություններն ու պատկերները, դժվար է այնպես շնչավորել այգին, որ այն գերակատարի տարեկան պլանները։ Նման անհավանական փոխաբերությունների կարելի է հանդիպել «Արարատի» հունիսի 30-ի, «Պղնձի համարի» մա-*

պե՞ս են վերակառուցվելու)։ Եվ բանը հասել է այնտեղ, որ գրվում է «շիկաներ մազեր» («Միածան», 25/VI), փոխանակ՝ սոսկ շիկահեր կամ շեկ մազեր. չէ՛ որ հերը նույնպես մազ, վարս է նշանակում։

Վերնագրերի մասին ոչինչ չէինք ասի, (ընդհանրապես հաջող են), եթե մայիսի 9-ի տոնական համարում «Արարատն» իր երկրորդ և երրորդ էջերի համար իբրև խորագիր ընտրած չլիներ մեր ժողովրդի հանճարեղ երգչի՝ Խաչատուր Աբովյանի «էրված-կրակված» սրտի այս նշանավոր խոսքերը. «Շունչդ տո՛ւր, հոգիդ, բայց քո հայրենիք մի՛ տուր թշնամյաց...»։ Առավել զգուշություն է անհրաժեշտ, երբ դիմում ենք մեծ մարդկանց. պետք է ուշիմաբար ջանալ չաղավաղել նրանց խոսքերը. մինչ թերթում կարդում ենք. «...բայց քո հայրենիք մի՛ տար թըշնամյաց»։

Մեր ուսումնասիրած թերթերում առատ են և կետադրական սխալները։ Մինչդեռ անհրաժեշտ է պատշաճը հատուցել, բնավ չթերագնահատել կետադրության նշանակությունը։ Թե չէ այնքան ենք սխալ գործածել, որ երբ սխալ ստորակետն ուղղվում, բութ է դարձվում կամ հակառակը, ճիշտն է սխալ թվում. իսկ առոգանության նըշաններն արդեն մեր շատ կապական բառերի օրն ընկած, թև են առել, ուզում են թռչել, հեռանալ մեզնից։ Չէ՛ որ բանավոր ու գրավոր խոսքի մերձեցման, հեղինակի վերաբերմունքն ու գրածի տոնն զգալու, նրա հույզերին ու ապրումներին հաղորդակցվելու միակ միջոցն են դրանք և որքան ճիշտ գործածվեն, այնքան ավելի կշահի գրավոր խոսքը։

Մեր խնդիրն էր համառոտակի ցույց տալ, թե ինչպես չպետք է գրել. ուստի և այսքան շատ օրինակներով ջանացինք վեր հանել լեզվական աղավաղումները վերոհիշյալ թերթերում։ Ի՞նչ խոսք, նման օրինակներ, սխալներ շատ կարելի է բերել նաև մամուլի այլ օրգաններից։ Աղավաղումներ, սխալներ, որոնցից ամեն մեկի համար դպրոցում մի միավորով իջեցնում են աշակերտի գնահատականը, իսկ բարձրագույն ուսումնական հաստատության քննություններին՝ գնահատում անբավարար։ Դպրոցը— ահա այս ցավալի հետևանքների պատճառներից մեկը։

Անուրանալի է, որ մեր մամուլը, թերթերը (նաև շրջանային) զգալի գործ են կատարել լեզվի բարեփոխման, զարգացման ու հարստացման ասպարեզում։ Ուրախալի է շրջանային թերթերում հանդիպել այնպիսի փոքրածավալ ակնարկների, ինչպես՝ Ջուլիետ Գաբրիելյանի Գործեր, որ կդառնան պատմություն («Արարատ», 30/VI), ուր գեղարվեստական պատկերավոր ոճով շնորհալի թղթակիցը պատմում է աշխատանքի մարդու, հողի մշակի և նրա չորս որդիների մասին՝ նրանցից յուրաքանչյուրին բնութագրելով զողտրիկ մի նախադասությամբ։ Ի դեպ, Ջ. Գաբրիելյանի գրչի արգասիքն են շատ այլ ակնարկներ, որոնք նրա օժտվածության վկայությունն են։ Նրան մտահոգում են շատ, ինչպես և ընտանիքի, բարոյականության հետ առնչվող հարցեր։ Դրա արտահայտությունն է Արարատի շրջանային ժողդատավորի հետ միասին գրած Ընտանիքը սրբություն է ակնարկը, ուր հեղինակները մերկացնում, անարգանքի սյունին են գամում մարդկայինը ոտնահարողներին, ընտանիք և երեխաներ ուրացողներին, հանձնելով նրանց ընթերցողների դատաստանին։

Հաճույքով է կարդացվում (նույն թերթի մայիսի 30-ի համարում) Ռաֆիկ Հայրապետյանի Վաճ, ճանճ էլ կա ֆելիետոնը։ Նուրբ հումորը, պատմելու պարզ, առինքնող ձևն անմիջապես գրավում են, իսկ եզրակացությունը համարձակ մաղթանք է նրանց հասցեին, ում հարկն է. «Ուզում եմ, որ շրջկոոպի ընկերները կարոտ չմնան այդ (ճանճով— է. Ս.) լիմոնադին»։

Մամուլի աշխատողի ուսումնառությունն անվերջ է. տիրապետենք լեզվին, ջանանք խորապես ընկալել նրա նրբերանգները, մարզենք մեր լեզուն ու գրիչը. զի գրիչը ևս այնպիսի զենքերից է, որ միայն գործածելով է սրվում, հղկվում, կատարելանում։

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԱՇԽԱՐՀՆ ԱՆՑԱԾ ՏԱՐՈՒՄ

ԱՌԱՋՆՈՐԴԻ ՀՈԲԵԼՅԱՆԸ։ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՈՒԺԸ։ ԶԻՆԱԹԱՓՈՒՄԸ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊՐՈԲԼԵՄՆ Է։ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԴԱՍԵՐԸ ԵՎ ԵՎՐՈՊԱՅԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ։ ՄԵՐՁԱՎՈՐԱՐԵՎԵԼՅԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ ԵՎ ՎԱՇԻՆԳՏՈՆԻ ՄԱՆԵՎՐՆԵՐԸ։ ՊԵՆՏԱԳՈՆԸ ԹԵԺԱՑՆՈՒՄ Է ՊԱՏԵՐԱԶՄԻ ԲՈՑԸ ՀՆԴԿԱՉԻՆՈՒՄ։ ՔՍԱՆՀԻՆԳԵՐՈՐԴԸ, ՀՈԲԵԼՅԱՆԱԿԱՆԸ։

Պատմության գիրկն անցավ 1970 թվականը, մեծ Լենինի ծննդյան 100-ամյակը, հայ ժողովրդի ազգային վերածննդի կես դարը նշանավորող, հնգամյակը եզրափակող տարին։ Այն լարված աշխատանքի ու կառուցման, նոր հաղթանակների ու մեծագործությունների ժամանակաշրջան էր։ Ժամկետից շուտ կատարվեցին ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների պլանային հիմնական առաջադրանքները։ Մեզ մոտ մեծ հանդիսավորությամբ նշվեց Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմկուսի կազմավորման կեսդարյա հոբելյանը, որը վերածվեց Սովետական Միության բոլոր ժողովուրդների փառապանծ տոնի։ Անցած տարին առաջադիմության և ռեակցիայի ուժերի, սոցիալիզմի ու կապիտալիզմի, ազգային անկախության ընդհանուր գործը պաշտպանող ժողովուրդների և իմպերիալիստական ագրեսորների միջև մղվող սուր պայքարի տարի էր։ 1971 թվականը կարող է և պետք է դառնա սոցիալական առաջադիմության ու խաղաղության համար պայքարի նոր հաղթանակների տարի։ Առաջավոր մարդկությունը ի վիճակի է կրկնապատկված ուժերով պայքարելու իմպերիալիստական ագրեսորների դեմ, կանխելու համաշխարհային պատերազմը, ամրապնդելու խաղաղությունը, ժողովուրդների միջև հաստատելու բարեկամություն ու համագործակցություն։

1971 թվականը մարդկությունը դիմավորում է միջազգային բարդ պայմաններում։ Համաշխարհային հասարակայնությունը մեծ անհանգստությամբ է հետևում, թե ինչպես ամերիկյան ռազմամոլները ձգտում են ընդլայնել ագրեսիվ պատերազմը Հարավ-արևելյան Ասիայում, կոպիտ միջամտում է Հնդկաչինի ժողովուրդների գործերին։ Վաշինգտոնը, նրա թելավիվյան համախոհները սրում են իրադրությունը Մերձավոր Արևելքում, ձախողում ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի 1967 թվականի նոյեմբերի 22-ի բանաձևի իրագործումը։

ԱՄՆ-ը և նրա իմպերիալիստական դաշնակիցները ոչ մի միջոց չեն խնայում օժանդակելու Բոննի ռևանշիստներին, Հունաստանի սև գնդապետներին, պորտուգալական գաղութարարներին, հարավաֆրիկյան և ռոդեզիական ռասիստներին և միջազգային ռեակցիայի մյուս ակտիվ ուժերին։

Անչափ բարդ և բազմազան էր 1970 թվականի միջազգային կյանքը։ ՍՄԿԿ XXIII համագումարը կանխագծեց սովետական արտաքին քաղաքականության հիմնական ուղղությունները՝ սոցիալիստական համագործակցության երկրների համար ապահովել միջազգային բարենպաստ պայմաններ՝ հանուն սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման, առավել ամրապնդել սոցիալիստական պետությունների միասնությունը, համախմբվածությունն ու բարեկամությունը, օժանդակել ազգային-ազատագրական շարժումներին և բազմակողմանի գործարար կապեր հաստատել զարգացող երիտասարդ երկրների հետ, հետևողականորեն պաշտպանել սոցիալական տարբեր հասարակարգեր ունեցող պետությունների միջև խաղաղ գոյակցության սկզբունքը, վճռական հակահարված տալ իմպերիալիզմի ագրեսիվ ոտնձգություններին, փրկել մարդկությունը համաշխարհային նոր պատերազմի արհավիրքներից։

Ինչպես ընդգծում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը, այդ նպատակների համար պայքարը տեղի է ու-

ցավազքի դադարեցման գաղափարը շատ ու շատ հակառակորդներ ունի հատկապես ԱՄՆ-ում և Արևմտյան Գերմանիայում: Հայտնի է, որ սպառազինությունների մրցավազքը ամենաեկամտաբեր աղբյուրն է ամերիկյան և մյուս կապիտալիստական երկրների մոնոպոլիաների համար: 85 միլիարդ դոլար ուղղակի ռազմական ծախսերից տարեկան մոտ 45 միլիարդը հատկացվում է ռազմական պատվերներին: Ժամանակակից զենքի արժեքի խիստ անը արմատապես փոխել է ռազմական արտադրությամբ զբաղվող մոնոպոլիստների գործունեության մասշտաբները:

Ոչ լրիվ տվյալների համաձայն, անցյալ ֆինանսական տարում, որն ավարտվեց 1970 թվականի հունիսի 30-ին, հրթիռային սիստեմների արտադրության կոնցեռնները Պենտագոնից ստացան գրեթե 5 միլիարդ, ավիացիոն արդյունաբերությունը 4,8, էլեկտրոնային և կապի միջոցների արտադրության ընկերությունները՝ 3 միլիարդ, նավաշինարարականը՝ ավելի քան մեկ միլիարդ դոլարի ընդհանուր գումարի պատվերներ: Հրթիռային փորձարկումների հատուկ պոլիգոնների, լաբորատորիաների, հեռավոր տարածության վրա գործող կառավարվող հրթիռների գործարկման պայմանագրերը կազմում են 1,5 միլիարդ դոլար: Ռազմական այլ կարիքների՝ ինժեներների վարձատրությունից ընդհուպ վիճակագրական հետազոտումները մոնոպոլիաներին լրացուցիչ 3,3 միլիարդ դոլար շահույթ բերեցին: ԱՄՆ-ի պաշտոնական տվյալների համաձայն, վերջին 18 տարվա ընթացքում, սպառազինությունների մրցավազքի ոլորտում Վաշինգտոնը ծախսել է ավելի քան 1.100 միլիարդ դոլար:

Բացահայտ է արևմտագերմանական ռևանշիստների վերաբերմունքը միջուկային զենքի չտարածման մասին պայմանագրի նկատմամբ: ԳՖՀ-ի հայտնի գործիչներից Ֆրանց Յոզեֆ Շտրաուսը խոստովանել է. «Ես այդ պայմանագրի թշնամին եմ և ուղղակի հայտարարում եմ, որ կպայքարեմ դրա դեմ... Դա նոր Վերսալ է, այն էլ տիեզերական մասշտաբի»:

Վերոհիշյալ պայմանագրով տակավին չի վերացվում միջուկային զենքը: Այն պարզապես մի քայլ է միջուկային զինաթափման ճանապարհին: Միայն այդ պայմանագրի ստորագրումից հետո միջուկային երկու հզոր տերությունները՝ ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը բանակցություններ սկսեցին ստրատեգիական զենքի սահմանափակման ուղղությամբ: Հայտնի է, որ այդ բանակցությունների ինչպես առաջին երկու փուլերի (Հելսինկի և Վիեննա), այնպես էլ ներկայումս՝ Ֆինլանդիայի մայրաքաղաքում տեղի ունեցող՝ երրորդ փուլի հանդիպումները անց են կացվում կոնֆիդենցիալ (այսինքն՝ փակ դռների) պայմաններում, այնուամենայնիվ, համաշխարհային հասարակայնությունը հուսադրվում է, որ «սայլը տեղից կշարժվի» և մեծ տերությունները վերջապես փոխըմբռնման քայլերի կդիմեն:

Միավորված ազգերի կազմակերպությունը, որի շարքերում ներկայումս 127 պետություն կա, 1970 թվականին արժանավայել ավարտեց իր հոբելյանական տարին՝ 25 ամյակը: ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի 25-րդ նստաշրջանը կարևոր որոշումներ ընդունեց, որոնց իրականացումը կնպաստի ընդհանուր խաղաղության և անվտանգության գործին:

Անցած տարում նշվեց երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտի քառորդ դարը: Հայտնի է, երբ 1945 թվականի մայիսին Եվրոպայում դադարեցվեցին մարդկության պատմության մեջ ամենասարսափելի պատերազմի հրետանային համազարկերը և անհետացավ վառոդի ծուխը, միլիոնավոր հասարակ մարդիկ ազատ շունչ քաշեցին: Թվում էր, որ այդ անմոռաց օրերը կդառնան մարդկության զարնան սկիզբը: Միլիոնավոր մարդիկ հավատացած էին, որ ամեն ինչ կարվի կայուն խաղաղության ապահովման համար: Բազմաչարչար Եվրոպայի ժողովուրդները իրավացիորեն գտնում էին, որ պայմաններ են ստեղծվել վերջնականապես լուծելու մայրցամաքի անվտանգության պրոբլեմը: Նրանք հույսով էին, որ XX դարի առաջին կեսում մարդկությանը երկու անգամ աղետ պատճառած Գերմանիան ընդմիշտ կհրաժարվի ռազմատենչ քաղաքական կուրսից և կընթանա խաղաղության ու դեմոկրատիայի ուղիով: Սակայն վերջինս հաստատվեց միայն Գերմանիայի արևելյան հատվածում՝ Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում, որը խաղաղության կանգուն ամրոց է Եվրոպայի կենտրոնում:

Ինչ վերաբերվում է Արևմտյան Գերմանիային, այնտեղ վերականգնված է իմպերիալիստական մոնոպոլիաների վարչակարգը: Հակառակ արևմտագերմանական բնակչության ազգային շահերի, Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունում դարձյալ կան ազդեցիկ ուժեր, որոնք, չնայած պատմության դաժան դասերին, իրենց ագրեսիվ ու ռևանշիստական քաղաքականությունն են հռչակել սպառնալով հարևան երկրների խաղաղ կյանքին: «Արևմտյան Գերմանիան,— ընդգծված է կուսակցության XXIII համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— ավելի ու ավելի մեծ չափով է դառնում պատերազմական վտանգի օջախ, ուր եռում են ռևանշիստական կրքերը»:

Պատմության փորձը սովորեցնում է, որ Եվրոպայի մայր ցամաքի ժողովուրդների խաղաղ համագործակցությունն աշխարհում խաղաղության պահպանման կարևոր երաշխիքն է: Սակայն իմպերիալիստական տերությունների մեղքով իրադարձությունների զարգացումը ետպատերազմյան Եվրոպայում չընթացավ խաղաղության և անվտանգության ուղիով: Ղեկավարվելով իրենց արտաքին քաղաքականության մեջ հակակոմունիզմի դոկտրինայով, իմպերիալիստական տերությունները և, առաջին հերթին, ԱՄՆ-ը, սկսեցին վարել Սովետական Միության և եվրոպական սոցիալիստական մյուս պետությունների նկատմամբ ագրեսիվ կուրս: «Ուժի դիրքերից» քաղաքականության օգնությամբ նրանք փորձում էին սահմանափակել սոցիալիզմի ազդեցությունը և շեղել այդ երկրների ժողովուրդներին իրենց ընտրած ուղուց: Նման կուրսը հանգեցրեց Եվրոպան պառակտող երկու ռազմա-քաղաքական հակադիր դաշինքների:

Ետպատերազմյան տարիներին ԳՖՀ-ի իրար հաջորդող կառավարությունները, հաշտության պայմանագրի բացակայության պատրվակով, հրաժարվում էին ճանաչել երկրորդ համաշխարհային պատերազմի հիմնական արդյունքները: Սակայն պատմության դասերը, ԳՖՀ պետական ու տնտեսական շահերը պահանջեցին Բոննի նոր կառավարողներից վերանայել իրենց արտաքին քաղաքական վարքագիծը: Սոցիալ-դեմոկրատների և ազատ դեմոկրատների կոալիցիոն կառավարությունը վերջապես գտավ, որ Եվրոպայի, ինչպես և ԳՖՀ կենսական շահերը պահանջում են ճանաչել Պոտսդամի համաձայնագրերով նշված սահմանները և նորմալ հարաբերություններ հաստատել Սովետական Միության, Լեհաստանի, Չեխոսլովակիայի և մյուս սոցիալիստական պետությունների հետ:

Շնորհիվ Սովետական Միության և Վարշավայի պայմանագրի մյուս մասնակիցների հետևողական խաղաղասեր կուրսի, Եվրոպայում ստեղծվեց քաղաքական բարենպաստ մթնոլորտ Արևելքի և Արևմուտքի պետությունների միջև հարաբերությունների նորմալացման համար: Օգոստոսի 12-ին Մոսկվայում կնքվեց սովետա-արևմտագերմանական պայմանագիր, որը, անշուշտ, կարևոր ներդրում է Եվրոպայում խաղաղության և անվտանգության ամրապնդման գործում: Պայմանագրի գլխավոր բովանդակությունն այն է, որ ԳՖՀ-ն պարտավորվում է հարգել և ճանաչել Պոտսդամի համաձայնագրերով նախատեսված ԳԴՀ և ԳՖՀ այժմյան սահմանները: Պայմանագրի մեջ ընդգծվում է, որ ՍՍՀՄ-ն և ԳՖՀ-ն ներկայումս չունեն միմյանց, ինչպես նաև եվրոպական որևէ պետության նկատմամբ տերիտորիալ հավակնություններ և ապագայում հանդես չեն գա նման հավակնություններով:

Չնայած սովետա-արևմտագերմանական պայմանագիրը դեռ վավերացված չէ, դա, այնուամենայնիվ, արդեն կարևոր դեր է կատարում Եվրոպայի քաղաքական դրության նորմալացման գործում: Պարզ է, որ համաշխարհային ռեակցիան փորձում է ձախողել այդ պայմանագրի վավերացումը: Այդ են ցույց տալիս քրիստոնեական դեմոկրատների և բոլոր ռևանշիստների մեքենայությունները ու քայքայիչ գործողությունները: Սակայն Արևմտյան Գերմանիայի առաջադեմ ուժերը նույնպես ակտիվորեն են գործում: Հուսանք, որ գերմանական ժողովրդի ողջամտությունը, վերջին հաշվով, վճռական դեր կկատարի այս հարցում:

Եվրոպայի մայր ցամաքի խաղաղասեր բոլոր ուժերն ակտիվ պայքար են ծավալում համաեվրոպական խորհրդակցության նախապատրաստման համար: Շնորհիվ Սովետական Միության և Սոցիալիստական մյուս երկրների, ինչպես նաև խաղաղասեր բոլոր ուժերի ակտիվ ջանքերի, օրըստօրե ռեալ է դառնում այդ համաժողովի հրավիրումը, որը անշուշտ, կնպաստի անվտանգության հուսալի սիստեմի ստեղծմանը Եվրոպայի մայրցամաքում:

Ղեկավարվելով սոցիալական տարբեր սիստեմների պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքով, Սովետական Միությունն ավելի ամրապնդեց միջպետական, տնտեսական, գիտատեխնիկական և մշակութային կապերը Ֆրանսիայի, Իտալիայի, Ճապոնիայի, Սկանդինավյան երկրների և կապիտալիստական այլ պետությունների հետ:

Վերջին ամիսների ընթացքում դիվանագիտական և քաղաքական սուր պայքար ծավալվեց մերձավորարևելյան պրոբլեմի շուրջ: Ամբողջ աշխարհի առաջադիմական ուժերի ճնշման տակ ՄԱԿ-ը որոշում ընդունեց. դիվանագետ Գ. Յարինգի գլխավորությամբ հատուկ միսիա ուղարկել, որը հանդիպումներ ունենար շահագրգռված կողմերի ներկայացուցիչների հետ: Եգիպտոսը, Հորդանանը և Իսրայելը համաձայնվեցին (պատերազմող երկրներից միայն Սիրիան հրաժարվեց) միմյանց միջև օգոստոսի 7-ից մինչև նոյեմբերի 5-ը դադարեցնել ռազմական գործողությունները:

Սակայն, վարելով արկածախնդրական կուրս և օժանդակություն ստանալով ԱՄՆ-ից, Իսրայելը ձախողեց Յարինգի միսիան, այն պատրվակով, որ, իբր, Եգիպտոսը, խախտել է զինադադարի պայմանները և ուժեղացրել իր ամրությունները Սուեզի ջրանցքի շրջանում:

Թել-Ավիվը և նրան հովանավորող Վաշինգտոնը ձգտում են ամեն կերպ խափանել ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի 1967 թվականի նոյեմբերի 22-ի հայտնի բանաձևը, որը լայն հնարավորություններ է ընձեռում կոնֆլիկտը խաղաղ ճանապարհով լուծելու համար:

Մերձավորարևելյան ճգնաժամի քաղաքական կարգավորմանն էր նվիրված անցած տարում կայացած բարձր մակարդակի բանակցությունները ՍՍՀՄ և ԱՄՀ միջև:

ԳԻՆԸ 25 ԿՈՊ.

ԻՆԴԵՔՍ 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՏՈՐՖԸ ԸՆԴԴԵՄ ՃԱՌԱԳԱՅԹԱՅԻՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅԱՆ

*Վրոցլավի գյուղատնտեսական ինստիտուտի գիտնականները հանգել են այն հետևության, որ տորֆը պարունակում է որոշ քիմիական միացություններ, որոնք կանխում են ճառագայթային հիվանդության հետևանքները: Մկների վրա կատարված փորձերը ցույց են տվել, որ տորֆալուծույթի մղվածքով բուժելու դեպքում այդ կենդանիները գրեթե 100 տոկոսով դիմանում են ճառագայթահարման մահացու դոզային: Գիտնականները հայտաբերել են, որ քիմիական այդ միացությունները վերականգնել են ախտահարված արյան գնդիկները և արյունածին սիստեմները՝ ճառագայթահարումից յոթ օր հետո:*

## «ԱՐՏԵՐԻՈՂՈՆԴ»

*Ամերիկյան ինժեներներն ստեղծել են արյան ճնշումն ավտոմատ կերպով չափող սարք, որին տրվել է արտերիողոնդ անունը: Հիվանդի թևին հագցնում են ռետինե խողովակ, երբ անհրաժեշտ է, այն պարբերաբար փչվում է փոքրիկ, ինքնաշխատ պոմպով, որով պահանջվող քանակությամբ օդ է մղվում. ապա ճնշումը հետզհետե նվազում, հավասարվում է նորմալին: Հիվանդի թևին ամրացված **ուլտրաձայնային հաղորդիչը** արտերիայի պատերի շարժումից որոշում է բարձր (սիստոլիկ) և ցածր (դիաստոլիկ) ճնշումը:*

## ՊԱՏՎԵՐ ԱՎՏՈՄԱՏԻՆ

*Հեռուստացուցային ատելիեում ավարտվել է աշխատանքային օրը: Սակայն պատվերների ընդունը շարունակում է գործել, չնայած ատելիեում ոչ ոք չկա: Հերթապահ տեխնիկը «հրահանգ է տալիս» իր տեղակալին՝ ավտոմատին և գնում տուն: Հնչում է հեռախոսի զանգը և անմիջապես միանում է մագնիտոֆոնը: Այն պատասխանում է կանչին, իմանում պատվիրատուի անունը, ազգանունը, հայրանունը, հասցեն, ապա տալիս նման դեպքերում անհրաժեշտ մի քանի հարցեր, որոնց պետք է պատասխանել:*

*Այդ խոսակցությունը գրանցվում է ժապավենի վրա:*

*Առավոտյան, գալով աշխատանքի, հերթապահ տեխնիկը լսում է, գրանցում պատվերները և նոր հասցեով մասնագետ ուղարկում՝ հեռուստացույցը և ռադիոընդունիչը վերանորոգելու:*

*Այդ ուշագրավ սարքավորումը կարելի է լայնորեն կիրառել կենցաղ-սպասարկման տարբեր ձեռնարկություններում: Այն ստեղծել են Նովոչերկասկի հեռուստացուցային ատելիեի մասնագետները:*

## ԺԱՌԱՆԳԱԿԱ՞Ն Է ԱՐԴՅՈՔ ՍՏԱՄՈՔՍԻ ԽՈՑԸ

*Ռումինական մի խումբ գիտնականների տևական ու մանրազնին ուսումնասիրությունները հանգեցրել են այն եզրակացության, որ ստամոքսի խոցը հիմնականում ժառանգական բնույթ ունի: Ուսումնասիրելով 412 հիվանդության պատմություն, նկատել են, որ կան ընտանիքներ, որոնց բոլոր անդամները տառապում են այդ հիվանդությամբ, ընդ որում գլխավորապես տղամարդիկ: Այդ նկատելի է հատկապես երկվորյակների մոտ:*

## ԿԻՐԱՌԵՆՔ ԱՄԵՆՈՒՐԵՔ

*Լայնորեն կիրառվում է* BP—2010 *մակնիշի վիսկոզիմետրը, որն ստեղծվել ու պատրաստվել է անալիտիկ սարքերի Լենինականի փորձարարական գործարանում: Սարքը կարելի է օգտագործել նավթամշակման, տեքստիլ արդյունաբերության և լաքաներկերի, արհեստական թելի ու կաշվի, սինթետիկ կաուչուկի արտադրության մեջ, մի խոսքով՝ տեխնոլոգիական զանազան պրոցեսներում:*

*Սարքը հարմարավետ է հատկապես այն տեսակետից, որ ունի 10 ծավալաչափ, ընդ որում մի ծավալաչափից մյուսին անցնելը տեղի է ունենում առանց շարժիչի արգելակման:*

*Սարքի գրանման ճկունությունը հնարավորություն է ընձեռում կատարել նաև միջավայրի ջերմավիճակագրական չափումներ 20—200° սահմաններում, բարձր ճշգրտությամբ:*